Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՆՈՅԵՄԲԵՐ
11
1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԲԱՐՁՐ ՊԱՀԵՆՔ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇԸ

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԿՈՒ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ ԱՅՆ ՕՐԻՑ, երբ ցարական Ռուսաստանի աշխատավորները, բոլշևիկյան կուսակցության գլխավորությամբ, ի լուր աշխարհի ազդարարեցին նոր կյանքի ծնունդը, որը լուսավոր էջ բացեց մարդկության սոցիալական պայքարի տարեգրքում։ Հոկտեմբերի ավանդաբան տոնակատարությունը բովանդակում է կատարվածի քննադատական վերլուծություն և ձեռքբերումների վերաիմաստավորում, շեշտվում է նաև այն իդեալների իրագործման համար պայքարը, որի դրոշի ներքո համախմբվեցին աշխատավորական զանգվածները հանուն սոցիալիզմի։

Հոկտեմբերը մարմնավորեց բազում սերունդների իղձերը, եղավ աշխատանքի մարդու ազատագրական շարժման, ամենայն գիտակցականի, մարդասիրականի կրողը, լավագույն ապագայի՝ սոցիալիստական հասարակարգի նկատմամբ նրա ձգտման արտահայտությունը։

Հոկտեմբերը վերջ դրեց մարդու շահագործմանը, նրան տվեց վստահություն ամվաղվա օրվա նկատմամբ, հնարավորություն ընձեռեց աշխատելու իր համար, ամբողջ հասարակության համար, որպես մարդկային համակեցության նորմեր հաստատեց ազատ աշխատանքն ու ժողովրդապետությունը, սոցիալական արդարությունն ու ազգային իրավահավասարությունը։ Ժամանակն անվերապահորեն իր կնիքն է դնում մեծ Հոկտեմբերի յուրաքանչյուր տարելիցի վրա։ Այսօր այն նշվում է հեղափոխական վերափոխումների պայմաններում, երբ վերակառուցումը՝ կուսակցության ու ժողովրդի գլխավոր գործը, դուրս է եկել ընդարձակ ուղի և ավելի ու ավելի է համակում միլիոնավոր զանգվածների սրտերը։

Արդ, դիմելով հոկտեմբերյան օրերին, որոնք ցնցեցին աշխարհը, դրանցում փնտրում ու գտնում ենք թե՛ հոգևոր կայուն հենարան, թե՛ ուսանելի դասեր։ Հիրավի, վերստին համոզվում ենք Հոկտեմբերի կատարած սոցիալիստական ընտրության ճշտության մեջ։

Ժողովրդի երախտապարտ հիշողության մեջ հավերժ կապրի այն սերնդի խիզախումը, որը հաղթանակեց օտարերկրյա ինտերվենցիայի ու ներքին հակահեղափոխության դեմ մղվող պայքարում։ Նա, չխնայելով ուժերը, հաղթահարեց քայքայվածությունն ու անգրագիտությունը, պայքարեց խորհուրդների երկիրը աշխարհի ամենահզոր ինդուստրիալ տերությունների շարքը դուրս բերելու համար։

Մեզ հարկադրված պատերազմը խորհրդային հասարակարգի զորության դաժան փորձությունն էր։ Այդ ծանր քննությունը մեր երկիրը պատվով բռնեց։ Հոկտեմբերի գաղափարները մարմնավորվեցին խորհրդային ժողովրդի մեծագործություններում, ժողովուրդ, որը հետպատերազմյան ժամանակաշրջանում վերականգնեց թշնամու ավերած տնտեսությունը, յուրացրեց Սիբիրի և Հեռավոր արևելքի բնական հարստությունները, տիեզերական ուղեծրեր դուրս բերեց արբանյակներ, իր ողջ ուժերը, գիտելիքներն ու եռանդը ներդրեց երկրի սոցիալ-տնտեսական ու մշակութային հետագա զարգացման գործում։

Հոկտեմբերը, նրա գաղափարները շարունակում են խոր ազդեցություն գործել համաշխարհային զարգացման բոլոր կողմերի՝ քաղաքական, տնտեսական և սոցիալական ոլորտների վրա։ Սոցիալիստական հեղափոխությամբ ծայր առած վերափո-

*ՍԻՄՈՆՅԱՆ ԱՐԱՄ ՍԻՄՈՆԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր, փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

խումները արմատապես փոխեցին մոլորակի սոցիալ-քաղաքական նկարագիրը: Ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմ: Հողագնդի քաղաքական քարտեզի վրա ի հայտ եկան տասնյակ անկախ նոր պետություններ:

Պատմական այն նվաճումները, որոնք այսօր օգնում են հաստատակամորեն բազմապատկելու սոցիալիզմի պոտենցիալը կյանքի հեղափոխական վերափոխումների համար, հեշտությամբ չեն ձեռք բերվել: Շատ բան է եղել՝ և՛ հերոսական, և՛ ողբերգական: ԽՄԿԿ-ն հետևողականորեն դատապարտում է սոցիալիզմի ոգուն խորթ անհատի պաշտամունքն ու նրա դառը հետևանքները, որը նահանջ է լենինյան հիմնարար սկզբունքներից և որևէ արդարացում չունի: Կուսակցությունը, վերականգնելով պատմական արդարությունը, ելնում է այն իրողությունից, որ մեր նվաճումների, ինչպես նաև սխալների օբյեկտիվ գնահատումները կօգնեն որոշելու ապագայի բարոյական կատարյալ ուղենիշները:

Սոցիալիստական հասարակության հեղափոխական վերակառուցումը կարող է իրականացվել միայն այն ժամանակ, երբ նա հիմնված է խորհուրդների իսկական լիիշխանության, իրական դեմոկրատիայի, պետական ու հասարակական գործերում աշխատավորների գործուն մասնակցության վրա: Վեհացնել մարդուն, նրան դարձնել իր ճակատագրի, երկրի տերը՝ հենց դա է սոցիալիզմի պատմական առաքելություններից մեկը: Հիրավի, վերակառուցման կիզակետը մարդն է, նրա բարօրությունը, հոգսերը, նրա աշխատանքն ու կյանքը: Վերակառուցումը պայքար է հանուն հեղափոխության և սոցիալիզմի ապագայի: Արդի փուլում այդ պայքարի հիմնական նպատակը երկու փոխշաղկապված պրոբլեմների՝ արմատական տնտեսական ռեֆորմի ու մեր հասարակության բոլոր կողմերի դեմոկրատացման լուծումն է:

Հասարակության զարգացման մեջ ամեն մի շեշտակի շրջադարձ կապված է ոչ քիչ դժվարությունների հաղթահարման հետ: Հեղափոխական ժամանակաշրջաններում լենինյան կուսակցությանը, ինչպես ցույց է տալիս պատմական փորձը, առանձնապես հարկավոր են գործողությունների հատուկ ծրագիր, քաղաքական կամք, ժողովրդի ամենալայն պաշտպանությունը:

Սոցիալիզմի վիթխարի հնարավորությունների, նրա ակնառու առավելությունների լիակատար օգտագործման գաղափարն է ընկած կուսակցության ապրիլյան կուրսի հիմքում, որը վավերագրվեց ու զարգացվեց ԽՄԿԿ XXVII համագումարում և XIX կոնֆերանսում: Այդ գիծը պրակտիկայում մարմնավորում է սոցիալիզմի, որպես աշխատավորության հասարակարգի, լենինյան ըմբռնումը, հասարակարգ, որտեղ տնտեսությունն ու քաղաքականությունը, գիտությունն ու մշակույթը իսկապես մարդկային չափանիշ են ստանում:

Ըստ Լենինի, սոցիալիզմի էությունը նախ և առաջ այն է, որ աշխատավոր մարդիկ առնչվեն արտադրամիջոցների տնօրինմանը, քաղաքական իշխանության իրականացմանը, սոցիալական արդարմանը: Հետևաբար, տնտեսական ու քաղաքական ռեֆորմները, գաղափարախոսության նորացումը ստեղծում են այն լծակները, որոնք աշխատավորությանը հնարավորություն կընձեռեն իրապես յուրացնելու իրենց լիակատար իրավունքները հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:

Կառավարման տնտեսագիտական եղանակները, տնտեսական հարաբերությունների նոր ձևերը վերացնում են մարդու օտարումը հասարակական սեփականությունից, նոր ազդակներ հաղորդում արտադրական ակտիվությանը: Սոցիալիստական սեփականության իրացման կոնկրետ ձևերի բազմազանությունը յուրաքանչյուրին հնարավորություն է ընձեռում իր ուժերին արժանի կիրառում գտնելու հանրօգուտ աշխատանքում՝ հաշվի առնելով անձնական շահերը, գիտելիքները, որակավորումը:

Այսօր խիստ կարևոր է շահագրգիռ, գիտակցված, դեմոկրատական կարգապահության հաստատումը: Ոչ թե վախը, այլ շահագրգռությունը, տնտեսական խթանը, քաղաքացիական խիղճը պետք է դառնան աշխատանքի, ցանկացած հանրօգուտ ձեռնարկման դրդապատճառը: Մեր առաջընթացի խոչընդոտներից են աշխատանքի հանդեպ անտարբերությունը, սոցիալական խնամառությունը, պասիվությունն ու անտնտեսվարությունը: Կարգապահության, կարգուկանոնի հաստատումը կենսական անհրաժեշտություն է: Վերջինս ենթադրում է դեմոկրատիայի ու հրապարակայնության, քննադատության ու ինքնաքննադատության առկայություն, ժողովրդի համապարփակ վերահսկողություն: Քաղաքական սիստեմի ռեֆորմը, իրավական պետության ստեղծումը լայն ասպարեզ են ընձեռում սոցիալական արդարմանը:

Խորհուրդները պետական իշխանության պատմականորեն նոր ձև են, որոնց կատարած դերը հեղափոխության մեջ, սոցիալիզմի ձևավորման ասպարեզում ան-



հերքելիորեն վկայում է ժողովրդապետության ամենաներգործուն միջոց լինելու դրանց կարողությունը: ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարը, աչնուհետև Գերագույն խորհրդի նստաշրջանը պարզորոշ արտացոլեցին երկրում տեղի ունեցող բարդ ու հակասական պրոբլեմները: Այո՛, այլ կերպ չէր էլ կարող լինել: Երկարամյա լճացման հետևանքով 80-ական թվականների սկզբին երկիրը գտնվում էր լուրջ ճգնաժամի վիճակում, որը ներառել էր կյանքի բոլոր ոլորտները: Ստեղծված իրավիճակը կուսակցությունից պահանջեց կտրուկ շրջադարձ: Այդ պատասխանատու ընտրությունը կուսակցությունը կատարեց: Սկսվել է հասարակական կյանքի նոր ձևերի յուրացման պրոցես էկոնոմիկայի, քաղաքականության, մշակույթի ասպարեզներում:

Համագումարի և Գերագույն խորհրդի աշխատանքն ըստ էության բացում է սոցիալիզմի հասարակական սիստեմի զարգացման նոր ժամանակաշրջան: Առաջին անգամ դեմոկրատական հիմքի վրա կազմավորվեցին պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մարմինները, սահմանվեցին խորհրդային պետության ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունները: Սակայն գլխավորը թերևս այն է, որ դրվեց պետական իշխանությունը իրականում ամբողջովին խորհուրդների ձեռքը հանձնելու գործնական սկիզբը, համապետական հարցերի լուծման մեջ ժողովրդական զանգվածներին ներգրավելու նոր դեմոկրատական մոդելի ստեղծման սկիզբը: Դրանով իսկ քաղաքական ռեֆորմը գաղափարների բնագավառից տեղափոխվում է պրակտիկայի բնագավառ, վերածվում կենսական իրողության: Առավել ակներև է դարձել մասսաների հետագա քաղաքականացման պրոցեսը, նրանց ներգրավումը երկրում տեղի ունեցող հասարակական երևույթներին: Բնորոշ է նաև հասարակության հիմնական սոցիալական ուժերի նվիրվածությունը կուսակցության առաջ քաշած վերակառուցողական գաղափարներին: Իրողություն է նաև այն, որ հասարակության մեջ աճում են քննադատությունը, անբավարարվածությունը վերակառուցման արդյունքներից, արագանում են կարծիքների ու տրամադրությունների բևեռացումն ու տարբերակցումը:

Վերակառուցմանը շարունակում են դիմադրել պահպանողական ուժերը, որոնցից շատերը դեմոկրատական ձեռնարկումները դիտում են որպես նահանջ սոցիալիստական սկզբունքներից: Ինչպես ասվեց կուսակցության հանրապետական ու մարզային կոմիտեների առաջին քարտուղարների խորհրդակցությունում ԽՄԿԿ Կենտկոմում, մեզանում ամեն ինչ չէ, որ նորմալ վիճակում է վերակառուցման ուղիով առաջ ընթանալու հարցում: Ինչ-որ բանում հապաղում ենք, դոփում նույն տեղում, իսկ տեղ-տեղ նույնիսկ ի հայտ են եկել հետընթաց երևույթներ: Ելնելով մեր այժմյան պատկերացումներից, որոնք ենթադրում են կարծիքների ու մոտեցումների բազմազանություն, դիրքորոշումների տարբերություն, հասունացած պրոբլեմները սոցիալիստական սկզբունքայնությամբ լուծելու զանազան տարբերակների առաջադրում, նման ուժերի ու տրամադրությունների առկայությունն ընդհանուր առմամբ բնական երևույթ է:

Այսօր կուսակցությունը պահանջում է տալ այժմյան քաղաքական իրավիճակի համակողմանի բնութագիրը՝ արձանագրելով էքստրեմիզմի ուժեղացող դրսևորումները ամենատարբեր ձևերով ու ամենատարբեր հասարակական ոլորտներում: Բանը հասել է նրան, որ հասարակայնությանն ուղղվում են բուրժուական դեմոկրատիայի և մասնավոր ձեռնարկատիրության զինանոցից սոցիալիզմին խորթ արժեքներ փոխառնելու գրեթե բացահայտ կոչեր: Հրատապ խնդիր է՝ համախմբելով վերակառուցման օգտին հանդես եկող բոլոր առողջ ուժերը, հաստատակամորեն հաղթահարելով մեր հասարակարգին խորթ միտումները, վճռականորեն գործը տանել սոցիալիստական նորացման ուղիով: Քաղաքական այս ակցիան գլխավորում է կուսակցությունը՝ հենվելով բանվոր դասակարգի, գյուղացիության լայն աջակցության, մտավորականության ստեղծագործական ուժերի պաշտպանության վրա: Փաստ է նաև, որ հասարակության մեջ ակտիվորեն բանավեճ է տեղի ունենում կուսակցության գործունեության շուրջը: Այս իրողությունն ունի իր տրամաբանությունը: Քանզի քաղաքական սիստեմի վերակառուցումը, խորհրդային լիակատար իշխանությունը, որի գործնական սկիզբը դրեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարը, հասարակության նորացումն իսկ աներևակայելի են առանց կուսակցության նորացման:

ԽՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը միջոցներ մատնանշեց կուսակցության սկսած հեղափոխական բարեփոխումների դիալեկտիկան ըմբռնելու համար: Հատկապես սոցիալիզմի նորացման ասպարեզում, կուսակցության դերը, նրա քա-

ղաքականությունը բխում են ժողովրդի շահերից: Կուսակցությունը ներառում է բոլոր սոցիալական խմբերի, ազգությունների ներկայացուցիչներին: Ներկայումս ԽՄԿԿ-ի մեջ կատարվող վերակառուցումը էապես հետ է մնում հասարակական կյանքում տեղի ունեցող պրոցեսներից: Այս հողի վրա ծագում է վերակառուցման և, հետևաբար, հասարակության մեջ ԽՄԿԿ-ի առաջատար դերի թուլացման իրական սպառնալիք: Այս իրողությունը մտահոգություն է հարուցում կուսակցության ղեկավար մարմինների հեղինակության համար ոչ միայն կոմունիստների շրջանում, այլև աշխատավորական լայն խավերում: Հայտնի է, որ երկար ժամանակ կուսակցությունն ըստ էության ամեն ինչից վեր է դասվել, վերահսկել է պետական, տնտեսական, գաղափարախոսական կյանքի բոլոր պրոցեսները, փոխարինել բոլորին ու ամեն ինչ, անառարկելի ցուցումներ և հրամաններ արձակել պետական ու հասարակական մարմիններին, կազմակերպություններին: Նման պարագայում կորսվում էր կուսակցության աշխատանքում գլխավորը՝ նրա դերը որպես հասարակության քաղաքական ավանգարդի, նրա կենդանի կապը աշխատավոր զանգվածների հետ: Իսկ կուսակցական մարմինները և կուսաշխատողները, ապավինելով որոշումների և ցուցումների ուժին, նահանջել էին մարդկանց հետ երկխոսություն վարելուց, նրանց վստահությունը նվաճելուց, համոզման և փաստարկների ուժով իրենց հետևից տանելուց:

Այժմ հասարակական այլ իրավիճակ է հաստատվել: Պետական, տնտեսական մարմիններին և հասարակական կազմակերպություններին կուսակցությունը չի կարող և չպետք է հրամայի: Արդ առաջնահերթ խնդիր է քաղաքական աշխատանք կատարել մասսաների շրջանում, առաջ քաշել համարձակ գաղափարներ և դրանք պարզաբանել մարդկանց, գործել բացեիբաց, կասեցնել բացասական երևույթների տարածումը, եռանդագին աջակցել ամենայն նորին ու առաջադիմականին, արդյունավետորեն նպաստել աշխատավորների կյանքի հետ կապված պրոբլեմների լուծմանը:

Հասարակության իսկական դեմոկրատացման պայմաններում ինչպիսի՞ն պետք է լինի կուսակցության ժամանակակից քաղաքական նկարագիրը, ի՞նչ ձևերով պետք է իրականացվի նրա գործունեությունը: Դեմոկրատական հասարակության մեջ ինքը՝ կուսակցությունը պետք է լինի դեմոկրատիայի բարձրագույն և ամենահետևողական ձևի արտահայտությունը: Դրա համար կուսակցությունը պետք է վճռականորեն ազատվի անհատի պաշտամունքի և լճացման տարիների ձևախեղումներից: Պահպանելով միասնությունը սկզբունքային հարցերում և ստրատեգիական նպատակներում՝ կուսակցության մեջ պետք է պայմաններ ստեղծվեն հայացքներն աներկյուղ համադրելու, այլընտրանքներ առաջ քաշելու, այս կամ այն պրոբլեմի լուծման նկատմամբ տարբեր մոտեցումներ ցուցաբերելու համար:

Ինչպես Լենինն էր ասում, կուսակցությունը պետք է զգայուն կերպով որսա հասարակության մեջ եղած կարծիքների ողջ գամման, ժամանակին իր վերաբերմունքը ցույց տա հասարակության փոփոխվող տրամադրություններին: Կուսակցությունն իր դիրքերը կամրապնդի լոկ այն պարագայում, եթե փոխգործակցի հասարակական կազմակերպությունների ու շարժումների հետ:

ԽՄԿԿ-ն խորհուրդներին հակադրելու փորձերը միանգամայն անընդունելի են, դրանք չեն համապատասխանում վերակառուցման խնդիրներին, աշխատավորների շահերին: Տեսականորեն սնանկ և քաղաքականորեն սխալ են կուսակցությունը պետականացնելու, նրան պետությանը ենթարկելու առաջարկությունները: Նման առաջարկը փաստորեն վարչահրամայական համակարգի շրջված տարբերակն է, դրանում ըստ էության որևէ նոր բան չկա: Բոլոր մակարդակների խորհուրդների վրա կուսակցության թելադրանքի նախկին պրակտիկան իրեն լիովին սպառել է: Փոխգործողության նոր դեմոկրատական ձևերն ու մեթոդները պետք է հիմնվեն մի կողմից հասարակության քաղաքական ավանգարդի պարտականությունների հստակ սահմանազատման և, մյուս կողմից, խորհուրդներին անցնող իշխանության ու կառավարման վրա: Ժողովրդապետության մարմիններում կուսակցական որոշումներ կարող են անցկացվել միայն համոզման, հանձնարարականների դեմոկրատական համաձայնեցումների, խորհուրդներում և դրանց գործադիր մարմիններում աշխատող կոմունիստների միջոցով: Առայժմ այս մարզում առաջին քայլերն են արվում: Սակայն խորհուրդներին փոխարինելը փաստորեն առայսօր տեղ է գտնում: Դա ինչ-որ չափով արդարացվում է մեր ապրած անցումային ժամանակաշրջանով, երբ խորհուրդները դեռ պատրաստ չեն իշխանությունը լիովին ստանձնելու և հաջողությամբ իրականացնելու համար: Դրանց դեռ պակասում են համապատասխան օ-





րենսդրական ակտերը և որակյալ կադրերը: Հետևաբար, կուսակցական կազմակերպությունները, ամբողջությամբ վերցրած կուսակցությունը պետք է միանգամայն որոշակիորեն և անշեղորեն պահանջեն, որ կոմունիստները, որոնց վստահված է աշխատել խորհուրդներում, հանձնարարված գործը կատարեն բարձր պատասխանատվությամբ՝ լուծելով վերակառուցման մասշտաբային և նախկինում զգալի չափով անհայտ խնդիրներ:

Ժամանակը պահանջում է, որ կուսակցությունը հետ չմնա արագորեն փոփոխվող կյանքից, վստահորեն ընթանա քաղաքական սիստեմի վերակառուցման պրոցեսների առջևից, ակտիվորեն փոխգործակցի բոլոր հասարակական կազմակերպությունների հետ՝ դրանց գործունեությանը հաղորդելով կոնստրուկտիվ ուղղվածություն և ներգրավելով ընդհանուր ստեղծարար աշխատանքում:

Տվյալ փուլում առանձնապես կարևոր է, որ կուսակցական կազմակերպությունները հասարակական կարծիքը, պետական ու տնտեսական բոլոր մարմինների աշխատանքն ուղղեն տնտեսական հարաբերությունների վերակառուցմանը՝ հանրային սեփականության ձևերի բազմազանության, բաշխման սոցիալիստական սկզբունքի ամրապնդման, կարգավորվող շուկայի կազմավորման հիման վրա: Սա բարդ ու կարևոր խնդիր է:

Այժմ, երբ զգալիորեն մեծանում է տնտեսական միավորների, իշխանության հանրապետական և տեղական մարմինների գործունեության ինքնուրույնությունը, անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեները վճռականորեն հրաժարվեն ձեռնարկությունների ղեկավարներին, տեղական խորհուրդներին փոխարինելու ավանդույթ դարձած պրակտիկայից: Հրատապ խնդիր է անմիջական դիրեկտիվներից ու ցուցումներից էկոնոմիկայի վրա քաղաքական ազդեցության համակարգին անցնելը՝ կոլեկտիվում կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանք տանելու, մարդկանց նյութական շահերի, բարոյական արժեքների ու հոգեբանության և, անշուշտ, տնտեսության ոլորտում աշխատող բոլոր կոմունիստների ու նախ և առաջ ղեկավար կադրերի միջոցով:

Առանձնապես կարևորվում է հասարակական նոր պայմաններին, աշխատավորական զանգվածների նոր փորձին, արդի հասարակական գիտակցության բնույթին ու մակարդակին կուսակցության գաղափարախոսական գործունեության համապատասխանեցման նոր համադրույթը: Վերջինիս մշակումն ու կենսագործումը պակաս բարդ ու դժվարին հարց չէ, քան տնտեսության, սոցիալական ոլորտի շրջադարձը. այն նույնիսկ ավելի բարդ է, քանզի խոսքը վերաբերում է գիտակցությանը: Առավել հրատապ է դառնում այն իրողությունը, որ կուսակցության գաղափարատեսական աշխատանքը պետք է առաջանցիկ բնույթ կրի՝ կանխատեսելով իրադարձությունների հնարավոր զարգացումը: Իրենց ոչ յուրահատուկ ֆունկցիաներից կուսակցական կառուցվածքներն ազատելը հնարավորություն է ընձեռում վերջապես գաղափարախոսական աշխատանքը դարձնելու կուսակցության գործունեության կարևորագույն ուղղությունը: Հարկ է նկատել, որ անհատի պաշտամունքի ու լճացման տարիներին մարքս-լենինյան գաղափարախոսության բովանդակությունը, կուսակցության գաղափարախոսական աշխատանքի կազմակերպման սկզբունքները, միջոցներն ու եղանակները էական ձևախեղումների են ենթարկվել:

Ոչ վաղ անցյալում գաղափարախոսությունը հարմարեցվում էր պահի շահերին: Գաղափարախոսությունից դուրս էր մղվել նրա հեղափոխական քննադատական ոգին, որն արմատապես հակասում է բոլշևիզմի լենինյան ավանդույթներին: Զանգվածների շրջանում տարվող գաղափարախոսական աշխատանքի թուլացումը հանգեցնում էր կուսակցության գործունեության ընդհանուր թուլացման: Այս իրողությունը ակնբախորեն դրսևորվեց կտրուկ շրջադարձի պահին, երբ հասարակությունը թյունը չբռնեց դոգմայի վերածված գաղափարախոսական աշխատանքը: կանգնեց խոր բարեփոխումների ուղու վրա: Փաստորեն վերակառուցման քննու-

Թեև վերակառուցմանը ազդակներ հաղորդեց իրական կյանքը, ըստ էության, այն սկսվեց գաղափարախոսության ոլորտում, վերջինիս ճգնաժամի հաղթահարումով: Կուսակցությունը հանգեց կարևոր տեսական ընդհանրացումների ու հետևությունների, որոնք վերաբերում են նաև այսօրվա աշխարհին և խորհրդային հասարակության զարգացման նախորդ փուլերի իմաստավորմանը: Որոշակի աշխուժություն է նկատվում տեսության և գաղափարախոսության ոլորտում, այդուհանդերձ, դեռ լուծման կարոտ շատ հարցեր կան: Այսպես, ինչպիսի՞ն ենք պատկերացնում այն հասարակությունը, որին ձգտում ենք: Ինչի՞ց ենք հրաժարվում, ի՞նչն ենք ժառանգում և օգտագործում, որպեսզի վերակառուցման միջոցով հասնենք սոցիալիզ-

մի որակապես նոր վիճակի: Այսօր ընդամենը պատկերված են այդ հասարակության սոսկ ընդհանուր ուրվագծերը: Այնինչ, հեղափոխական վերակառուցումների համար հարկավոր է ծավալուն համադրույթ, որն ընդգրկեր ապագա հասարակության կյանքի բոլոր կողմերը:

Խորհրդային հասարակության զարգացման արդի փուլում ոչ միայն տեսաբանների, հասարակագետների շրջանում, այլև մտավորականության, կուսակցության լայն շրջանակներում, բնակչության մեջ աճում է հետաքրքրությունն այդ խնդիրների հանդեպ, հրամայաբար զգացվում է դրանք քննելու պահանջը: Պարզ է նաև, որ այդ ասպարեզում հետ մնալը գոյացող դատարկությունն անմիջապես լցնում է զանազան վարկածներով, գաղափարներով ու համադրույթներով, որոնք հաճախ շատ հեռու են գիտությունից և աշխատավորության արմատական շահերից:

Միտում է նկատվում գաղափարախոսական միտքը սահմանափակել լոկ անցյալի քննադատական վերլուծությամբ: Վերջինս իմաստ ունի միայն այն ժամանակ, երբ առաջնորդվում ենք ոչ թե պարզապես հետաքրքրասիրությամբ և ինքնաձաղկմամբ, այլ ձգտում դասեր քաղել, որոնք հարկավոր են ներկան իմաստավորելու և, որ գլխավորն է, ապագայի ուղիներ մշակելու համար: Ցավոք, մեր գաղափարախոսական աշխատողների, ղեկավար կադրերի մի մասը տակավին ապրում է անցյալով, օգտագործում աշխատանքի հնացած ձևերն ու եղանակները, որոնք այլևս արդյունք չեն տալիս: Դրա ակնբախ վկայությունն ընտրական կամպանիան էր, երբ գաղափաղախոսական ապարատը զգալիորեն կաշկանդված էր, իսկ մի շարք դեպքերում նաև կազմալուծված:

Այժմ կուսակցության գաղափարախոսական գործունեության մեջ անհրաժեշտ են լուրջ փոփոխություններ՝ զանգվածների հետ կապերի ուժեղացման, վերակառուցման բոլոր հրատապ խնդիրների շուրջն աշխույժ երկխոսության ծավալման հիման վրա: Մեծ է մամուլի դերը խորհրդային հասարակության դեմոկրատացման, հրապարակայնության, մարդկանց հասարակական նախաձեռնության զարգացման ասպարեզներում, այն ամենի դեմ մղվող պայքարում, ինչը խանգարում է մեր շարժմանը նորացման ուղիով: Այդուհանդերձ սրությամբ են զգացվում մեր մամուլի թույլ կողմերը, անբավարար ձեռնհասությունը կյանքում արմատավորվող նորի բարդ ու դժվարին աշխատանքը լուսաբանելիս: Հայտնի է, որ մամուլը՝ սոցիալական այդ հզոր հաստատությունը, երբեք և ոչ մի տեղ չի կարող հասարակությունից կտրված լինել: Նա միշտ արտահայտում է այս կամ այն սոցիալական ուժերի շահերը: Մեզանում չկան փակ գոտիներ հասարակական վերահսկողության ու քննադատության համար: Դա լիովին վերաբերում է նաև մասսայական ինֆորմացիայի միջոցներին: Հարկ է շեշտել, որ բազմակարծությունը ենթադրում է կարծիքների փոխանակում, հայացքների շարադրում, բանավեճեր: Այստեղ անհրաժեշտ է առաջնորդվել ոչ թե անձնական համակրանքով ու մտերմական կապերով, այլ սկզբունքային նկատառումներով: Միայն դեմոկրատական հիմունքներով է կուսակցությունն ընդունակ իր քաղաքականության մեջ միավորել բնակչության տարբեր խավերի ու խմբերի բազմապիսի ձգտումները, նրանց համախմբել համաժողովրդական նպատակների ու շահերի շուրջը, երկրում համազգային համաձայնություն ապահովել: Դա առանձնապես կարևոր է, եթե հաշվի առնենք մեր միակուսակցական սիստեմի առանձնահատկությունները:

Կուսակցությունն այժմ պարտավոր է լրջորեն զբաղվել իրենով, խստորեն գնահատել իր բոլոր օղակների աշխատանքը. քննադատաբար ինքնաստուգման ենթարկել կուսակցական կոմիտեների, բոլոր կոմունիստների գործունեությունը, համախմբել իր շարքերը և ակտիվացնել ներկուսակցական կյանքը: Հասարակության մեջ կուսակցության ջանքերով անցկացվող կոնստրուկտիվ վիճաբանությունների և այլընտրանքների քննարկման մթնոլորտը որոշակի իրավիճակ է ստեղծում կուսակցության կյանքում: Այսօր իսկական միասնությունը կարող է ձեռք բերվել միայն այն դեպքում, եթե կուսակցության մեջ ապահովվեն դիսկուսիաների ազատություն, այլընտրական հիման վրա նրա քաղաքականության պրոբլեմների ուշադիր քննարկում, իր տեսակետն արտահայտելու փոքրամասնության իրավունք, այդ թվում նաև մեծամասնությամբ ընդունված որոշումների վերաբերյալ՝ մեծամասնությանը փոքրամասնության պարտադիր ենթարկվելու պայմանով: Հարկավոր է ԽՄԿԿ-ի մեջ ստեղծել կուսակցական ընկերականության մթնոլորտ, որը հնարավորություն ընձեռի ազատորեն պաշտպանելու սեփական դիրքորոշումը, քննարկելու պրոբլեմները, համադրելու տեսակետները:

Հասարակության մեջ ծավալված դեմոկրատացման պրոցեսները կուսակցությու-



նից պահանջում են վճռականորեն վերջ տալ կադրային քաղաքականության մեջ թույլ տրված ձևական, նոմենկլատուրային մոտեցումներին, այդ աշխատանքի ինքնամեկուսացմանը, կադրային համակազմի ներփակվածությանը: Կուսակցական կոմիտեները ևս շատ բաներում տանուլ են տալիս, կորցնում են փոփոխվող իրադրության մեջ հաջողությամբ գործելու հնարավորությունը, եթե իրենց համալրումը վերցնում են այն նույն ներփակ շրջանակից: Ժամանակի հրամայականն է, կադրային համակազմը համալրել ստեղծագործական ուժերով, ճանապարհ տալ այն կոմունիստներին, ովքեր ընդունակ են նոր շիթ ավելացնելու կուսակցական մարմինների գործունեությանը, ապահովելու վերակառուցման հաջողությունը: Կադրային աշխատանքի արգասաբերության, առավել ընդունակ մարդկանց ընտրության արդյունավետ մեթոդը ընտրությունների ժամանակ իրեն արդարացրած այլընտրանքության սկզբունքն է: Մինչդեռ այդ սկզբունքը կուսակցության մեջ շատ դանդաղ է պատվաստվում, պետք է անհապաղորեն հաղթահարել կուսակցական կոմիտեների չարդարացված պահպանողականությունը: Այս առումով կուսակցությունից մեծապես առաջ են անցել խորհուրդները, հասարակական շատ կազմակերպություններ, աշխատավորական կոլեկտիվները:

Անհրաժեշտ է մարդկանց վրա ներազդել ոչ թե կոչերով, այլ կուսակցության հեղինակությամբ, համոզման ուժով: Հարկ է համախմբել բոլոր նորի զգացումով օժտված կոմունիստ ու անկուսակցական լավագույն կադրերին, ժամանակակից մտածողության տեր երիտասարդությանը: Դրանով իսկ պայմաններ ստեղծել կադրերի բնական հերթափոխի համար:

Խոշոր միջոցներ են ձեռնարկվել կուսակցական ապարատը կրճատելու և նրա կառուցվածքը փոխելու նպատակով: Դա արվել է այն սկզբունքային նկատառումներով, որ կուսակցական ապարատը համապատասխանեցվի կուսակցական, պետական և հասարակական մարմինների միջև ֆունկցիաների բաժանման նոր պայմաններին:

Խորհրդային իշխանության տարիներին մեր հանրապետության անցած փառապանծ ուղին, հայ ժողովրդի մեծագործությունները ԽՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության կենարար ուժի վառ վկայությունն են: Պատմության ողջ ընթացքն անհերքելիորեն ապացուցեց, թե որքան ճիշտ էր Հայաստանի լավագույն այն զավակների և ապա նաև մեր ամբողջ ժողովրդի ընտրությունը, ովքեր Ռուսաստանի հետ էին կապում ազատագրության իրենց հույսերը, ճակատագրի իղձերը:

1920 թվականի նոյեմբերի 29-ին բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները հերոսական 11-րդ կարմիր բանակի օգնությամբ հարազատ հողում բարձրացրին հեղափոխության հաղթական դրոշը:

Խորհրդային իշխանության հաղթանակից հետո Հայաստանի աշխատավորները կուսակցության ղեկավարությամբ, հենվելով մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնության վրա, նոր կյանքի կոչեցին ազատագրված հայրենիքը: Հայոց լեռնաշխարհում նոր հորիզոններ բացվեցին: Կարճ ժամանակամիջոցում Հայաստանի ժողովրդական տնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան աննախընթաց զարգացում ապրեցին: Հանրապետության աճի տեմպերը հատկապես նկատելի դարձան հետպատերազմյան տարիներին: Չնայած անհատի պաշտամունքի հասցրած վնասներին, նորանոր, վեր էին խոյանում նոր քաղաքներ ու գյուղեր, ամրապնդվում էր ինդուստրիալ հզորությունը, բարելավվում էին ժողովրդի կենսապայմանները, բարձրանում նրա բարեկեցությունը:

1988 թվականի սեպտեմբերին կայացած Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց «Էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում լճացման երևույթների հաղթահարման և հանրապետությունում գաղափարաբարոյական իրադրության առողջացման ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» հարցը: Պլենումն անցավ հանրապետության համար խիստ ծանր իրադրության պայմաններում: ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը պլենումում նշեց, որ հանրապետությանը բաժին ընկան այնպիսի փորձություններ, ինչպիսիք նա չէր իմացել տասնամյակներ շարունակ, որ այսօր տանջող իրողություն դարձած ճգնաժամային իրադրությունը ծայր է առել վաղուց, կարծեցյալ բարեհաջողության ու բարգավաճման ժամանակաշրջանում: Այդ ամենը չէր կարող չանդրադառնալ հանրապետության բարոյաքաղաքական, հոգևոր կյանքի վրա: Կուսակցական շատ կազմակերպություններ ու խորհրդային մարմիններ պատշաճ պայքար

չտարան բացասական այնպիսի արտառոց երևույթների դեմ, ինչպիսիք են սոցիալիստական սեփականության հափշտակումները, կոռուպցիան, կաշառակերությունը, հովանավորչությունը, թույլ տվեցին սոցիալական արդարության սկզբունքների խախտումներ:

ՀԿԿ Կենտկոմի պլենումը համակողմանիորեն վերլուծեց ստեղծված իրադրությունը, մշակեց վերակառուցման խնդիրների, ճգնաժամային կացությունից դուրս գալու, կուսակցության XXVII համագումարի քաղաքական կուրսի, XIX համամիութենական կուսկոնֆերանսի հիմնադրույթների կենսագործման ուղղությամբ գործողությունների խոր, հիմնավորված ծրագիր:

... Այսօր մեր լեռնաշխարհը բուռն ժամանակներ է ապրում: Ժողովրդական զանգվածների աճած քաղաքական ակտիվությունը, արցախյան հանգույցի լուծման գործում հանդես բերված դանդաղկոտությունը, Ադրբեջանի հետ գոյություն ունեցող հարաբերություններում լարվածության սաստկացումը, շրջափակումը հանրապետությունում ստեղծել են գերլարված իրադրություն: Ցավով ենք նշում, որ խորհրդային իշխանության 70-րդ տարում անմեղ մարդկանց արյուն է հեղվում, չի դադարում գաղթականների հոսքը, տեղի է ունենում մեր պետության պատմության մեջ այնպիսի աննախադեպ ձեռնարկում, ինչպիսին է միութենական հանրապետության տնտեսական շրջափակումը հարևանի կողմից:

ԼՂԻՄ-ի պրոբլեմը Հայաստանի և Ադրբեջանի տարածքային վեճի առարկա չէ: Այն առաջադրվել է ոչ թե Հայաստանի, այլ հենց Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կողմից: Այն պետք է դիտել միայն որպես ժողովրդի ինքնորոշման հարց: Խոսքը ժողովրդի կամքի արտահայտման, նրա սուվերեն իրավունքի մասին է: Այդ իրավունքն անտեսելը նշանակում է վարկաբեկել կուսակցության ազգային քաղաքականությունը: Ազգային քաղաքականության վերաբերյալ ԽՄԿԿ-ի պլատֆորմում ճիշտ է ասվում, որ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը պետք է լուծվի սահմանադրական-իրավական, դեմոկրատական հիմքի վրա, հրապարակայնորեն, բոլոր շահագրգիռ կողմերի ներկայացուցիչների պարտադիր մասնակցությամբ:

Կուսակցության ազգային քաղաքականության ստրատեգիան այսօր կանխորոշվում է սոցիալիստական ֆեդերալիզմի հիմունքների հետագա զարգացմամբ, միութենական հանրապետությունների ինքնուրույնության խորացմամբ, ռեգիոնալ տնտհաշվարկի ներդրմամբ և մի ամբողջ շարք արմատական այլ քայլերով: Խորհրդային ֆեդերացիան ոչ միայն միութենական հանրապետությունների, այլև ինքնավար կազմավորումների միություն է: Դրանով իսկ կշեշտվի, որ մեզ մոտ չկան ժողովուրդներ՝ ավելի կամ պակաս իրավունքներով, բոլոր ազգերն ու ազգություններն ունեն հավասար ինքնուրույնություն և հոգևոր, մշակութային, տնտեսական ու սոցիալական զարգացման հավասար հնարավորություններ:

Մինչև տարեվերջ քիչ ժամանակ է մնացել: Հարկավոր է մեկ անգամ ևս խորամուխ լինել, թե պլանների կատարման տեսակետից ինչով կավարտվի տարին: Հանրապետությունը մեծ պարտք ունի երկրի հանդեպ, խնդիրն այն է, որ ժամանակին կատարվեն պլաններն ու պարտավորությունները: Հայաստանը դուրս է գալիս շրջափակումից: Կնորմալանա կյանքը Արցախում: Անցած տարիների դժվարին ժամանակները, ժողովրդին երկրաշարժի և սումգայիթի պատճառած ահավոր ողբերգությունը կտրվեն պատմության հիշողությանը: Եվ միայն ավերված քաղաքներն ու գյուղերը, կորսված մարդիկ, փշրված ճակատագրերն ու կործանված ընտանիքները, հաշմանդամներն ու ծնողներից զրկված երեխաները, անօթևան գաղթականներն ու ժողովրդի ծանր հոգեվիճակը կմնան մեզ հետ: Կմնան այնքան ժամանակ, մինչև մենք կարողանանք Հայաստանը դուրս բերել այս ահավոր ստրեսային վիճակից:

Հայ ժողովուրդը լավատեսորեն է նայում ապագային և լի է վճռականությամբ մինչև վերջ հասցնել վերակառուցման պատմական գործը: Հոկտեմբերի ազդակները ամրապնդվում են վերակառուցման գաղափարներում ու արարումներում:

---



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Տ. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

ՄԵՐ ԵՐԿՐԻ քաղաքական, տնտեսական ու սոցիալական վերակառուցման ամբողջ համակարգում շատ կարևոր տեղ են գրավում ազգամիջյան հարաբերությունները, որոնց հիմնովին կատարելագործումը՝ ազգերի ինքնորոշման լենինյան հայտնի սկզբունքներով, բախտորոշ նշանակություն կունենա մեր երկրի ներկայի և ապագայի հաջող զարգացման համար: Ամենքին հայտնի է, որ անցած ժամանակաշրջանում, հատկապես անհատի պաշտամունքի, լճացման տարիներին ղեկավարման վարչահրամայական-բյուրոկրատական արատավոր սիստեմն իր կործանարար ազդեցությունն է թողել նաև ազգային քաղաքականության վրա, այն զրկել նյութական հիմքից, ձևախեղել այդ նուրբ պրոբլեմը: Դեռևս խորհրդային իշխանության հաստատման արշալույսին Վ. Ի. Լենինը գրել է. «Թե՛ տեղական տարբերությունները, թե՛ տնտեսական կացութաձևի առանձնահատկությունները, թե՛ կենցաղային ձևերը, թե՛ բնակչության պատրաստակամության աստիճանը, թե՛ այս կամ այն պլանն իրականացնելու փորձերը՝ այս բոլորը պետք է արտացոլվի սոցիալիզմի ուղու առանձնահատկության մեջ...» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 36, էջ 128):

Անդրկովկասյան հանրապետությունների նկատմամբ Վ. Ի. Լենինն այդ առանձնահատկություններն ավելի կոնկրետ կերպով առաջ քաշեց 1921 թ. ապրիլի 14-ին գրած իր հայտնի ծրագրային նամակում: Ստալինյան մղձավանջային տարիներին նենգափոխվեցի լենինյան շատ հայտնի սկզբունքներ ազգային հարցի և ազգամիջյան հարաբերությունների վերաբերյալ և պատահական չէ, որ վերակառուցման, դեմոկրատիայի և հրապարակայնության այս պայմաններում, ինչպես նշված է ԽՄԿԿ-ի պլատֆորմում, երկրում ազգային հարցը վերջին ժամանակներս բացառիկ սրություն է ստացել:

Համամիտ լինելով կուսակցության ազգային քաղաքականության ծրագրի հիմնական դրույթներին՝ անհրաժեշտ եմ համարում մեր հանրապետության օրինակով անդրադառնալ մի երկու սկզբունքային հարցերի:

«Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո,— նշված է ԽՄԿԿ-ի պլատֆորմում,— խորհրդային իշխանությունը ձեռնամուխ եղավ ազգային հարցում սոցիալիստական ծրագրի իրագործմանը: Այդ ծրագրի առանցքն էին ազգային ինքնորոշման և աշխատավորների ինտերնացիոնալ համագործակցության՝ Վ. Ի. Լենինի առաջադրած գաղափարները»: Հատկապես խորհրդային իշխանության առաջին տարիներին, հաշվի առնելով երկրի կազմում ընդգրկված միութենական հանրապետությունների զարգացման տարբեր աստիճանները, ժողովրդական տնտեսության մակարդակների խիստ տարբերությունը, կուսակցությունը և նորաստեղծ իշ-

---

*ՍԱՂԱԹԵԼՅԱՆ ՏԻԳՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԻ— պատմական գիտությունների թեկնածու:*

ղաքական ու տնտեսական ինքնուրույնությունն ամրապնդելու, կենտրոնական ու տեղական օրգանների իրավունքներն ու պարտականությունները ճշգրտորեն սահմանազատելու և այն օրենսդրությամբ ամրապնդելու միջոցով հնարավորություն ստեղծելու ազգամիջյան հարաբերությունները բարձրացնելու մի նոր, ավելի բարձր աստիճանի: Դրա հաջողության հիմնական առանցքը, ինչպես արդարացիորեն նշված է ԽՄԿԿ-ի պլատֆորմում, ժողովուրդների օրինական իրավունքների և շահերի ամբողջությամբ վերականգնումն է, լենինյան սկզբունքներով ազգերի ինքնորոշումը: Դա կդառնա ազգային շահերի պաշտպանության այն հուսալի մեխանիզմը, որը մեծապես կնպաստի վերակառուցմանը:

Եղած խոչընդոտներն արագորեն վերացնելուն, սխալներն ու բացթողումներն ուղղելուն խանգարողներից են մեր զարգացման արդի մակարդակին և վերակառուցման պահանջներին չհամապատասխանող ԽՍՀՄ սահմանադրությունը, մեր դանդաղկոտությունն ու անվճռականությունը: Կուսակցության ծրագրում որոշակիորեն գրված է, որ խորհրդային ֆեդերացիայի վերակառուցման օրգանական մաս է կազմում ինքնավար հանրապետություններում, մարզերում և օկրուգներում ապրող ժողովուրդների օրինական իրավունքներն ու շահերը լրիվ ծավալով վերականգնելը: Դրանց շարքում ուրույն տեղ ունի Արցախի պրոբլեմը, որի ժողովուրդը տասնյակ տարիներ տուժել է 20-ական թվականներին թույլ տրված ստալինյան կոպիտ կամայականությունից, բռնի անջատվել մայր ժողովրդից: Արցախցիները ցանկանում են իրենց պապենական երկրում ապրել ազգային մշակույթով, լեզվով, սովորույթներով, մի ամբողջություն կազմել Խորհրդային Հայաստանի հետ: Մեր հարևան Ադրբեջանի առանձին գործիչներ մոլորության մեջ են գցում իրենց ժողովրդին, հրահրում հարևան երկու ժողովուրդներին միմյանց դեմ, որը կարող է նորից հանգեցնել անցանկալի հետևանքների: Դրանով նրանք ծանր հարված են հասցնում վերակառուցման քաղաքականությանը, բարդացնում առանց այն էլ երկրի ծանր վիճակը: Արցախի պրոբլեմը պետք է լուծվի որքան հնարավոր է շուտ՝ հաշվի առնելով ինքնավար մարզի բնակչության բացարձակ ճնշող մեծամասնության շահերն ու ձգտումները: Հարցի կիսատ-պռատ լուծումը վնասում է գործին: Լեռնային Ղարաբաղում ստեղծված հատուկ կառավարման կոմիտեն, ըստ իս, չկարողացավ արդարացնել իրեն, որի հետևանքով ազգաբնակչության դժգոհությունն ավելի բորբոքվեց: Այդ բոլորը հանգեցրեց այն բանին, որ մարզի ազգաբնակչությունը նախաձեռնեց հրավիրել իր ներկայացուցիչների համագումար և ստեղծեց Ազգային խորհուրդ, որը հատուկ կոմիտեի հետ միասին պետք է տնօրինի մարզի գործերը:

Լեռնային Ղարաբաղի աշխատավորության նախաձեռնությունը բոլորովին չի հակասում կուսակցության ազգային քաղաքականության պլատֆորմի սկզբունքներին: Ինքնավար մարզի այսօրվա իրավիճակը պահանջում է աշխատավորության շահերի պաշտպանությունն ապահովել ավելի արդյունավետ միջոցներով:

Ներկա պայմաններում ի՞նչ նախադրյալներ կան այդ պրոբլեմի հաջող լուծման համար: Հասկանալի է, որ հիմնական պայմանը երկրի վերակառուցման, դեմոկրատացման ու հրապարակայնության քաղաքականության իրագործումն է, որը հնարավորություն է ընձեռում հիմնովին վերանայելու ազգային հարցի լուծման ուղիները, ուղղելու նախկինում թույլ տրված սխալներն ու շեղումները:

Հարկ է նշել, որ Խորհրդային Միությունն ակտիվ մասնակցություն է ունեցել միջազգային մասշտաբով մարդու իրավունքների նորմերի մշակմանը, ուստի որպես իրավական պետություն, պետք է հարգի իր կողմից ստորագրած փաստաթղթերը: Պետք է հաշվի առնել ինքնավար մարզի սոցիալ-տնտեսական և կուլտուրական առաջընթացի համապատասխան մակարդակը, որի հետագա արագ զարգացումն անխզելիորեն պայմանավորված է այդ պրոբլեմի հաջող լուծմամբ: Չարաչար սխալվում են նրանք, ովքեր ազգային հարցի լուծման լենինյան գաղափարները և խորհրդային ֆեդերացիայի ամրապնդման անհրաժեշտությունն անտեսելով՝ այդ հարցի արդարացի լուծման մեջ ազգայնականություն են փնտրում:

Խորհրդային ֆեդերացիայի վերակառուցման գործում ազգային հարցի վերաբերյալ ԽՄԿԿ-ի պլատֆորմում շատ կարևոր տեղ է հատկացված Միության և միութենական հանրապետությունների իրավունքների և պարտականությունների պրոբլեմին, որն իր բովանդակությամբ զգալի քայլ է դեպի իրավական դեմոկրատական պետության ստեղծումը: Սակայն միութենական հանրապետությունների իրավունքների ծավալման գործում կարելի է երկրի արտաքին հարաբերությունների քաղաքականությունը մշակելիս այսուհետև ավելի ակտիվորեն մասնակից դարձնել միութենական հանրապետություններին՝ այդ իրավունքը օրինականացնելով սահմանադրական կարգով:

Նոր սահմանադրությունը մշակելիս պետք է հնարավորություն ընձեռել ինքնավար հանրապետություններին, մարզերին և օկրուգներին իրենց ցանկությամբ դուրս գալու միութենական հանրապետությունների կազմից և ենթարկվելու միութենական կենտրոնական մարմիններին: Պետք է հաշվի առնել այն հանգամանքը, որ միութենական հանրապետությունների կազմում գտնվող ինքնավար հանրապետություններն ու մարզերը մինչև օրս լիովին չեն օգտվում լենինյան ֆեդերացիայի ընձեռած իրավունքներից: Անցյալից ժառանգած «ավտոնոմիզացիան» դեռևս չի հաղթահարված:

Ոչ պակաս կարևոր նշանակություն ունի Միության և միութենական հանրապետությունների իրավունքների ու պարտականությունների ճշգրիտ սահմանազատումը՝ պարզ ու որոշակի դարձնելով յուրաքանչյուրի օրենսդրական իրավունքները: Այդ առավել կարևոր է մի այնպիսի պետության համար, ինչպիսին ԽՍՀՄ-ն է, որտեղ կամավոր սկզբունքներով ստեղծվել է խորհրդային ֆեդերացիա: Խորհրդային օրենքներն ամբողջ երկրի համար մշակվում ու հաստատվում են սուվերեն հանրապետությունների իրավահավասար լիազոր ներկայացուցիչների կողմից: Դա Միության և հանրապետությունների համատեղ գործունեություն է:

Խորհրդային ֆեդերացիայի ամրապնդումը ենթադրում է միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքների ավելացում և կատարելագործում, բոլոր ազգերի իրավահավասարության երաշխիքի ամրապնդում, առանց որի գործնականում չի կարող լինել ուժեղ ու արդիական սոցիալիստական պետություն: Դա է կուսակցության դիրքորոշումը ազգային քաղաքականության հարցի վերաբերյալ հրապարակված ԽՄԿԿ-ի պլատֆորմում:

---

# ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ԴԱՐԲՆՈՑԸ

Մ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

«Զարգացնել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգը, բարելավել որակյալ բանվորների պատրաստումը անմիջապես արտադրությունում՝ գիտատեխնիկական առաջադիմության պահանջներին համապատասխան»:

(ԽՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններից)

ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ գործում այսօր էլ ավելի է կարևորվում բանվորական կադրերի պատրաստումը, որը հիմնականում իրականացվում է պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգի միջոցով: Այստեղ ևս խաչաձևվում են քաղաքական, բարոյահոգեբանական, սոցիալ-տնտեսական այն հրատապ խնդիրները, որոնք ծառացած են մեր հասարակության առջև և անվերապահ լուծում են պահանջում:

Գաղտնիք չէ, որ հանրապետության ժողովրդական տնտեսությունը լուրջ դժվարություններ է ապրում, առանձին ճյուղերում վիճակն անգամ ծանր է: Դա ունի թե՛ օբյեկտիվ, թե՛ սուբյեկտիվ պատճառներ, որոնցից մեկն էլ այն է, որ զգալի թվով բանվորական կադրեր իրենց պրոֆեսիոնալ պատրաստությամբ չեն բավարարում էկոնոմիկայի հարաճուն պահանջները, չունեն համապատասխան մասնագիտական գիտելիքներ, հմտություններ, համաքայլ չեն ընթանում վերակառուցվող արտադրությանը:

Վերջին երկու տասնամյակներին բանվորական կադրերի հախուռն ձևով պատրաստումը պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգում (և ոչ միայն այստեղ) խիստ բացասաբար է անդրադարձել նրանց մասնագիտական որակի վրա: Ցավոք, այս միտումն այսօր ևս առկա է: Ժամանակի պահանջներից խիստ հետ է մնացել նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների նյութատեխնիկական բազան:

Մեր հանրապետությունն այսօր որակյալ բանվորների խիստ կարիք ունի: Այս առումով պետք է, որ շահագրգռված կազմակերպություններն ամբողջ դեմքով շրջվեին դեպի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգը, ձեռք մեկնեին նրան, տեսադաշտում պահեին նրանց հուզող հարցերը: Մինչդեռ պրոֆտեխուսումնարաններին օգնող ձեռքերը քանի գնում պակասում են, իսկ ներկայացվող պահանջները՝ շատանում:

Նոր՝ 1990 տնտեսական տարվանից Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները, շինարարական և մյուս կազմակերպությունները հիմնականում անցնելու են տնտհաշվարկի: Տրամաբանական հարց է առաջանում. իսկ պրոֆտեխնիկական ուսումնարաննե՞րը... Նրանք է՞լ են անցնելու տնտհաշվարկի. այսինքն բանվորական կադրերի պատրաստման համար նրանք պե՞տք է ֆինանսական փոխհատուցում պահանջեն ձեռնարկություններից: Մյուս կողմից, տնտհաշվարկի պայմաններում ձեռնարկությունները կարող են ֆինանսավորել պրոֆտեխնիկական ուսում-

---

*ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ՄՈՎՍ ԳԵՂԱՄԻ— ՀԽՍՀ ժողովրդական կրթության մինիստրության միջնակարգ մասնագիտական և պրոֆտեխկրթության վարչության պետ*



նարաններին, որպեսզի վերջիններս բանվորական կադրեր պատրաստեն իրենց համար: Եվ ընդհանրապես, նպատակահարմա՞ր է արդյոք տնտհաշվարկային հարաբերությունները տեղափոխել կրթության բնագավառ: Այս հարցերը խորապես հուզում են ուսումնարանների ղեկավարներին ու ինժեներամանկավարժական աշխատողներին: Դրանք պետք է արագորեն լուծվեն:

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններն իրենց գոյության 60—65 տարիների ընթացքում բանվորական կադրերի պատրաստման զգալի փորձ են կուտակել: Լինելով պետական ուսումնական հաստատություններ՝ դրանք կոչված են հասարակության և պետության համար պատրաստել որակավորված բանվորներ, բավարարել քաղաքացիների պահանջները՝ ելնելով նրանց հետաքրքրություններից, հակումներից:

Պրոֆտեխնիկական ուսումնարանների մասին մշակված նոր հայեցակետում ընդգծված է, որ դրանք մշտապես զարգացող ուսումնական հաստատություններ են, ուր հնարավորին չափ բարենպաստ պայմաններ են ստեղծվում անհատի համակողմանի զարգացման, նրա ընդունակությունների բացահայտման, մասնագիտական վարպետության ձևավորման համար: Որպես ժողովրդական կրթության կարևոր օղակ, երիտասարդության թվից որակյալ բանվորական կադրերի պատրաստման հիմնական ձև, դրանք պետք է բավարարեն էկոնոմիկայի բոլոր ճյուղերի պահանջները:

Արդի հրատապ խնդիրներից մեկը, որ ծառացած է պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների առջև, բազային ձեռնարկության ակտիվ, անմիջական մասնակցությունն է կրթական գործին: Դա բավականաչափ հստակ և պարզ ձևակերպված է բազային ձեռնարկության գործող և առաջիկայում ընդունվելիք նոր կանոնադրություններում, որը, ցավոք, գործնականում չի իրականացվում: Փաստորեն բանվորական կադրերի պատրաստման ամբողջ ծախսերը կատարվում են պետական բյուջեի հաշվին: Այստեղից էլ՝ ձեռնարկության անտարբերությունը պատրաստված բանվորական կադրի նկատմամբ: Իսկ եթե բազային ձեռնարկությունն իր անմիջական ներդրումը կատարեր ձեռնարկության շահույթների՞ց: Հավանալի է, որ խնդիրը միանգամայն այլ լուծում կստանար:

Առայսօր առանձին բազային ձեռնարկություններ իրենց համար բանվորական կադրեր պատրաստող ուսումնարանների շրջանավարտներին աշխատանքի տեղավորելիս հանդես են բերում կամայական վերաբերմունք, ոչ քիչ դեպքերում իջեցնում են նրանց մասնագիտական կարգը, մի մասին չեն ապահովում ստացած մասնագիտությամբ աշխատանքով, չեն ստեղծում աշխատանքային բարենպաստ պայմաններ:

Այսպես. «Երազ» ավտոմոբիլային գործարանի ղեկավարները համառորեն հրաժարվում էին իրենց համար կադրեր պատրաստող № 8 ՊՏՈՒ-ի շրջանավարտներից, պատճառաբանելով, թե բանվորական տեղեր չունեն: Նման կարճատեսության արդյունքը չէ՞ այն իրողությունը, որ ձեռնարկությունն այսօր կադրերի մեծ կարիք ունի: Ստեղծված դժվարին, ֆինանսական ծանր պայմաններում «Երազ»-ի ղեկավարները կարո՞ղ են համարձակություն հանդես բերել և սկզբում մասնակի, եկող և հաջորդ տարիներին ամբողջությամբ հատուցել մեկ բանվորի վրա կատարած ֆինանսական ծախսերը:

Առանձին ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարներ էլ հանգիստ խղճով հրաժարվում են իրենց իսկ հայտերով պատրաստված բանվորական կադրերից, պատճառաբանելով, թե ինքնաֆինանսավորման անցնելը հնարավորություններ չի ընձեռում: Նման վերաբերմունքը հանրապետության մի շարք ձեռնարկություններում, կազմակերպություններում առաջացրել է որակյալ բանվորական կադրերի խիստ պահանջ, դեռ ավելին՝ դեֆիցիտ (Երևանի «Երազ» ավտոմոբիլային գործարան, շինարարական նյութերի և իրերի արդյունաբերական միավորում, Աբովյանի միջշրջանային մասնագիտացված շինարարական վարչություն և այլն): Ստացվում է, որ տնտհաշվարկային հարաբերությունները ինչ-որ առումով արգելք են դառնում ձեռնարկություն-ՊՏՈՒ կապի ամրապնդմանն ու զարգացմանը և կարող են ֆինանսական ոչ բարենպաստ վիճակ ստեղծել նաև ուսումնարանների համար:

Պրոֆտեխնիկական ուսումնարանում մեկ երիտասարդ բանվորի պատրաստման ծախսերը կազմում են 800—880 ռուբլի, որը մի քանի անգամ ավելի քիչ է, քան զարգացած կապիտալիստական երկրներում նույն նպատակներին հատկացվող միջոցները: Ֆինանսավորման հարցում ուսումնարանը պետք է ամենայն աջակցություն ստանա բազային ձեռնարկությունից: Դա կարող է իրականացվել նոր կարողու-

թյունների ստեղծմամբ, մեքենասարքավորումների հատկացմամբ, բանվորական օրինակելի աշխատատեղերի ստեղծմամբ, լավ սովորողներին լրացուցիչ կրթաթոշակ վճարելով, ուսումնարանների առաջավոր վարպետներին դրամական պարգևատրում տալով և այլն:

Մի երկու տարի առաջ Երևանի քաղաքային էլեկտրատրանսպորտի ձեռնարկությունները վարորդական կադրերի խիստ պակաս էին զգում, իսկ № 28 պրոֆտեխնիկական ուսումնարանը դժվարանում էր սովորողների կոնտինգենտ հավաքագրել: Պատճառն այն էր, որ սովորելու էին գալիս հիմնականում միջնակարգ դպրոցն ավարտած, 18 տարին լրացած, մի զգալի մասը բանակում ծառայությունն ավարտած պատանիներ, որոնք ստանում էին 30 ռուբլի կրթաթոշակ: Հասկանալի է, որ 30 ռուբլով դժվար է շահագրգռել չափահաս մարդուն, որն անմիջականորեն արտադրությունում, կոոպերատիվներում աշխատելու դեպքում տասն անգամ ավելի շատ կարող է վաստակել: Այստեղ հեռատեսություն հանդես բերեցին մայրաքաղաքի էլեկտրատրանսպորտի ձեռնարկությունների ղեկավարները՝ յուրաքանչյուր սովորողի լրացուցիչ 90—100 ռուբլի կրթաթոշակ տալով: Նրանք նաև որոշ արտոնություններ են սահմանել իրենց մոտ աշխատանքի անցած շրջանավարտների համար: Ճիշտ է, վարորդական կադրերի մեծ պահանջը միանգամից հնարավոր չէ բավարարել, սակայն նման հետևողական աշխատանքը տարիների իր դրական պտուղները կտա:

Իհարկե, նման հարցադրումը նշանակում է, որ խնդիրն այսօր կլուծվի, եթե ձեռնարկության ղեկավարը օժտված լինի ժամանակի շունչը զգալու հմտությամբ: Սակայն դրա համար անհրաժեշտ է մանրելու լայն և իրավական հնարավորություններ ընձեռել: Ժամանակը չէ՞ նաև, որ իրավական հիմքի վրա սահմանվի որոշակի կարգ, որպեսզի բազային ձեռնարկությունները (և ոչ միայն բազային) բանվորական կադրի պատրաստման վրա կատարվող ծախսերի գոնե մի մասը հատուցեն: Ժամանակը չէ՞, որ պետական բյուջեն փոքր-ինչ բեռնաթափվի կադրերի պատրաստման համար ֆինանսական ծախսերից (այն տարեկան կազմում է միջին հաշվով 30—35 միլիոն ռուբլի):

ԽՍՀՄ ժողովրդական կրթության պետական կոմիտեն հավանություն է տվել նոր ուսումնական տարվանից քաղաքացիների, ինչպես նաև կոոպերատիվների և այլ կազմակերպությունների ֆինանսական միջոցների հաշվին պրոֆեսիոնալ ուսուցման դասընթացներ (խմբեր) կազմակերպելուն՝ ուսուցման համար պրոֆտեխնիկական ուսումնարաններ քաղաքացիների գործուղմամբ: Ներգրավված կազմակերպությունների հետ փոխհարաբերությունները կառուցվելու են պայմանագրային հիմունքներով: Նման համագործակցությունը կոոպերատորներին առաջադրում է մի շարք խնդիրներ. ուսումնարաններում ստեղծել կաբինետ-լաբորատորիաներ, արհեստանոցներ, հատկացնել հումք, նյութեր, լուծել սովորողների արտադրական պրակտիկայի կազմակերպման հարցերը, շրջանավարտին աշխատանքի տեղավորել և այլն: Այս առումով պրոֆտեխնիկական ուսումնարանների իրավունքները մշտապես պետք է ընդլայնվեն: Կարծում ենք, որ հանրապետությունում կարելի է ունենալ կոոպերատիվ հիմունքներով գործող մեկ-երկու ուսումնարան:

Գաղտնիք չէ, որ առանձին ձեռնարկությունների ղեկավարների, անգամ ժողովրդական կրթության բնագավառի աշխատողների մի մասի շրջանում իշխում է այն տեսակետը, թե պրոֆեսիոնալ դպրոցն իրեն սպառել է և բանվորական կադրերի պատրաստման, համալրման հարցը կարելի է լուծել վարպետ-աշակերտ կապի միջոցով: Կարծում ենք, նման մոտեցումը արդյունք է այն բանի, որ պրոֆտեխկրթության համակարգում եղած դժվարությունների ու պրոբլեմների սոցիալական, տնտեսական պատճառները չեն վերլուծվում, նրա նկատմամբ չի դրսևորվում հոգատարություն, և ուսումնարանները օրգանապես չեն դիտվում բազային ձեռնարկություն-ՊՏՈՒ կապի մեջ:

Պրոֆտեխնիկական ուսումնարանների զարգացման և նյութատեխնիկական բազայի ամրապնդման մասին վերջին տարիներին տասնյակ որոշումներ են ընդունվել, որոնք, սակայն, մնացել են թղթի վրա: Դրանց իրականացումը կարող էր մի նոր աստիճանի բարձրացնել պրոֆտեխնիկական կրթության մակարդակը, բայց բազային ձեռնարկությունների գերակշռող մասը գրեթե ոչինչ չձեռնարկեց:

Վերջերս ՀԽՍՀ ժողկրթության մինիստրության պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության և աշխատանքի ուսուցման բաժինն ուսումնասիրեց մինիստրության են-



թակայության 70 ուսումնարանների նյութատեխնիկական բազայի վիճակը: Այստեղ ներկայումս գործում է 47 անուն 242 ուսումնական արհեստանոց, այդ թվում՝ 15 խառատային, 7 ֆրեզերային, 52 փականագործական, 13 էլեկտրագազաեռակցման, 5 եռակցման, 10 ծեփագործական-ներկարարական, 14 փայտամշակման, 42 կարի: Դրանցից 142-ը (60 տոկոսը) ստեղծվել է մինչև 1970 թվականը: Այդ արհեստանոցներում տեղադրված, մոնտաժված հաստոցների, սարքավորումների կեսից ավելին մաշվել է թե՛ ֆիզիկապես, թե՛ բարոյապես: Փաստորեն, հաստոցային համակազմի 68,5 տոկոսը համալրվել է մինչև 70-ական թվականները: 1980 թ. հետո բազային ձեռնարկություններից ուսումնարաններին հատկացված հաստոցների գերակշռող մասը նախկինում օգտագործված էր: 1981—1989 թթ. ընթացքում պրոֆտեխուսումնարանների արհեստանոցների հաստոցային և մեքենասարքավորումների համակազմը նորացվել է ընդամենը 0,49 տոկոսով: Այսօր համակարգի ուսումնարանները 134 նոր արհեստանոցի խիստ կարիք ունեն, սակայն ոչ մի բազային ձեռնարկություն իր համար բանվորական կադրեր պատրաստող ուսումնարանում գոնե մեկ օրինակելի արհեստանոց չի կահավորել: Էլ չենք խոսում այն մասին, որ պահանջի մեկ երրորդը հանրապետության պլանավորող և մատակարարող կազմակերպություններից ստանալը մնում է անիրագործելի երազանք:

Աղքատիկ է նաև կաբինետ-լաբորատորիաների կահավորանքը: Այն հնարավորություն չի ընձեռում կատարելու ուսումնական ծրագրերով նախատեսված բոլոր լաբորատոր, փորձնական աշխատանքները: Հրատապ խնդիր է առաջիկա 2—3 տարում մեր ուսումնարաններում նորմատիվներին համապատասխանող 200—210 կաբինետ-լաբորատորիաների (յուրաքանչյուր պրոֆտեխուսումնարանում՝ 2—3-ը, իսկ մինչև տասներեքերորդ հնգամյակի վերջը՝ 12—13-ը) ստեղծումը, որով կապահովվի բոլոր հիմնական մասնագիտական և հանրակրթական առարկաների որակյալ ուսուցումը:

Բարվոք վիճակում չէ ուսումնարանների ավտոհավաքակայանը: Եղած մեքենաների 70 տոկոսը 20—25 տարվա վաղեմության է: Մի՞թե ավտոմեքենաների նման բազայով կարելի է բարձրորակ վարորդներ պատրաստել: Ամենահամեստ հաշվարկներով պրոֆտեխուսումնարաններն այսօր կարիք ունեն 29 մակնիշների 124 ավտոմեքենայի, ավտոամբարձիչի, ավտոբեռնիչի և այլն: Դրանք պահեստամասերի, վառելանյութերի, ավտոգործի վարժասարքերի մեծ պակաս են զգում,մինչդեռ հանրապետության պետպլանը տարեկան տրամադրում է բենզինի նորմատիվային պահանջի ոչ ավելի, քան 30 տոկոսը, տարեկան ոչ ավելի, քան մեկ ավտոմեքենա: Պրոֆտեխկրթության հիմնարկների մեծ մասն ապահովված չէ գյուղատնտեսական տեխնիկայով (համակարգի 70 ուսումնարաններից 30-ում բանվորական կադրեր են պատրաստվում նաև գյուղատնտեսության համար): Մեծ է պահանջը տեխնիկական միջոցների՝ հատկապես մագնիտաֆոնների, տեսամագնիտաֆոնների, հեռուստացույցերի, կոմպյուտերային սարքերի, կինոապարատների նկատմամբ: Եվ բնական հարց է առաջանում. հնարավո՞ր է նյութատեխնիկական բազայի արդիականացման այսպիսի դանդաղ տեմպերի պայմաններում ուսուցման որակի կտրուկ բարձրացման պահանջ ներկայացնել:

1988 թվականին 23 պրոֆտեխուսումնարաններ տրվեցին բազային ձեռնարկություններին: Ինչպես ցույց տվեց կյանքը, որոշումն ընդունվել էր հապճեպ, առանց ուսումնարանների ինժեներամանկավարժական կոլեկտիվների, առանձին ձեռնարկությունների կարծիքը հաշվի առնելու: Անցած ժամանակահատվածում կրկին ժողկրթության ենթակայությանն են հանձնվել № № 11, 50 ուսումնարանները, իսկ Երևանի № 5 և Հոկտեմբերյանի № 84 պրոֆտեխուսումնարանների ինժեներամանկավարժական կոլեկտիվներն առ այսօր բողոքում են այդ փաստի դեմ: Հիշյալ 23 պրոֆտեխնիկական ուսումնարանների զգալի մասը բանվորական կադրեր է պատրաստում ոչ միայն բազային ձեռնարկությունների, այլև իրենց ռեգիոնի քաղաքների ու շրջանների հիմնարկ-ձեռնարկությունների համար: Դրանցից 14-ի (№ № 5, 26, 53, 55, 76, 77, 82, 84, 85, 86, 87, 89, 90, 92) սովորողները ձեռք բերելով մասնագիտական որակավորում, միաժամանակ ստանում են ընդհանուր միջնակարգ կրթություն (մոտ 84 տոկոսը):

Քանի որ բազային ձեռնարկությունները միջնակարգ կրթություն տվող ուսումնական հաստատությունները ղեկավարելու, մեթոդական օգնություն ցույց տալու փորձ, համապատասխան ծառայություններ չունեն, իսկ ՀԽՍՀ պետպլանը պարտա-

վորեցրել է մինչև 2005 թ. նշված ուսումնարաններում բանվորական կադրերի պատ-
րաստումը հիմնականում իրականացնել ութամյա կրթության բազայի վրա, կարծում
ենք, որ դրանք պետք է վերանենթարկել ՀԽՍՀ ժողովրդական կրթության մինիս-
տրությանը: Իրոք, բոլոր պրոֆտեխուսումնարանները մեկ համակարգում միավորելը
հրատապ խնդիր է: Դա կնպաստի նրանց միասնական ղեկավարմանն ու մեթոդա-
կան օգնություն ցույց տալուն, ուսումնարանները բազմատեսակ փորձարկումների
դաշտ դարձնելուց զերծ պահելուն:
Այդպիսի մի փորձարկման օրինակ էր այս տարվա հունվարին Երքաղխորհրդի
գործկոմի որոշմամբ մայրաքաղաքի պրոֆտեխնիկական ուսումնարանները ժողկր-
թության շրջանային բաժինների տնօրինությանը հանձնելը: Ի դեպ նման որոշման
ընդունումը չէր համաձայնեցվել ուսումնարանների ինժեներամանկավարժական կո-
լեկտիվների հետ, նախապես չէր քննարկվել, ինչը զգալի վնաս հասցրեց կրթա-
դաստիարակչական աշխատանքներին: Մայրաքաղաքի ժողկրթության շրջանային
բաժինները, անտեսելով ուսումնարանների կանոնադրությունը, ղեկավարումն իրա-
կանացնում էին դպրոցի նկատմամբ կիրառած մեթոդներով: Ճիշտ գնահատելով ի-
րավիճակը և ստանալով ՀԽՍՀ Մինիստրների խորհրդի աջակցությունը, հանրապե-
տության ժողկրթության մինիստրությունը մայրաքաղաքի ուսումնարանները վերա-
դարձրեց իր անմիջական տնօրինությանը: Սակայն գրչի մեկ հարվածով սխալն
ուղղելու համար շուրջ կես տարի պահանջվեց: Հավանաբար այդ սխալի հետևանք-
ների վերացումն էլ մի որոշ ժամանակ կպահանջի:
Կարծում ենք՝ պրոֆտեխնիկական ուսումնարանների նկատմամբ չարդարացված
ոչ ճիշտ վերաբերմունքի, «նոր ձևով» ղեկավարելու դրսևորում էր նաև ժողովրդա-
կան կրթության համակարգում պրոֆտեխկրթությունը ներառելու որոշումը: Կա-
տարվեց ավելի շուտ զուտ մեխանիկական միավորում մեկ ցուցանակի ներքո: Ներ-
կայումս պրոֆտեխկրթության համակարգը անիրավահավասար վիճակում է մյուս
ուսումնական հաստատությունների համեմատ: Նորից ու նորից շարունակում են մե-
ղադրանքներ ներկայացնել պրոֆտեխնիկական ուսումնարաններին ցածրորակ կադ-
րեր պատրաստելու, ավելի շատ իրավախախտ սովորողներ ունենալու համար: Բայց
չէ որ ուսումնարանների սովորողները ութերորդ դասարանը, միջնակարգն ավար-
տած շրջանավարտներն են, հիմնականում հանրակրթական դպրոցում ուսման մեջ
հաջողություն չունեցած պատանիներ ու աղջիկներ: Գաղտնիք չէ, որ առ այսօր ա-
ռանձին դպրոցների ութերորդ դասարանը ավարտելու մասին երիտասարդներին
վկայական է տրվում պրոֆտեխնիկական ուսումնարան գնալու պայմանով:
ԽՍՀՄ ժողովրդական կրթության պետական կոմիտեն 1988 թ. դեկտեմբերի 16-ի
№ 540 որոշմամբ թույլատրել է մեկից երեք առարկաներից անբավարար գնահա-
տական ունեցող աշակերտներին տեղափոխվել դասարանից դասարան, ավարտել
դպրոցը, ատեստատ ստանալ և «անբավարար» գնահատականների փոխարեն ա-
տեստատում ունենալ «ունկնդրել է» գրառումը: Փաստորեն այդ «ունկնդրողը» կա-
վարտի միջնակարգ դպրոցը և առանց պրոֆեսիոնալ պատրաստության կգնա ձեռ-
նարկություն, որտեղ բանվորական ձեռքերի խիստ պակաս կա, իսկ պրոֆտեխնի-
կական ուսումնարանների շատ լսարաններ դատարկ են լինելու: Դրականորեն գնա-
հատելով որոշման մարդասիրական էությունը, նաև պետք է նշել, որ այն ինչ-որ տեղ
ապակողմնորոշում է պատանիներին ու աղջիկներին, նրանց վանում պրոֆտեխնի-
կական ուսումնարաններից:
Դպրոցահասակ սովորողների, պատանիների և աղջիկների մասնագիտական
կողմնորոշման աշխատանքները հանրապետությունում կատարվում են տարերային
ձևով, չեն կրում մշտական բնույթ: Այդ աշխատանքների հիմքը պետք է դրվի դպ-
րոցում, դրանք պետք է գտնվեն տեղական խորհուրդների տեսադաշտում: Բայց
այդպե՞ս է արդյոք: Վերջին երկու տարիներին մայրաքաղաքի պրոֆտեխնիկական
ուսումնարանները սովորողների ընդունելության պլանները կատարեցին կիսով չափ:
Սակայն դա ոչ ոքի չմտահոգեց: Վիճակն ավելի վատ է այս ուսումնական տարում,
իսկ Երևանի և հանրապետության մյուս քաղաքների ու շրջանների շատ ձեռնարկու-
թյուններից հեղեղի պես թափվում են բանվորական կադրերի պահանջ-հայտերը,
խնդրանքները:
Ժողկրթության մինիստրության համակարգում պրոֆտեխկրթության ընդգրկումը
ոչ միայն «չփրկեց» ուսումնարանները, այլև ավելի դժվարացրեց նրանց գոյությունը,
ավելացրեց այն դռների թիվը, որ պետք է բախեն իրենց հրատապ հարցերը լուծե-
լու համար: Եվ ակամա տպավորություն է ստեղծվում, թե գործին առնչվող կազ-



մակերպություններից յուրաքանչյուրը ջանում է որքան կարելի է շուտ իր ուսերից
թոթափել ուսումնարանների «ծանր բեռը» և առաջին իսկ հարմար պահին պատաս-
խանատվությունը բարդել մեկ ուրիշի վրա: Այսպես էլ գոյատևում է համակարգը
«աղքատ ազգականի» աննախանձելի վիճակում:

Ժամանակն է, որ վերականգնվի ՀԽՍՀ պրոֆտեխկրթության պետական կոմի-
տեի կարգավիճակը: Բանն այն չէ, թե ինչ անուն տալ այդ մարմնին. կոմիտե, գլխա-
վոր վարչություն, թե վարչություն: Վերականգնվի, հասկանալի է, ոչ նախկին կոմի-
տեի թվական կազմով (56 մարդ), այլ թերևս, կրկնակի պակաս աշխատակիցներով:
Այն կարող է լինել սկզբում (մեկ-երկու տարի) մասնակի, այնուհետև ամբողջությամբ
տնտհաշվարկային: Վարչության ղեկավարությունը, կառուցվածքը պետք է ընտրվեն
և որոշվեն համակարգի պրոֆտեխնիկական ուսումնարանների դիրեկտորների հան-
րապետական ժողովում: Նրանք կհաստատեն ֆինանսական ծախսերը, որոնք կա-
տարվելու են ուսումնարանների եկամուտներից: Այս վերակազմավորումներով կլուծ-
վեն մի շարք խնդիրներ. նախ պետբյուջեն զգալիորեն կբեռնաթափվի, երկրորդ,
ուսումնարանները ղեկավարող մարմինը կոնկրետ ու օպերատիվ աջակցություն ցույց
կտա իրեն ենթակա ուսումնական հաստատություններին: Երրորդ, այդպիսի մար-
մինը ստիպված պետք է լինի աշխատել արդյունավետորեն, որովհետև նրա գոյու-
թյան միակ ճանապարհը այդ է լինելու, հակառակ պարագայում այն կլուծարքվի:
Այդ մարմնին պետք չէ տեսչություն, որը, մեր կարծիքով, ավելորդ է: Առանց այն
էլ քիչ չեն այլ ստուգող կազմակերպությունները, որոնք կրճատվելու, լուծարքի
ենթարկվելու փոխարեն մշտապես անում են:

Այստեղ փորձ արվեց ներկայացնել հանրապետության պրոֆտեխկրթության առ-
ջև ծառացած մի քանի խնդիրներ, հույս ունենալով, որ դրանք կդառնան լայն քըն-
նարկման առարկա. ինչ-որ չափով կխախտվի այն լռությունը, որ ստեղծվել է այդ
համակարգի շուրջը: Միաժամանակ, կարծում ենք, որ դա պատճառ կհանդիսանա,
որ համապատասխան մարմիններն իրենց ուշադրությունը բևեռեն պրոֆեսիոնալ-
տեխնիկական կրթությանը:

---

# ԱԳՐԱՐԱՅԻՆ ՍԵԿՏՈՐ. ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԸ

## (ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑ ՀԿԿ ԷՋՄԻԱԾՆԻ ՇՐՋԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ ՀԵՏ)

**ՄԱՍԻՍՆԵՐԻ ՀԱՅԱՑՔԻ ԱՌՋԵՎ** փռված Արարատյան դաշտի մի զգալի մասը զբաղեցնում է Էջմիածնի շրջանը: Այն հանրապետության վարչատերիտորիալ խոշոր միավորներից է՝ իր ագրոարդյունաբերական զարգացած համալիրով: Պետական ու կոլեկտիվ տնտեսությունները զբաղվում են խաղողագործությամբ ու պտղաբուծությամբ, բանջարաբոստանային մշակաբույսերի, հացահատիկի ու կարտոֆիլի, խորդենու արտադրությամբ, անասնապահությամբ, կերաբույսերի մշակությամբ: Արդյունաբերության համակարգում գործում են նաև գյուղատնտեսական հումք վերամշակող խոշոր ձեռնարկություններ՝ պահածոների, համակցված կերի, գինու, պանրի գործարաններ, թռչնաբուծական երկու փաբրիկա:

Մեծ է շրջանի տեսակարար կշիռը հանրապետության գյուղատնտեսական արտադրության ընդհանուր արդյունքում: Բավական է ասել, որ նրան բաժին է հասնում պետությանը վաճառվող խաղողի 15, բանջարեղենի՝ 25 տոկոսը: Տնտեսությունները ամեն տարի մթերակայաններ են ուղարկում ավելի քան 30 հազար տոննա խաղող և 65 հազար տոննա բանջարեղեն, ինչպես նաև զգալի քանակությամբ հացահատիկ, կարտոֆիլ, խորդենու կանաչ զանգված, անասնապահական մթերքներ:

Շրջանի տնտեսություններում կանաչ ճանապարհ է բացված նորի ու առաջավորի համար: Այստեղ հաջողությամբ ներդրվում և արմատավորվում են տնտեսավարման ու աշխատանքի կազմակերպման այնպիսի առաջավոր եղանակներ, ինչպիսիք են՝ տնտհաշվարկը, ինքնածախսածածկումն ու ինքնաֆինանսավորումը, կապալի զանազան ձևերը: Այդ ամենը, անտարակույս, մեծապես նպաստում է գյուղատնտեսական մթերքների արտադրության էական ավելացմանը, հետևաբար և՝ պարենային պրոբլեմի լուծմանը, գյուղում սոցիալական զարգացման արագացմանը:

Թվարկած խնդիրների առնչությամբ էլ ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար Նորիկ Եղիազարյանի հետ հարցազրույց ունեցավ մեր ամսագրի կուսակցական կյանք բաժնի վարիչ Արտավազդ Սաքանյանը:

ՀԱՐՑ.— **ԽՄԿԿ XXVII համագումարը և մասնավորապես Կենտկոմի 1989 թվականի մարտյան պլենումը հանգամանորեն անդրադարձան պարենային պրոբլեմին: Եթե ձեր շրջանի ագրոարդյունաբերական համալիրում կատարվող աշխատանքը գնահատենք համագումարի ու պլենումի պահանջների չափանիշներով, ապա այն ինչպե՞ս կարող եք արժեքավորել և ինչպե՞ս է նպաստում պարենային պրոբլեմի լուծմանը:**

ՊԱՏԱՍԽԱՆ.—Երկրի պարենային համալիրի իրավիճակը ներկայումս բնութագրվում է բացասական գնահատականներով: Դա ցույց տվեց տնտեսական զարգացման հանգամանալի վերլուծությունը ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում, կուսակցության XXVII համագումարում և XIX համամիութենական կոնֆերանսում: Ավելի պարզորոշ դարձավ այն ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում: Երկիրը 70 տարի կաղում է այս հարցում: Առանձին տեղաշարժերը միայն մասամբ են նպաստել պարենային պրոբլեմի լուծմանը, և դրա սրությունը չի դադարում աքիլեսյան գարշապար լինելուց:

Մշակելով վերակառուցման ժամանակաշրջանի կուսակցության նոր ագրարային քաղաքականությունը՝ ԽՄԿԿ Կենտկոմի 1989թ. մարտյան պլենումը որոշեց նրա ըն-



պատակները, դրանց իրականացման հիմնական մեթոդներն ու ուղիները: Առաջնային խնդիրներից են գյուղում տնտեսական հարաբերությունների արմատական վերափոխումը, սոցիալիստական սեփականության բազմազան ձևերի, տնտեսավարման հավասար պայմանների ստեղծման հիման վրա ագրոարդյունաբերական արտադրության զարգացումը: Ընդ որում, եթե լուծվեց բնակչությանը պարենամթերքով ապահովելու հարցը, ապա վերակառուցման քաղաքականությունը պատմական թևեր կառնի, չլուծվեց՝ այն դաժան ձախողման կենթարկվի:

Զթաքցնենք, ցածր աշխատավարձը, խանութների դատարկությունն ու սննդամթերքի պակասը, շուկայական գների օրավուր թանկացումը, անվերջ դեֆիցիտներն ու հերթերը առաջ են բերել մարդկանց իրավացի դժգոհությունը:

ՀԱՐՑ.— **Ո՞վ պետք է լուծի այդ խնդիրները և ինչպե՞ս:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Պատասխանը միանշանակ է. գյուղացին՝ իր քրտինքով: Մի խոսքով, պետք է գյուղացուն դարձնել հողի տերը:

Մեր շրջանում կայուն կերպով կատարվում և գերակատարվում են գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետվաճառքի պլանները, նախորդ տարիների համեմատությամբ ապահովվում է մշակաբույսերի բերքատվության և անասունների մթերատվության նկատելի աճ: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, օրինակ, ավելացել են կաթի համախառն արտադրությունը և կովերի միջին կաթնատվությունը, 112 տոկոսով կատարվել է կաթի, 191 տոկոսով՝ մսի պետվաճառքի կիսամյա պլանը: Հացահատիկի ցանքադաշտերի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 45 ցենտներ բերք: Մինչդեռ տարին դժվարին էր և շատ փորձությունների ենթարկեց շրջանի դաշտավարներին: Գարնանային խիստ ցրտահարություններն ու կարկտահարությունները մեծ վնասներ պատճառեցին: Զգալիորեն տուժեցին պտղատու և խաղողի այգիները, կաղամբի և կերաբույսերի ցանքադաշտերը: Մասնագիտական հանձնաժողովների եզրակացությամբ շրջանի գյուղատնտեսական արտադրությանը պատճառվեց շուրջ 18 միլիոն ռուբլու վնաս: Մեծ կորուստներ ունեցավ նաև անհատական սեկտորը:

Այս պայմաններում գյուղի աշխատավորները, կուսկազմակերպությունները, իրագործելով արդյունավետ միջոցառումներ, ձգտում են ստանալ առավելագույնը: Մեր հիմնական հոգսը բանջարեղենի առատ բերքի ստացումն է: Այս գործում իր ծանրակշիռ դերն է խաղում տնտեսավարման նոր մեթոդների կիրառումը գյուղատնտեսական արտադրության մեջ:

ՀԱՐՑ.— **Իսկ ավելի կոնկրե՞տ: Հենց թեկուզ վերցնենք տնտհաշվարկը, ինքնածախսածածկումն ու ինքնաֆինանսավորումը: Դրանց առավելությունները: Ի՞նչ են տալիս դրանք տնտեսություններին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Նախ ասեմ, որ շրջանում արդեն երկրորդ տարին է, ինչ ստեղծվել և գործում է «Զվարթնոց» ագրոկոմբինատը: Դա ինքնին նորույթ է գյուղատնտեսական արտադրության մեջ: Նրա համակարգում կան 52 տնտեսություններ և ձեռնարկություններ: Ընդ որում՝ 25 կոլեկտիվ և 12 պետական տնտեսություն, պահածոների, պանրի, գինու, գյուղատնտեսական արտադրության թափոններից համակցված կեր պատրաստող գործարանները, «Ագրոսերվիս» շրջանային միավորումը, շիննրոգման վարչությունը:

«Զվարթնոց» ագրոկոմբինատի ողջ համակարգը նախորդ տարի աշխատեց տնտհաշվարկի սկզբունքով, իսկ ընթացիկ տարվանից անցել է լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման: 1988 թվականին զգալիորեն բարձրացավ շրջանի տնտեսությունների շահութաբերության մակարդակը և կազմեց 25,9 տոկոս, իսկ մի շարք տնտեսություններում ապահովվեց դրանից էլ բարձր ցուցանիշ: Ներկայումս մենք չունենք վնասաբեր տնտեսություն:

Տնտհաշվարկը, վարձակալությունը, կապալը հատկապես արժեքավոր են նրանով, որ հնարավորություն են ընձեռում կարճ ժամանակում ձեռք բերել տնտեսական լավ արդյունքներ: Այս դեպքում հաշվարկի տակ է շրջանառության մեջ դրվող յուրաքանչյուր ռուբլին և ուղիներ են որոնվում եկամտի լրացուցիչ աղբյուրների համար:

ՀԱՐՑ.—**Գուցե փոքր-ինչ հանգամանորեն խոսեիք ագրոկոմբինատի էության, նրա առավելությունների ու հաջողությունների մասին, հատկապես, որ նրա գործունեությունը բարձր գնահատվեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Խնդրեմ: Ագրոկոմբինատը, իմ խորին համոզմամբ, ագրարային սեկտորի ղեկավարման կատարելապես նոր և ճիշտ համակարգ է: Դա հնարավորություն է ընձեռում շրջանին՝ լիովին տնօրինել արտադրության, վերամշակման և ի-

րացման հարցերը, դրանք կենտրոնացնել մեկ ձեռքում և բացառել ու վերացնել միջգերատեսչական պատվախնդրությունն ու քաշքշուկները: Գյուղի ղեկավարման այս ձևը արդյունավետ է և կարելի է խորհուրդ տալ Արարատյան դաշտի շրջաններին՝ ներդնելու այն:

«Զվարթնոց» ագրոկոմբինատը ստեղծվել է «Կուբան» կոմբինատի օրինակով: Վերջինիս կազմի մեջ մտնում են ոչ միայն Կրասնոդարի երկրամասի գյուղական կյանքին առնչվող բոլոր մեծ ու փոքր կազմակերպությունները, այլև Սոչիի թեյաբուծական և ձկնաբուծական տնտեսությունները: Այժմ այդ կոմբինատը կառուցում է չորս գործարան և ֆաբրիկա՝ աշխարհի արդյունաբերապես զարգացած երկրների տեխնիկայով:

Մեր «Զվարթնոց» ագրոկոմբինատը ևս ունի տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման լայն հնարավորություններ: Այս տարի կոմբինատին առընթեր ստեղծվել են ասֆալտի և երկաթբետոնե կառուցվածքների գործարաններ, գազի և էլեկտրասպասարկման գրասենյակներ, բացվել են քարհանք և ավազահանք:

Հոգ է տարվել նաև գյուղական բնակչությանը պարենամթերքով ապահովելու մասին: Կառուցվել է մրգերի արևային չորանոց, որտեղ պատրաստվել է 10 տոննայից ավելի չիր, ինչպես նաև տարեկան 2 հազար տոննա հզորությամբ ասպետիկ պահածոյացման արտադրամաս՝ արդիական սարքավորումներով: Արտադրանքը հիմնականում առաքվելու է արտասահմանյան երկրներ: Կոմբինատն ունի հզոր ֆիրմային առևտուր: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, օրինակ, նրա ֆիրմային խանութներում վաճառվել է 60 հազար ռուբլու գյուղատնտեսական մթերք և ստացվել ավելի քան 35 հազար ռուբլու օգուտ: Սկսվել է անասունների ընդունման, բտման, սպանդի, մսի վերամշակման և կիսաֆաբրիկատների արտադրության անթափոն արտադրամասի կառուցումը:

Կուզեի խոսքս ավարտել մի այսպիսի փաստով՝ ցույց տալու համար ագրոֆիրմայի առավելությունը: Եթե ՇԱԱՄ-ի ապարատի վրա տարեկան ծախսվում էր 820 հազար ռուբլի, ապա ագրոկոմբինատի ապարատի վրա՝ ընդամենը 130 հազար ռուբլի, այն էլ ոչ թե տնտեսություններից արվող մասհանումների, այլ ագրոկոմբինատի ֆինանսահաշվարկային կենտրոնի օգուտների հաշվին, որոնք հասնում են մեկ միլիոն ռուբլու:

**ՀԱՐՑ.—Իսկ ի՞նչ կասեիք կապալային աշատանքի, հատկապես վարձակալական եղանակի ներդրման մասին, ինչպե՞ս են կատարվում այդ առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի պահանջները, ինչպիսի՞ ուսանելի փորձ կա այդ բնագավառում: Ինչպիսի՞ն է կոմունիստների մասնակցությունը այդ գործին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Շրջանի կոլեկտիվ և պետական տնտեսություններում արդեն վարձակալական կապալի է անցել ավելի քան երկու հազար մարդ կամ գյուղատնտեսությյան մեջ զբաղվածների 22,4 տոկոսը: Նրանց հատկացվել են 1800 հեկտար վարելահող, 1500 հեկտար խաղողի և պտղի այգի, 1000 գլուխ կով, 2000 գլուխ խոշոր եղջերավոր անասունի մատղաշ, 1000 գլուխ խոզ: Դրանք սկզբնական շրջանի համար փոքր թվեր չեն, եթե նկատի ունենանք, որ ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը, հիշեցնելով անցյալի փորձը, առաջարկեց խստիվ կերպով ղեկավարվել լենինյան սկզբունքով, նախ և առաջ կամավորության սկզբունքով: Ավելին. այդ գործում առաջադրանքներ չեն սահմանվել, ժամկետներ չեն որոշվել: Գլխավորն այն է, որ լրիվ դեմոկրատիա ապահովվի արտադրական հարաբերությունների ձև ընտրելիս:

Թե որքան արդյունավետ ու հեռանկարային է վարձակալական կապալը, կարելի է համոզվել մի քանի օրինակ թվարկելով: Նախորդ տարի այդ մեթոդով աշխատող Նորակերտի պետտնտեսության վեց բանվորներից բաղկացած օղակը, որը ղեկավարում է Գեղեցիկ Սիմոնյանը, յոթ հեկտար խաղողի այգուց 87-ի փոխարեն ստացավ 114 ցենտներ միջին բերք՝ տնտեսության միջինից 65 տոկոսով բարձր: Ավելի լավ արդյունքի հասան Արշալույսի կոլտնտեսությունում: Այստեղ երկու ընտանիք, կոմունիստ Աբել Վարդումյանի ղեկավարությամբ, վարձակալել էր 20 հեկտար պտղատու այգի և յուրաքանչյուր հեկտարից ստացավ 145 ցենտներ միջին բերք կամ մեկ աշխատողի հաշվով՝ 21.200 ռուբլու արտադրանք:

Հատկանշական է Ծաղկունքի կոլտնտեսության օրինակը: Այստեղ վարձակալական կապալը խոր արմատներ է ձգում: Այս տարի վարձակալներին է հատկացվել ողջ բանջարաբուծությունը: Նախնական հաշվումներով միայն այդ ճյուղից տնտեսությունն այս տարի կստանա 120 հազար ռուբլու օգուտ: Ա. Կարապետյանը ստեղծել է կոոպերատիվ և 30 տարի ժամանակով վարձակալել 10 հեկտար հողատարածություն: Այն մշակում են նրա ընտանիքի անդամները, քաղաքաբնակ եղբայրները, նրանց ուստրերն ու դուստրերը: Ա. Կարապետյանը հավաստիացնում է, որ հեկտարի հաշվով կարող է ստանալ 30—40 հազար ռուբլու եկամուտ, այսինքն՝ 5—6 անգամ ավելի, քան իր տնամերձից:

Եվս մեկ օրինակ: Գրիբոյեդովի կոլտնտեսության նախկին բրիգադավար, կոմունիստ Բորիս Թամարյանը, որն այժմ կուսբյուրոյի քարտուղարն է, վարձակալել է շրջանառությունից դուրս մնացած 15 հեկտար լքված հողամաս և 11 հեկտար ոչ բերքատու պտղատու այգի, ընտանիքով անեցնում են կարտոֆիլ, պոմիդոր, վարունգ և բանջարանոցային այլ մշակաբույսեր: Արդեն վաճառել է 15 տոննա կարտոֆիլ և 20 տոննա պոմիդոր: Այս տարի կվաճառվի ավելի քան 300 տոննա բանջարեղեն՝ պահածոների գործարանին և շուկայում, տնտեսությանը կտա 10.500 ռուբլու դրամական եկամուտ: Գնել է մեկական տրակտոր, բեռնատար ավտոմեքենա և սրսկիչ: Նրա նպատակն է հեկտարից ստանալ 300 ցենտներ կարտոֆիլ, 1000 ցենտներ պոմիդոր, 400 ցենտներ վարունգ և 150 ցենտներ պտուղ:

Այս օրինակները համոզիչ կերպով ապացուցում են, որ պետք է ստեղծել բոլոր պայմանները գյուղացուն հողի հետ ամուր կապելու, նրան հողի տեր դարձնելու համար:

Հատկանշական է, որ վարձակալական կապալի եղանակով աշխատող մարդկանց թվում որոշակի դեր են խաղում կոմունիստները: Նրանք կազմում են այդ եղանակով աշխատողների 11 տոկոսը, ընդ որում, այդպիսի 271 ստորաբաժանումներում գործում են 30 կուսակցական խմբեր, հաստատված են 34 կուսկազմակերպիչներ: Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները ընդհանրացնում են վարձակալական կապալի առաջավոր փորձը, պրոպագանդում այն, շրջանային թերթում նրանց մասին տպագրում տարբեր հոդվածներ:

**ՀԱՐՑ.— Իսկ, ասացեք, խնդրեմ, մարդիկ դյուրությա՞մբ են վարձակալում հողը, ինչպիսի՞ դժվարություններ կամ խոչընդոտներ կան այդ գործում:**

ՊԱՏԱՍԽԱՆ.—Շատերն են հոժարակամ վարձակալում հողը: Սակայն մարդկանց հետ զրույցները, նրանց իրական ապրելակերպին հաղորդակից լինելը մեկ այլ բան է թելադրում: Գյուղացու մեջ դեռևս առկա է վախը: Այդ գործին լրջորեն խանգարում են առանձին արտադրամիջոցների պակասը, նյութատեխնիկական ոչ հստակ մատակարարումը: Ինչու՞ չէ, նաև գյուղացուն շատ բաներից և, առաջին հերթին, հենց իր կենցաղից զրկելը:

Իրավացի լինենք՝ գյուղացին այսօր ապահովու՞մ է իր իսկ պահանջը, որ բավարարի նաև քաղաքին: Իհարկե, ո՛չ: Նրա սեղանից վաղուց անհետացել են թոնրի լավաշը, խնոցու կարագը, հորած պանիրն ու շորը, ղավուրման, սեփական չիրն ու չամիչը, օղին ու կարմիր գինին:

Տարիներով խորացող տնտեսական մեխանիզմի վարչահրամայական քարացած ձևը հասցրել է նրան, որ գյուղացին չի օգտվում ու զրկվել է իր արտադրած ամեն տեսակի բնամթերքից և կապվել սոսկ աշխատավարձի հետ, ինչպես քաղաքաբնակը, այն տարբերությամբ, որ վերջինս գործարանում տալիս է արդյունաբերական, իսկ գյուղացին՝ դաշտում գյուղատնտեսական արտադրանք:

Թե ու՞ր է գնում այդ մթերքը և ինչ գներով՝ ոչ մի բանով պայմանավորված չէ գյուղացու ցանկությամբ: Վերևից պարտադրվող պլաններ, արտադրական քարացած նորմաներ, պետգնման ծիծաղելի գներ...

Թե ինչ ծախսումներով ու ինքնարժեքով է գյուղացին մթերքը արտադրում, ոչ ոքի չի հետաքրքրում: Այն դեպքում, երբ պոմիդորը, վարունգը, բադրիջանը և գյուղատնտեսական մյուս մթերքները շուկայում վաճառվում են կիլոգրամը 1-2 ռուբլով, պահածոների գործարանը տնտեսությունից գնում է 7-27 կոպեկով: Ինչու՞ գոնե ինչ-որ չափով գները չեն բարձրացվում:

Պատասխանը քաղաքական է՝ պետությունը միջոցներ չունի: Պետությունը չունի, թող արդյունաբերությունը, գործարանը վճարեն: Այս բանը չի արվում, որովհետև կբարձրանան մարինադների, կոմպոտների, հյութերի և մյուս պահածոների գները, իսկ դրանից էլ, բնականաբար, կդժգոհի քաղաքի բանվոր դասակարգը: Այնինչ տարեցտարի թանկացվում են գյուղատնտեսական մեքենաների ու մեխանիզմների, բոլոր տեսակի շինանյութերի, պարարտանյութերի, թունաքիմիկատների գները, որոնք, վերջին հաշվով, խփում են գյուղացու գրպանին, գցում նրա շահագրգռվածությունը: Եվ, թերևս, դա է նրա տագնապի պատճառը, համարձակության և հեռանկարի նկատմամբ վստահության պակասը: Գաղտնիք չէ, որ այսօր գյուղացին ապրուստի

հիմնական աղբյուրը համարում է իր սեփական տնամերձ հողամասը, այլ ոչ թե
հանրային արտադրությունը, որը դարձել է ապրուստի օժանդակ միջոց:

**ՀԱՐՑ.— Ասածը գուցե հիմնավորե՞ք կոնկրետ փաստերով:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Խնդրեմ, խոսեմ փաստերով: Շրջանի գյուղական բնակավայրերի
16 հազար ընտանիքներ օգտագործում են 1600 հեկտար տնամերձ հողամաս՝ յուրա-
քանչյուրը միջին հաշվով 1000 քմ: Հաշվարկները ցույց են տալիս, որ այդ 1600 հեկ-
տարից այսպես կոչված մասնավորն ստանում է այնքան բերք, որքան տնտեսու-
թյունները՝ նույնպիսի մշակաբույսերով զբաղեցրած 6500 հեկտար հողատարածությու-
նից (այսինքն՝ տարեկան շուրջ 115 հազար տոննա): Եթե սրան ավելացնում ենք
այն, որ նա աճեցրած բերքը տարբեր սեզոններին շուկայում շուրջ տասը անգամ
թանկ է վաճառում, քան պետությունը գնում է տնտեսությունից, ստացվում է, որ
մասնավոր սեկտորում մեկ հեկտարի բերքատվությունը հանրայինից բարձր է չորս
անգամ, իսկ եկամտաբերությունը՝ 26 անգամ (շրջանի հանրային սեկտորում այն
կազմում է 3000 ռուբլի, իսկ մասնավոր սեկտորում՝ 80 հազար ռուբլի): Իր 1000 քմ
տնամերձ հողամասից գյուղական յուրաքանչյուր ընտանիք տարեկան միջին հաշվով
ստանում է 8000 ռուբլի, իսկ կոլտնտեսությունում աշխատող նրա ընտանիքի անդա-
մը՝ 2000 ռուբլի (հանրային արտադրության մեջ, անկախ բնակավայրի մեծությունից,
միջին հաշվով ընտանիքից մասնակցում է մեկ հոգի և դա բավարարում է արտադ-
րության պահանջները):

Իմ թերահավատությունը այն բանի մեջ է, որ մենք համարձակություն չունենք, և
վերակառուցումը դեռևս այնքան վստահություն չի տվել՝ անկախ գործելու, գյուղա-
ցուն իսկապես հողի տերը դարձնելու համար: Պետք է փշրել այդ կապանքները: Ար-
ված վերլուծությունը ցույց է տալիս, որ հողի նման օգտագործման դեպքում, առանց
նոր բան ավելացնելու, հենց եղած վիճակով գյուղատնտեսական մթերքների արտադ-
րությունը երկրում կավելանա 3—4 անգամ, իսկ դրանց առատությունը, անշուշտ,
կանդրադառնա շուկայական գների իջեցման վրա:

Պետք է վերջապես մեր լեքսիկոնից հանենք «մասնավոր սեկտոր» տերմինը (հատ-
կապես վիճակագրական հաշվետվություններից): Այդ մասնավորը մեր նույն կոլտըն-
տեսականն է, գյուղացին և չպետք է վախենալ, թե նա կարող է հարստանալ և կու-
լակ դառնալ: Նա ուրիշին չի հարստահարում, չի շահագործում, որ կուլակ կոչվի:
Նա ինքն է քրտինք թափում և բարիք ստեղծում, ու թող հալալ լինի նրան, վաստա-
կի, որքան կարող է: Փորձիր այսօր գտնել այն մարդուն, որը պոմիդորի պետգնման
գինը յոթ կոպեկ է որոշել, կամ բոլոր այն մարդկանց, ովքեր գտնում են, որ դա
ճիշտ է, ուղարկիր նրանց գյուղ, թող մեկ տարի պոմիդոր մշակեն, արտադրեն: Իրենց
սխալի համար կամաչեն նայել մարդկանց, կամաչեն դատարկ ձեռքով տուն մտնե-
լուց:

Այս ամբողջ ասածից եզրահանգումը այն է, որ վարձակալական և կոլեկտիվ կա-
պալի եղած ձևերը թերի են և ցանկացած արդյունքը չեն տա: Այդպիսի կիսամիջոց-
ներով և ընդունված ու չիրականացվող որոշումներով մենք միայն նորից ժամանակ
ենք կորցնում: Գտնում եմ, որ գյուղատնտեսության մեջ պետք է վերացվեն բոլոր
արգելքներն ու խոչընդոտները, առանձնապես պետական պլաններն ու աշխատանքի
վճարման ձևերը: Հողը վարձակալությամբ երկարաժամկետ կամ ցմահ պետք է բա-
ժանվի անհատներին և ընտանիքներին: Ազատ շրջանառու միջոցների ստեղծման
և գյուղի սոցիալական զարգացման նպատակով կսահմանվի հողային հարկ (հեկ-
տարից 3.000 ռուբլի), որը գյուղացին սիրով կմուծի: Մնացած բոլոր հարցերում՝ թե
ինչ կցանի գյուղացին, ում կվաճառի կամ ինչ գնով կվաճառի, շուկան պետք է թե-
լադրի և կարգավորի, ոչ մեկը չպետք է պարտադրի: Պետությանը կամ գործարա-
նին վարու՞նգ է պետք, թող պայմանագիր կնքի գյուղացու հետ ու տանի, և ոչ թե
պարտադրենք, թե այսքան կոպեկով տար հանձնիր: Ամենակարևորը՝ գյուղացուն չը-
պետք է խաբել: Այս պայմաններում միայն կվերականգնվի նրա հավատը: Գյուղա-
ցին մատերիալիստ է, ասում էր Լենինը, նա մինչև իր կաշու վրա չի զգում, չի
հավատում: Անհրաժեշտ կլինի ցրել վարչակառավարչական ողջ ապարատը: Դիրեկ-
տորի կամ նախագահի փոխարեն հարկ կլինի պահել մեկ ֆերմեր՝ 2—3 հաշվային
աշխատողներով: Շրջանի կուսակցական, խորհրդային մարմինները դիմել են ՀԿԿ
Կենտկոմին և հանրապետության կառավարությանը՝ թույլատրել շրջանում բուսաբու-
ծության բնագավառում ընթացիկ տարում կիրառել այդ փորձը, մանավանդ, եթե
հաշվի առնենք, որ հանրապետության մասշտաբով միայն Էջմիածնում է ստեղծված
ագրոկոմբինատ, որը լրիվ կարող է տնօրինել այդ հարցերը:



Մեր վերլուծությամբ շրջանը տարեկան կարտադրի կես միլիոն տոննա գյուղատըն-տեսական զանազան մթերքներ: Հարկային գանձումներից բնակավայրերի սոցիալական զարգացման նպատակով տարեկան հատկացումները ներկայիս երեք միլիոն ռուբլու դիմաց կկազմի յոթ միլիոն ռուբլի: Շրջանը տարեկան կունենա 15 մլն ռուբլու շրջանառու ազատ միջոց:

**ՀԱՐՑ.— Իսկ ի՞նչ կասեք անասնապահությունում վարձակալական կապալը ներդնելու առնչությամբ:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Անասնապահության բնագավառում մենք այլ կերպ ենք մտածում: Այստեղ հաշվի ենք առնում երկու կարևոր հանգամանք: Առաջինը՝ շրջանը անասնապահության զարգացման նպատակով (թե՛ հանրային սեկտորում, թե՛ մասնավոր) չունի հողային ազատ տարածություններ, արոտավայրեր, դրանք բոլորը զբաղեցված են գյուղատնտեսական մշակաբույսերով, և անասնապահությունը շրջանում զարգանում է շուրջտարյա մսուրային պահվածքի պայմաններում:

Երկրորդ՝ ինձ թվում է, դա վերաբերում է ողջ Արարատյան դաշտին: Անասնապահության անցյալի փորձը վկայակոչել՝ թե մարդիկ այսքան անասուն էին պահում, հիմա ինչու՞ չեն պահում, միանգամայն սխալ կլինի, որովհետև բնակավայրերի և տընամերձ հողամասերի հատակագծերը այնպես են կազմված, որ բացառում են գյուղացու ներկայիս մաքուր, հարմարավետ բնակելի տների կողքին գոմի կառուցումը:

Այստեղ, ընդհակառակը, փրկությունը անասնապահությունը խիստ արդյունաբերական հիմքերի վրա դնելու մեջ է, այդ եղանակով զարգացնելը: Գոմերը առանձին ընտանիքներին վարձակալման հանձնելու փորձը ցույց է տալիս, որ որքան դրանք փոքրը լինեն, այնքան արդյունավետությունը մեծ կլինի և պահանջը՝ շատ: Այդ նպատակով այս տարի շրջանում կկառուցվեն լրիվ մեքենայացված 17 փոքր ֆերմաներ՝ յուրաքանչյուրը 50 գլուխ կովի համար: Գոմի արժեքը 60 հազար ռուբլի է, կովերի հետ միասին փոքր ֆերմայի արժեքը կկազմի 125 հազար ռուբլի: Ոչ միայն առանձին ընտանիքներ ցանկություն են հայտնում աշխատել ֆերմայում, այլև ուղղակի վարկեր են վերցնում և ֆերման ամբողջապես գնում: Մեկուկես տարում ծախսերը հատուցվում են, և ֆերմերն սկսում է աշխատել սեփականատիրական իրավունքով:

Դրա շնորհիվ շրջանը պետվաճառքի պլանից ավելի կարտադրի հինգ հազար տոննա կաթ: Այժմ գյուղի յուրաքանչյուր բնակիչ ամսական ստանում է 280 գրամ կարագ, որն առաջացնում է նրա իրավացի և խիստ դժգոհությունը: Եվ քանի որ նրան չենք կարող պարտադրել անասուն պահել, ճիշտ կլիներ, եթե թույլատրվեր գյուղացու քրտինքով պլանից ավելի ստացված կաթը վերամշակելու շրջանի պանրի գործարանում և արտադրված կաթնամթերքը վաճառելու տեղում: Այս կարգով գյուղական ընտանիքները լրացուցիչ կստանան որոշակի քանակությամբ կաթնամթերք:

**ՀԱՐՑ.— Իսկ ի՞նչ կասեք Էջմիածին քաղաքի բնակչությանը գյուղատնտեսական մթերքներով ապահովելու մասին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Նույն ձևի քաղաքականություն է իրականացվում Էջմիածին քաղաքի բանվոր -ծառայողներին գյուղատնտեսական մթերքներով ապահովելու առընչությամբ: Բոլոր խոշոր գործարաններին հատկացվել են հողատարածություններ՝ օժանդակ տնտեսություններ ստեղծելու, անասնապահական փոքր ֆերմաներ և ջերմատներ կառուցելու համար: Այսպես, 1000 բանվոր ունեցող գործարանը 50 գլուխ կով պահելու և 2000 քմ ջերմոց ունենալու պայմաններում յուրաքանչյուր բանվորին ամսական կարող է տալ 400 գրամ կարագ և երեք կգ պոմիդոր ու վարունգ: Այս խնդրի լուծմանը մենք կհասնենք եկող տարվանից:

Ժողովրդական իմաստությունն ասում է՝ բարիք ստեղծելու համար մարդը պետք է ծածկ ունենա գլխին: Քաղաքի բանվոր- ծառայողների գոյամիջոցներն ու կենսապայմանները բարելավելու նպատակով այս տարի 400 ընտանիքի հողամաս է հատկացվել անհատական բնակելի տներ կառուցելու համար (մինչև տարեվերջ կհատկացվի ևս 300 ընտանիքի), իսկ 3.000 ընտանիքներ հողամասեր են ստացել և ընդգրկվել կոլեկտիվ այգեգործության մեջ:

Օգտվելով առիթից՝ կուզեի խոսել պարենային պրոբլեմին առնչվող ևս մի հարցի մասին: Շրջանի տնտեսությունների եկամտաբերությունը բարձրացնելու և շուկայական գների վրա ազդելու նպատակով, արդեն կառուցվում և մինչև տարեվերջ կգործարկվեն 500 տոննա սնկի արտադրության և 3.000 տոննա խաղողի ու պտղի պահպանության հզորություններ: Ինչու՞ մասնավորը իր բերքը կարող է պահպանել և ձմռանը թանկ գներով վաճառել, իսկ տնտեսությունները չեն կարող, ինչ է, նրանք տնտեսագիտական հաշվարկ անել չգիտե՞ն, թե՞ չեն ուզում իրենց կոլտնտեսական-

ների մի քիչ ավելի վճարել: Միայն այս միջոցառման իրականացումը շրջանին կտա 10 մլն ռուբլի կամ գյուղատնտեսությունից տարեկան ստացվող զուտ եկամուտը կաճի 20 տոկոսով:

**ՀԱՐՑ.—Էջմիածնի շրջանը քաղաքամերձ է: Ասացեք, խնդրեմ, ինչպե՞ս եք կազմակերպում մայրաքաղաքին թարմ բանջարեղենով և պտղով սպասարկելու գործը:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Միանգամայն տեղին հարց է: ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հարությունյանը, լինելով մեր շրջանում, լրացուցիչ պահանջ առաջադրեց կուսշրջկոմին և շրջխորհրդի գործկոմին՝ Երևան քաղաքի բնակչությանը բանջարեղենի մատակարարումը բարելավելու առնչությամբ: Հանրապետությունը տարեկան արտադրում է 280 հազար տոննա բանջարեղեն, որի 25 տոկոսը կամ 70 հազար տոննան բաժին է ընկնում մեր շրջանին: Եվ տրամաբանական է, որ մայրաքաղաքին մատակարարվող բանջարեղենի մեկ քառորդը մենք պիտի ապահովենք: Այստեղից էլ՝ եթե մենք նախկինում Երևան քաղաքին տարեկան վաճառել ենք 12 հազար տոննա խաղող, պտուղ-բանջարեղեն, ապա այս տարի նախատեսել էինք 27 հազար տոննա: Կազմել էինք համապատասխան գրաֆիկ-պլան, որի կատարմանը հսկում էր կուսշրջկոմը: Ամեն ինչ արվում էր անխափան մատակարարումը ապահովելու համար: Շաբաթ և կիրակի օրերին էլ Օրջոնիկիձեի և Լենինյան շրջաններում կազմակերպում էինք պտուղ-բանջարեղենի տոնավաճառ: Սա արդեն լրացուցիչ վաճառք էր: Ի դեպ, մայրաքաղաքի բնակչությունը մեր շրջանից գոհ է, այդ մասին խոսվել է նաև Երևան քաղաքի մատակարարման շտաբի նիստում:

**ՀԱՐՑ.—Հասկանալի է, կուսակցական-կազմակերպական գործունեությունը սերտորեն շաղկապված է տնտեսականի հետ: Նոր խնդիրները նորովի աշխատել են պահանջում: Փաստ է նաև, որ այժմ կուսակցությունը խնդիր է դնում սահմանազատել կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների աշխատանքը, կուսակցական ապարատը տնտեսական հարցերով պիտի զբաղվի տեղերում գործող կոմունիստների միջոցով: Ի՞նչ կասեի՞ք այդ հույժ կարևոր հարցերի առթիվ: Ո՞րն է այստեղ նորը:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Երբեք ժամանակն այնպես պահանջկոտ չի եղել և կուսակցական կոմիտեներից ու ղեկավարներից այսքան լարված և շատ ջանքեր չեն պահանջվել, ինչպես հիմա: Մենք աշխատում ենք դեմոկրատիայի, բացախոսության, միտինգներով, գործադուլներով ուղեկցվող նոր իրադրության պայմաններում: Ամենուրեք, լինի աշխատավորական կոլեկտիվ թե բնակավայր, իրեն զգացնել է տալիս վերակառուցման հաղթանակը հուսադրող գլխավոր ուժը, մարդկանց նոր մտածողությունը, հասարակական մտքի ազատ արտահայտումն ու հիմնավոր գիտակցական պահանջների առաջադրումը: Աննախադեպ երկրաշարժը, գաղթը, Հայոց համազգային շարժման վերածված ղարաբաղյան արդար ու ազնիվ շարժումը, հին ու նոր եղեռնները իրենց դրոշմն են դրել մարդկանց դատողությունների, վարվելակերպի և պահանջների վրա:

Ստեղծված արտասովոր պայմանները և ժամանակի առանձնահատկությունները, հասկանալի է, իրենց արտահայտությունը պետք է գտնեն նաև կուսակցական աշխատանքում: Եվ, բնականաբար, դրանք, ըստ էության, թելադրում են միանգամայն նոր մոտեցում: Չմտար ժողովրդի մեջ, կարեկից չեղար նրա հոգսերին, քաղաքական, սոցիալ-տնտեսական պահանջներին, ուրեմն նա քեզ չի ճանաչի, դու նրա ղեկավարը չես: Այսօրվա կուսշրջկոմի առաջին քարտուղարը պետք է ապահովի նաև, այսպես ասած, ժողովրդական կոմիտեի առաջին քարտուղարի հեղինակությունը: Միայն կոմունիստների ղեկավար լինելը քիչ է: Այս հարցը ավելի հրատապ է դառնում, քանի որ մեր կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվների խորհուրդները չեն վերակառուցվում, հին ոճից չեն ձերբազատվում, պասիվ են ու իներտ, չեն գործում նոր պահանջների ոգով և արթնացած, վերափոխված ժողովուրդը իր բազմաթիվ հարցերով մնում է առանց պատասխանի, առանց ղեկավարի:

Մեր աշխատանքի բացն այն է, որ երկար տարիներ տնտեսությունների, հիմնարկձեռնարկությունների ղեկավարները, սկզբնական կուսկազմակերպությունները, ուշադրությունը կենտրոնացնելով միայն արտադրատնտեսական ցուցանիշների վրա, հեռու են մնացել դրանք ապահովող մարդուն, բանվորին ու կոլտնտեսականին հուզող բոլոր տեսակի հարցերից: Այդ իսկ պատճառով նրանցից շատերը հիմա էլ չեն ուզում մտնել գործի մեջ, և անվստահություն ու կտրվածություն է առաջացել կոլեկտիվների ու կոմունիստների միջև: Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է



ժամանակին լսել ու կատարել այդ պահանջները, կիսվել ժողովրդի հետ, նրան ուղղություն տալ, հաղորդակից դարձնել պրոբլեմների լուծման ընթացքին:

Որպես ստրատեգիական կուրս կուսակցությունը խնդիր է դրել, որպեսզի կուսակցական մարմինները չփոխարինեն խորհրդային, տնտեսական կազմակերպություններին, չմիջամտեն նրանց գործերին, այլ զբաղվեն գաղափարախոսական, կազմակերպական աշխատանքով և ապահովեն միայն քաղաքական ղեկավարություն: Դա ճիշտ և օրինաչափ է: Սակայն ես գտնում եմ, և մեր գործունեության փորձը համոզում է, որ ներկա պայմաններում և՛ քաղաքական, և՛ սոցիալ-տնտեսական զարգացման հարցերի ողջ կոմպլեքսը ամբողջությամբ իրենց ձեռքը պետք է վերցնեն կուսակցության շրջանային կոմիտեները, մինչև որ խորհրդային և տնտեսական մարմիններն ընկնեն հունի մեջ, զբաղվեն իրենց վերապահվող գործերով, ամեն մի հասարակ հարցի լուծումը չապավինեն կուսշրջկոմներին: Ցավոք, այժմ ոչ մեկին չի հետաքրքրում, թե այդ հարցերը ովքեր պետք է լուծեն և ինչու ժամանակին չեն լուծել: Այժմ մենք ենք գործի տերը, մեր ուսերին է բաժին ընկել վերակառուցման իրականացումը, և մենք պետք է պատասխան տանք: Եթե ոչ, պահանջը միանշանակ է՝ տեղդ զիջի՛ր:

Այդ առումով էլ կուսշրջկոմը գլխավոր ուշադրությունը կենտրոնացնում է կոմունիստների ակտիվության բարձրացման, խորհրդային, տնտեսական բնագավառներում աշխատող կոմունիստների գործունեությունը ավելի արդյունավետ և նպատակամետ դարձնելու վրա: Ընդ որում, այն, ինչ արվում է կուսկազմակերպությունում, պետք է իրականացվի հրապարակայնորեն, որպեսզի աշխատավորները պարզորոշ տեսնեն, որ վերակառուցումը առաջ է քաշել կուսակցությունը, և նա էլ այն իրագործողների ավանգարդում է:

Շրջկոմի բյուրոյի անդամները, շրջանային համապատասխան ծառայությունների ղեկավարների հետ, այցելել են շրջանի բոլոր խոշոր կոլեկտիվները, ներկայացրել շրջկոմի աշխատանքի պլատֆորմը, լսել նրանց պահանջները: Երկխոսությունը հնարավորություն է ընձեռում վերհանելու և հիմնականում շրջկոմի անդամների ու ժողովրդական դեպուտատների միջոցով լուծելու մեծ թվով սոցիալական հարցեր: Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները այդ գործը մշտապես վերահսկել են՝ պարբերաբար անդրադառնալով մշակված միջոցառումների իրականացման ընթացքին և այդ մասին իրազեկ պահելով կոլեկտիվներին:

Նման հանդիպումների և արտոնված միտինգների միջոցով երկխոսություններ են կազմակերպվել շրջանի մասշտաբով ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների՝ արդյունաբերության, շինարարության, իրավապահ մարմինների, առևտրի, առողջապահության, տրանսպորտի աշխատողների հետ: Անցկացվում են բաց դռների օրեր, երբ քաղաքացիները տարբեր հարցերով լինում են շրջանային ղեկավար աշխատողների մոտ: Ամեն ամիս անցկացվում է ինֆորմացիոն կոնֆերանս, որտեղ շրջկոմի քարտուղարները և մյուս ղեկավար աշխատողներն իրենց կատարածի մասին հանդես են գալիս հաշվետվություններով: Երբեմն դրանց շուրջ ծավալվում է մտքերի փոխանակություն, անկեղծ երկխոսություն, քննության են առնվում այս կամ այն պրոբլեմը, չլուծված հարցը կամ առաջարկությունը:

Պրակտիկա է դարձել կուսակցական դռնբաց ժողովների հրավիրումը՝ կոլեկտիվի անդամների մասնակցությամբ: Կարևորն այն է, որ արդեն նոր մոտեցում է մշակվում, բարձրացվող հարցերը կոնկրետ ընթացք են ունենում, կոմունիստներն ու ղեկավարները հաշվետու, պատասխանատու են դառնում կոլեկտիվի բախտի համար: Աշխատանքի նման ոճը բնութագրական է դարձել կուսշրջկոմի, նրա ընտրովի մարմնի և ապարատի աշխատողների համար: Այն աստիճանաբար դառնում է նաև տարբեր մակարդակների ղեկավար կադրերի սեփականությունը:

**ՀԱՐՑ.—Հայտնի ճշմարտություն է՝ ոչ մի փոքր ու մեծ միջոցառում հնարավոր չէ իրականացնել, ոչ մի նորույթ հնարավոր չէ ներդնել ու արմատավորել առանց գործի գլուխ կանգնած բանիմաց կադրերի: Ի՞նչ կասեիք այդ մասին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.—Միանգամայն ճիշտ է: Մենք այլ կերպ չենք էլ մտածում: Կուսշրջկոմը վերջին ժամանակներս զգալիորեն ակտիվացրել է ղեկավար և միջին օղակի կադրերի ընտրության, դաստիարակման և տեղաբաշխման նպատակով տարվող աշխատանքը: Դեմոկրատիայի և հրապարակայնության պայմաններում նրանց դերը հետզհետե աճում է և հիմնականում հենց նրանցով է պայմանավորված վերակառուցման հաջողությունը: Աշխատավորական կոլեկտիվները տեղին են դատապարտում այն ղեկավարներին, ովքեր դժվարությամբ են հաղթահարում հին մտածողու-

## Տնտեսական մեխանիզմ. պրոբլեմներ և հեռանկարներ

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՎԱՐՁ. ԱՃԻ ՀԱՄԱՄԱՍՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ՅՈՒ. ՍՈՒՎԱՐՅԱՆ

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ վերակառուցման, վարչահրամայական մեթոդները տնտեսականով փոխարինելու, տնտեսավարման մեխանիզմի նոր ամբողջական կոնցեպցիայի մշակման պրոցեսում վերաարժեքավորվում են տեսության և պրակտիկայի շատ դրույթներ, հատկապես նրանք, որոնք կրում են պահպանողականության կնիքը, դոգմատիկ են, չեն համապատասխանում ռեալ կյանքի իրողություններին։ Սրանում ոչ մի մերժելի բան չկա։ Ընդհակառակը, դա նպաստում է կառավարման տեսության և մեթոդաբանության դիալեկտիկական զարգացմանը, նրա լծակների զինանոցի հարստացմանը, տնտեսավարման կատարելագործմանը։

Վերջին ժամանակներս լայնորեն քննարկվում են աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի համամասնության պրոբլեմը, դրա մեթոդաբանությունն ու պրակտիկան։ Նույնիսկ կարծիք է արտահայտվում, թե միջին աշխատավարձի ավելացման համեմատ աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճը պարտադիր չէ։ Այս մասին լուրջ խոսակցություն ծավալվեց նաև ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարում և Գերագույն խորհրդի նստաշրջաններում։

Ժողովրդատնտեսական այդ համամասնությունը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության համակարգում ունի կարևոր սոցիալ-տնտեսական նշանակություն. մասնավորապես, այն շաղկապում է աշխատանքի արդյունավետությունը դրա խթանման հետ, ազդում է ազգային եկամտի մեջ սպառման և կուտակման ֆոնդերի, ինչպես նաև բնակչության դրամական եկամուտների և շրջանառության մեջ գտնվող ապրանքային պաշարների միջև համամասնությունների ձևավորման վրա, հսկողություն է իրականացնում ռուբլու գնողունակության կայունության նկատմամբ։ Բայցևայնպես, մեր էկոնոմիկայում դիտվում են այնպիսի բացասական երևույթներ, ինչպես ինֆլյացիան, ռուբլու գնողունակության անկումը, բնակչության գնողունակության և սպառման առարկաների ապրանքային ֆոնդերի միջև համամասնության խախտումը։ Այս երևույթների ֆոնի վրա ակնհայտ է աշխատանքի արտադրողականության աճի և աշխատավարձի բարձրացման միջև ճիշտ հարաբերակցության ապահովման միջոցների անբավարար արդյունավետությունը։

Վերջին շրջանում այդ հարաբերակցության խախտումներ են տեղի ունենում ինչպես երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում։ ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. ապրիլյան պլենումում Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ ձևախեղվել է կարևորագույն տնտեսագիտական սկզբունքը, աշխատավարձի աճի համեմատ աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճի սկզբունքը։

---

ՍՈՒՎԱՐՅԱՆ ՅՈՒՐԻ ՄԻՔԱՅԵԼԻ — Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի պրոռեկտոր, տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր։



1988 թ. երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատավարձի աճը կազմեց 7 տոկոս, աշխատանքի արտադրողականությանը՝ 5,1, իսկ 1986—1988 թթ.՝ տարեկան միջին հաշվով համապատասխանաբար 4,5 և 3,8 տոկոս։ Այս միտումը շարունակվում էր նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակում. ԽՍՀՄ վիճպետկոմի տվյալներով, հասարակական աշխատանքի արտադրողականության 2,8 տոկոս աճի դեպքում բանվորների և ծառայողների միջին ամսական աշխատավարձն ավելացել է 10 տոկոսով։

Հարկ է նշել, որ 1988—1989 թթ. աշխատավարձի դինամիկայի վրա ազդել են դրա բարձրացման նպատակով կենտրոնացված միջոցառումների իրականացումը, ձեռնարկությունների անցումը աշխատանքի վարձատրության նոր պայմանների՝ ի հաշիվ այդ նպատակների համար նախկինում կուտակված միջոցների, վճարումների ավելացումը նյութական խրախուսման ֆոնդից։

Ըստ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի, միջին աշխատավարձի աճը գերազանցել է աշխատանքի արտադրողականության աճին. տասնմեկերորդ հնգամյակում՝ գյուղատնտեսության մեջ (1,81), շինարարությունում (1,26). 1987 թ. գյուղատնտեսության մեջ (1,16). 1988 թվականին և 1989 թ. առաջին կիսամյակում՝ արդյունաբերության մեջ (1,38 և 1,8), շինարարությունում (1,1 և 2,1), գյուղատնտեսության մեջ (1,3)։

Ընթացիկ հնգամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման համեմատությամբ աշխատավարձի առաջանցիկ աճ է դիտվել նաև Հայկական ԽՍՀ-ում։ 1981—1985 թթ. հասարակական աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս աճին ընկնում էր բանվորների և ծառայողների միջին աշխատավարձի, ինչպես նաև բնակչության ռեալ եկամուտների 0,54 տոկոսի աճ, իսկ 1986—1988 թթ.՝ համապատասխանաբար 2,7 և 2,2 տոկոս (տե՛ս Армения в цифрах в 1988 г., Е., 1989 г., стр. 35)։

Ընդ որում, տարակուսանք է հարուցում այն, որ 1986—1988 թթ. համար հարաբերակցության խախտումը «նախատեսված էր» արդեն հնգամյա պլանի հաշվարկներում. հասարակական աշխատանքի արտադրողականության 7,4 տոկոս աճի պայմաններում պլանավորվել է բանվորների և ծառայողների միջին աշխատավարձի 11,5 տոկոս, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտների՝ 9,3 տոկոսի աճ (տե՛ս նույն տեղը, էջ 9—10)։

Միջին աշխատավարձի աճը գերազանցել է արտադրողականության աճին 1981—1985 և 1987 թթ.՝ գյուղատնտեսությունում (4,31 և 4,21), 1988 թ.՝ արդյունաբերությունում (1,5)։ 1989 թ. առաջին կիսամյակում հանրապետության արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության 6,9 տոկոսային կետով նվազման դեպքում միջին աշխատավարձը բարձրացել է 4,5 տոկոսով։ Այս ցուցանիշի աճի տեմպերի անկումը մասամբ պայմանավորված է տարերային աղետի հետևանքներով։ Հայաստանի վիճպետկոմի տվյալներով, երկրաշարժի պատճառով 1988 թ. ազգային եկամտի աճը դանդաղել էր 1,7 տոկոսով։ Այդ նույն պատճառով զգալիորեն դանդաղել է աշխատանքի արտադրողականության աճի տեմպը. 1988 թ. դրա հնարավոր բարձրացումը, չհաշված երկրաշարժի պատճառած կորուստները կկազմեր 102 տոկոս, բայց, փաստորեն, նախորդ տարվա համեմատությամբ մակարդակը իջավ մինչև 99,9 տոկոսի։ Արտադրանքի թողարկման ծավալի և աշխատանքի արտադրողականության աճի փաստական տեմպերը ցածր էին 1,5—2,6 կետով։ Իսկ եթե համեմատենք աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի տեմպերը առանց երկրաշարժի հետևանքները հաշվի առնելու, ապա 1988 թ. հարաբերակցության գործակիցը հավասար կլիներ 0,7-ի, այսինքն՝ առաջինը կաճեր երկրորդից ավելի արագ, ընդ որում, լրիվ տնտհաշվարկի անցած ձեռնարկությունների համար՝ 0,55-ի, մյուսների համար՝ 1,47-ի։

Երբեմն ֆինանսական դժվարությունների, ինչպես նաև հարաբերակցության խախտման պատճառ են համարում աշխատավարձի արագ աճը։ Սակայն գլխավոր պատճառը դա չէ, մանավանդ, եթե նկատի առնենք, որ Ն. Պ. Շմելյովի տվյալներով, Խորհրդային Միությունում աշխատավարձին բաժին է ընկնում ազգային համախառն արդյունքի մոտ 37—38 տոկոսը, մինչդեռ արևմտյան ինդուստրիալ աշխարհում այդ ցուցանիշը հավասար է 70 և ավելի

տոկոսի։ ԽՍՀՄ վիճակետկոմի տվյալներով, բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը 1940—1960 թթ. տարեկան աճել է 4,6 տոկոսով, 1960—1970 թթ.՝ 4,3, 1970—1980 թթ.՝ 3,3, 1980—1988 թթ.՝ 3,2 տոկոսով (տե՛ս Народное хозяйство СССР в 1987 г., стр. 390)։

Հայկական ԽՍՀ-ում նույնպես այս ցուցանիշի դինամիկան նվազման միտում է դրսևորում. 4,1, 4,9, 2,9, 2,1։ Տվյալ միտումը բնորոշ է նաև բնակչության ռեալ եկամուտների դինամիկային։

Այսպիսով, դիտարկվող ամբողջ ժամանակաշրջանում միջին աշխատավարձի աճի տեմպերի նվազումը ակնհայտ է, և միայն տասներկուերորդ հնգամյակի տարիներին, առանձնապես 1988—1989 թթ., դրանք փոքր-ինչ բարձրացան, որի պատճառներն արդեն նշվել են։ Սակայն նյութական խրախուսման համակարգի լուրջ թերությունների պատճառով այդ բարձրացումը արտադրության վերջնական արդյունքների զգալի բարելավման, աշխատանքի արտադրողականության տեմպերի նշանակալի աճի չհանգեցրեց։ Հնարավորություն չստեղծվեց բավարարելու բնակչության աճած պահանջմունքները սպառման առարկաների նկատմամբ, դրանով իսկ խորացավ անհամապատասխանությունը բնակչության գնողունակ պահանջարկի և դրա ապրանքային ապահովման միջև, հիմնականում չբավարարված, հետաձգված պահանջարկի պատճառով երկրի խնայբանկի հաստատություններում ավելացան բնակչության ավանդները, որոնց ծավալները, մասնագետների գնահատումներով, կազմում են 79 միլիարդ ռուբլուց ոչ պակաս։

Միայն 1989 թ. առաջին կիսամյակում բնակչության դրամական եկամուտների աճի տեմպը 1,4 անգամ գերազանցում էր նրանց կողմից ապրանքների գնման և ծառայությունների դիմաց վճարումների համար կատարված ծախսերի աճի տեմպին, իսկ ԽՍՀՄ խնայբանկի հաստատություններում ավանդներն ավելացել են 17,7 մլրդ ռուբլով։ Համեմատության համար նշենք, որ տասնմեկերորդ հնգամյակում դրանք տարեկան ավելացել են 12,8, 1986 թ.՝ 22,0, 1987 թ.՝ 24,1 մլրդ ռուբլով։ Այս ամենը հանգեցնում է բնակչության դրամական եկամուտների արժեզրկման և աշխատանքի վարձատրության խթանիչ դերի նվազման։ Նպատակ չդնելով մանրամասն վերլուծել առանձին տարիների և տարբեր ճյուղերում աշխատանքի արտադրողականության ու աշխատավարձի աճի համամասնության խախտման պատճառները, նշենք միայն դրանցից հիմնականները։ Գլխավորը աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի նվազումն է՝ աշխատանքի տեխնիկական զինվածության անբավարար մակարդակի, արտադրության նյութատեխնիկական մատակարարման խախտումների կամ դրա անհամաչափության, արտադրության և աշխատանքի կազմակերպման թերությունների պատճառով։

Բավական է նշել, որ հասարակական աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը տասներկուերորդ հնգամյակի տարիներին 2,6—3 անգամ ավելի ցածր էին, քան տասնմեկերորդ և տասներորդ հնգամյակներում։ Ցածր է այս գործոնի բաժինը նաև հանրապետության ազգային եկամտի աճի մեջ։

Բացի արդեն հիշատակված պատճառներից, առանձին ռեգիոններում և ամբողջությամբ վերցրած երկրում աշխատանքի արտադրողականության դինամիկայի ցածր տեմպերը պայմանավորված են նաև, առաջին հերթին, համապարփակ գործոններով։ Ինչպես նշվեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում, տնտեսության զարգացման, բնականաբար, նաև աշխատանքի արդյունավետության դինամիկայի վրա բացասականորեն է ազդել ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջադիմության նկատմամբ բոլոր տնտեսական համակարգերի անընկալունակությունը։ Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում իշխում էր ծախսումային մեխանիզմը, հետ էր մնում մեքենաշինությունը, տնտեսավարման մեխանիզմում մոտիվացիոն համակարգի բացակայության պատճառով բեկում չի իրականացվել գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում։ Սպառողական հատվածի թերզարգացածության, մարդկանց պահանջմունքների բավարարման դժվարությունների, անցած հնգամյակի կեսերին բնակչության կենսամակարդակի աճի փաստական դադարեցման հետևանքով նվազել էր խթան-



ման համակարգի արդյունավետությունը։ Աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի համամասնության խախտման մյուս պատճառը արտադրության տեխնիկակազմակերպական մակարդակի և աշխատանքի տարիֆային ու տեխնիկական նորմավորման որակական և քանակական բնութագրերի (տարիֆային կոպարների և պաշտոնեական դրույքների, աշխատանքի նորմաների, դրանց վերանայման պարբերականության և կարգի) միջև անհամամասնության առաջացումն է, որը սովորաբար ուղեկցվում է նորմաների նշանակալի գերակատարմամբ և աշխատանքի վարձատրության խթանիչ դերի զգալի թուլացմամբ։ Աշխատավարձի ավելացումը արտադրության վերջնական արդյունքների աճ, դրա արդյունավետության բարձրացում չի ապահովում։

Անհրաժեշտ է նաև ընդգծել, որ սեփականության հարաբերությունների ներկա կառուցվածքի, նոր տեխնիկայի ներդրման, արտադրանքի որակի բարձրացման և արտադրական ռեսուրսների ինտենսիվ օգտագործման արդյունավետ մոտիվացիոն մեխանիզմի բացակայության պայմաններում աշխատանքի վերջնական արդյունքների վրա ներգործելու փաստորեն միակ միջոցը մնում է աշխատավարձի (թեև նույնիսկ ապրանքներով չապահովված բարձրացումը, իսկ դա բացասականորեն կանդրադառնա ժողովրդատնտեսական համամասնությունների կազմավորման վրա։

Սակայն, քննարկելով աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի հարաբերակցության պրոբլեմը, պետք է տարբերել դրա երկու կարևոր ասպեկտները։ Առաջինը բովանդակային կողմն է։ Ինչպես հայտնի է, տնտեսագիտական տեսության և սոցիալիստական տնտեսավարման կարևորագույն դրույթներից մեկը միջին աշխատավարձի նկատմամբ աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճի ապահովումն է, որը, մեր կարծիքով, կասկածի ենթակա չէ հետևյալ նկատառումներով՝ այդ ցուցանիշները սերտորեն փոխկապակցված են ինչպես իրենց բացարձակ մեծություններով, այնպես էլ դինամիկայի մեջ փոփոխություններով. ցանկացած ժամանակահատվածում աշխատանքի արտադրողականությունը տնտեսական խիստ սահմաններ է գծում աշխատավարձի համար, քանի որ աշխատավարձը արտադրված արդյունքի արժեքի մի մասն է, որը գերազանցել այն չի կարող, այսինքն՝ անհնար է սպառել արտադրված արդյունքից ավելի շատ։ Այդպիսին է տվյալ ցուցանիշների հարաբերակցությունը ստատիկ վիճակում։ Այն, ըստ էության, արտադրության և սպառման միջև համամասնության մասնակի դրսևորում է։

Աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի փոխադարձ կապի առանձնահատկությունը դինամիկայի մեջ այն է, որ առաջինի աճի տեմպերը օբյեկտիվորեն պետք է գերազանցեն աշխատավարձի աճի տեմպերին, քանի որ արտադրության մեջ գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների ներդրման շնորհիվ աշխատանքի օգտագործման արդյունավետության բարձրացմամբ արտադրական ոլորտի աշխատողների աշխատավարձի ֆոնդը ավելի դանդաղ է աճում, քան նոր արտադրված արդյունքը։ Տվյալ հարաբերակցությունը Կ. Մարքսի հայտնագործած համընդհանուր օրինաչափության կոնկրետ դրսևորումն է. արտադրողական ուժերի զարգացման հետևանքով աշխատուժի վերարտադրության համար պահանջվող անհրաժեշտ աշխատաժամանակը կրճատվում է, հավելյալ աշխատանքն ավելանում, իսկ աշխատուժի քանակությունը պակասում է (տե՛ս Մարքս Կ., Կապիտալ, հ. 3, մ. 1, Եր. 1947, էջ 230)։

Ավելին, էկոնոմիկայի ինտենսիվացման ժամանակաշրջանում աշխատավարձի մեջ մեծանում է վճարումների այն մասը, որ անմիջականորեն կապված է արտադրության արդյունավետության, մասնավորապես արտադրական ռեսուրսների օգտագործման, մակարդակի փոփոխության հետ, ուստի օբյեկտիվորեն անհրաժեշտ է դառնում աշխատավարձի դինամիկան համադրել ոչ միայն կենդանի աշխատանքի, այլև միագումար աշխատանքի արտադրողականության փոփոխության հետ, այսինքն՝ արտադրության ընդհանուր արդյունավետության դինամիկայի հետ։ Դա թույլ կտա հետազոտել այդ ցուցանիշների փոխադարձ կապը դինամիկայի մեջ, ուժեղացնել այն, նյութապես խթանել էկոնոմիկայի ինտենսիվացումը։

Արված է մեկ բացառություն. աշխատավարձի ֆոնդի հարկից ազատվում են այն ձեռնարկությունները, որոնք աճը ձեռք են բերել ի հաշիվ ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացման։ Սակայն, մեր կարծիքով, դրանով իսկ սահմանափակվում են տնտեսական և սոցիալական զարգացման երկարաժամկետ ստրատեգիական շահերը, կրկնվում են արտադրության միջոցների արտադրությունը սպառման առարկաների արտադրությանը հակադրելու սխալները՝ փոխանակ դրանք հմտորեն զուգակցելու։

Սա՝ առաջին։ Երկրորդ՝ մեզ թվում է, որ աշխատանքի վարձատրության համար միջոցների երեք տոկոսանոց ուղղակի հարկադրումը չի ապահովում աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի միջև համամասնությունների կարգավորումը։ Ավելին, այն սահմանափակում է ձեռնարկության տնտեսական գործունեության քանակական և նույնիսկ որակական ցուցանիշների ավելացումը։ Ինչպես ցույց են տալիս բազմատարբերակ հաշվարկները, աշխատավարձի ֆոնդի երեք տոկոսից ավելի աճ կարելի է ունենալ նաև միջին աշխատավարձի աճի համեմատ աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճի դեպքում, եթե.

1. աշխատանքի վարձատրության ֆոնդի աճը ստացվել է աշխատողների թվաքանակի ավելացմամբ.

2. արտադրության ծավալները կամ աշխատանքի արտադրողականությունն արագացված կերպով մեծանում են։

Ինչպես հայտնի է, արտադրության ծավալի (աշխատանքի արտադրողականության) յուրաքանչյուր տոկոս աճի հետ մեծանում է նաև աշխատանքի վարձատրության ֆոնդը։ Ենթադրենք, այդ ավելացումը հավասար է 0,6 տոկոսի։ Ուրեմն արտադրության ծավալի (աշխատանքի արտադրողականության) հինգ տոկոս աճից բարձր յուրաքանչյուր տոկոս աճի դեպքում աշխատանքի վարձատրության ֆոնդը կգերազանցի առավելագույն աճը (3 տոկոս) 0,6 տոկոսով։ Արտադրության ծավալի տասը տոկոսանոց աճի դեպքում աշխատանքի վարձատրության ֆոնդի առավելագույն աճը բարձրանում է երեք տոկոսով։ Հետևաբար, հարկադրման երեք տոկոսանոց նորմատիվը սահմանափակում է արտադրության ծավալի և աշխատանքի արտադրողականության աճը մինչև 5 տոկոսի շրջանակներում։

Հնարավոր է նույնիսկ այսպիսի տարբերակ. արտադրության ծավալը և աշխատանքի արտադրողականությունը չեն փոխվում, երեք տոկոսով բարձրանում են միջին աշխատավարձը և աշխատանքի վարձատրության ֆոնդը, այսինքն՝ խախտվում է համամասնությունը արտադրողականության և աշխատավարձի աճի միջև։ Այս դեպքում ձեռնարկությունը հարկ չի վճարում։։

Ստեղծվում է պարադոքսալ իրավիճակ։ Վերջնական ցուցանիշների բարձր աճի դեպքում ձեռնարկությունը պատժվում է, իսկ դրանց անփոփոխ բազիսային մակարդակի դեպքում այն ազատվում է հարկերի վճարումից, այսինքն՝ աշխատանքի վարձատրության աճը չի գերազանցում երեք տոկոսը։ Պատահական չէ, որ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի կողմից վերոհիշյալ որոշման ընդունումից հետո մամուլում երևացին հրապարակումներ, որոնցում աշխատանքի վարձատրության ֆոնդի հարկադրման համակարգը ենթարկվում էր սուր քննադատության, անվանվում չմտածված (տե՛ս, օրինակ, «Տրուդ» № 205, 6 սեպտեմբերի 1989 թ.)։

Մեր կարծիքով, անցումային ժամանակաշրջանում, երբ արտադրական կոլեկտիվները յուրացնում են տնտեսավարման նոր եղանակները, առաջին քայլերն են անում ինքնաֆինանսավորման և ինքնակառավարման ճանապարհին, ձևավորվում է սոցիալիստական շուկան, նշմարվում են արտադրողների սոցիալիստական մրցակցության նշանները, երևան են գալիս արտադրության մեթոդների նկատմամբ սեփականության իրականացման նոր եղանակներ, ձեռնարկությունների համար նորմատիվային հարաբերակցության սահմանումն անհրաժեշտ է։

Սակայն այդ նորմատիվները ոչ թե դիրեկտիվ, այլ տնտեսական ֆունկցիաներ պետք է կատարեն։ Օրինակ, եթե խախտվում է նորմատիվային հարաբերակցությունը, ապա խախտման չափով մեծանում է շահույթից (եկամտից) մասհանումը բյուջե։ Կարող են լինել տնտեսական ներգործության նաև այլ եղանակներ։ Գլխավորն այստեղ այն է, որ շահույթից (եկամտից) լրացուցիչ մասհանումները պակաս չլինեն աշխատանքի վարձատրության համար նախատեսված միջոցներից, դրանց այն մասով, որը վերաբերում է հաստատված նորմատիվային հարաբերակցության խախտումներին։ Տվյալ դեպքում բանկային խիստ հսկողության անհրաժեշտությունը վերանում է, և մեծանում է ձեռնարկությունների շահագրգռությունը արդյունավետորեն վարելու արտադրությունը։

Սույն մոտեցման տարբերիչ առանձնահատկությունն այն է նաև, որ առանձին աշխատողները չեն զրկվում աշխատանքի վարձատրության մի մասից չէ՞ որ նրանք անձնապես մեղք ունեն հարաբերակցության խախտման համար, իսկ ամբողջ կոլեկտիվը պարտավոր է հասնելու տնտեսավարման առավել լավ արդյունքների։ Վերը նշված լրացուցիչ մասհանումներն իրենց էությամբ հարկային վճարումներ են աշխատանքային ցուցանիշների դինամիկայի համամասնության խախտման դիմաց։

Ընդլայնված վերարտադրության համամասնությունների ձևավորման վրա այժմ ազդում են նաև կոոպերատիվ ձեռնարկությունները, կապալային կազմակերպությունները, քաղաքացիների անհատական աշխատանքային գործունեությունը։ Հեռանկարում մեծանալու է նաև այլ կազմակերպությունների (բաժնետիրական, համատեղ) ազդեցությունը։ Այդ ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի միջև հարաբերակցության կարգավորումը ձեռք է բերում կարևոր նշանակություն, քանի որ դրանք ազդում են երկրում և նրա ռեգիոններում այդ համամասնության ձևավորման վրա։ Դրանց նկատմամբ ներկայումս կարելի է կիրառել հարկային կարգավորման վերը նկարագրված եղանակը, այսինքն՝ աշխատանքի վարձատրության ֆոնդի հարկադրումը։ Տվյալ դեպքում հաշվի է առնվում նաև այդ կազմակերպություններում աշխատավարձի անվերահսկելի ու բավական բարձր, շատ հաճախ չհիմնավորված աճը։ Միաժամանակ դա հնարավորություն կընձեռի փորձարկելու հարկադրման հնարավոր տարբերակները, գտնելու առավել նպատակահարմարը։

Աշխատանքի արտադրողականության դինամիկայի և աշխատավարձի միջև համամասնությունների կարգավորման եղանակների կատարելագործումը կնպաստի էկոնոմիկայի հաշվեկշռված զարգացմանը, ֆինանսական դժվարությունների հաղթահարմանը, արտադրության արդյունավետության բարձրացման գործում աշխատանքի վարձատրության խթանիչ դերի ուժեղացմանը։

# ԲԱՇԽՄԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԸ ՏԵՐԻՏՈՐԻԱԼ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Գ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**
**Հ. ՀԱՆԻՍՅԱՆ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅՈՒՄ, որի բարձրագույն նպատակը ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակների անշեղ աճն է, առանձնապես կարևորվում է սոցիալիստական բաշխման սկզբունքների հետևողական իրագործումը։

Դեմոկրատական ինստիտուտների անբավարար գործունեությունը, արտադրության աճի ցածր տեմպերը նպաստել են այն սխալ պատկերացման արմատավորմանը, թե իբր սոցիալիզմի սկզբունքային առավելությունը ոչ թե արտադրության արդյունավետության ավելի բարձր մակարդակն է, այլ միայն սոցիալական երաշխիքները (աշխատանքով ապահովում, առողջապահություն, կրթություն և այլն)։ Այդ թյուր մտայնությունն իր տնտեսական հետևանքներով ավելի շուտ վնասել, քան նպաստել է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Բացահայտ ձևով այդ դրույթը հանդիպում է հազվադեպ։ Բայց, դրա հետ կապված, լայն տարածում է ստացել այն պատկերացումը, թե չի կարելի կատարելագործել տնտեսավարումը՝ չկիրառելով այդ երաշխիքները, չի կարելի հասնել կապիտալիզմի հետ տնտեսական մրցակցության մեջ հաջողության, չօգտագործելով արտադրության խթանման՝ իրեն իսկ հատուկ մեխանիզմներ։

Անհիմն է այն տեսակետը, թե իբր սոցիալական երաշխիքները, որոնցում արտահայտվում է հասարակության հումանիզացման մակարդակը, գտնվում են տընտեսավարման արդյունավետությանը հակադարձ համեմատության մեջ, խոչընդոտում աշխատանքի ինտենսիվության և որակի բարձրացմանը։

Խորհրդային հասարակարգի գլխավոր առավելությունը նրա դեմոկրատիզմն է, հումանիզմը։ Սոցիալիզմի պայմաններում պահանջմունքների բավարարումը իրագործվում է հիմնականում աշխատավարձի և սպառման հասարակական փոնդերի (ՍՀՖ) միջոցով։ Ընդ որում, ՍՀՖ-ի փունկցիաների մասին դեռևս չի ձևավորվել միասնական կարծիք (ՍՀՖ-ի վերլուծությունը տե՛ս Ракитский Б. В., Шохин А. Н., Закономерности формирования и реализации трудовых доходов при социализме. М., Наука, 1987 г.).

Կարելի է առանձնացնել ՍՀՖ-ի օգտագործման հետևյալ փունկցիաները.

ա) պահանջմունքների բավարարման փունկցիան այն բարիքների համար, որոնց նկատմամբ հասարակության կողմից ընդունված է ըստ կարիքայնության բաշխման սկզբունքը։ Դրանք կարելի է խմբավորել այսպես. լուսավորության, առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի կողմից մատուցվող ծառայություններ։ Այդ ոլորտների բոլոր ծառայություններն այն մասով, որով դրանք մատուցվում են անվճար, արտահայտում են ՍՀՖ-ի «ըստ կարիքի» բաշխվող բարիքների մի մասը.

ուղղակի դրամական վճարումները, որոնք ներառնում են թոշակները, վճարումները նորածին երեխաների խնամքի համար, բազմազավակ և միայնակ մայրերին, անաշխատունակների և ծերերի տների պահպանման ծախսերը.

արտոնությունները բնակչությանը՝ այս կամ այն պահանջմունքի բավարարման համար։ Դրանք վերաբերում են մանկական, մարզական, կուլտուր-լուսավորական

*ՄՈՎՍԻՍՅԱՆ ԳՐԻՇԱ ՀԱԿՈԲԻ— Երքաղխորհրդի գործկոմի նախագահի տեղակալ, պլանային հանձնաժողովի նախագահ։*

*ՀԱՆԻՍՅԱՆ ՀՈՎԻԿ ԲԵՆԻԿԻ— Երքաղխորհրդի գործկոմի ՔԿԱՀ Երևանի գիտահետազոտական և նախագծային ինստիտուտի կրտսեր գիտաշխատող, տնտեսագիտության թեկնածու։*



հիմնարկների, դպրոց-ինտերնատների պահպանմանը։ Տվյալ ձևի առանձնահատկությունն այն է, որ ծախսերը լրիվ կամ մասնակիորեն իրականացվում են ՍՀՖ-ի հաշվին.

բ) պահանջմունքների բավարարման փունկցիան ՍՀՖ-ից բաշխվող այն բարիքների համար, որոնց նկատմամբ հասանելիությունը պայմանավորված է կարիքավորի աշխատանքային ներդրմամբ։ Նախկին աշխատավարձը, մասնավորապես, հաշվի է առնվում կենսաթոշակների չափը սահմանելիս, անաշխատունակության համար հատկացումների, արձակուրդների վարձատրման ժամանակ և այլն։

ՍՀՖ-ից հատկացվող այն բարիքները, որոնց բաշխման սկզբունքը դեռևս վիճելի է, ավելի նպատակահարմար է չընդգրկել ըստ կարիքի բաշխվող խմբի մեջ (տե՛ս Шохин А. Н., Бым А. М. — Потребности, удовлетворение посредством выплат и плат из общественных фондов потребления, «Вопросы экономики», 1986 г., № 12)։ Ընդ որում արտադրության արդյունավետության բարձրացմանը առավել մեծ չափով նպաստում է ըստ կարիքի բաշխման մեխանիզմի բարելավումը, քան այդ շրջանակի ընդլայնումը։

Բնակչության կարիքների բավարարման կազմակերպումը կատարելագործելու ասպարեզում կարևորագույն ակտ է պետական ձեռնարկության մասին ԽՍՀՄ օրենքը, որը հնարավորություն է տալիս աշխատավորական կոլեկտիվի վաստակած միջոցների հաշվին իրականացնել աշխատավարձի ֆոնդի և սոցիալական զարգացման ֆոնդի (ՍԶՖ-ի) ձևավորում։ Ընդ որում, ՍԶՖ-ները (մինչև պետական ձեռնարկության մասին օրենքի ընդունումը կոչվում էին սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդ) ամբողջ ձեռնարկության (միավորման) կոլեկտիվ հասարակական սպառման ֆոնդեր են։

Պրակտիկայում ձեռնարկությունների սոցիալական զարգացման ֆոնդերն ընդգրկում են բարիքներ ՍՀՖ-ի երկու փունկցիաներով. ՍԶՖ-ի օգտագործման ներկա պրակտիկան հանգեցնում է ըստ կարիքի բարիքների բաշխման սկզբունքի ձևախեղման, քանի որ տվյալ դեպքում կարիքայնությունը որոշվում է՝ հաշվի առնելով աշխատանքային ներդրումը, իսկ այդ ֆոնդերի ձևավորումը պայմանավորված է ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքներով և, երկրորդ, «հարուստ» ձեռնարկությունների աշխատավորները կարիքների բավարարման արտոնյալ պայմաններ են ստանում։

Ըստ կարիքի բաշխման ձևախեղման հետևանքով ՍՀՖ-ն վերածվում է աշխատանքի վարձատրության տարատեսակի, աշխատանքային ակտիվության խթանման գործիքի։ Առաջանում է աշխատուժի հոսք, աշխատանքի տեղավորման կոնյունկտուրա (և՛ ադմինիստրացիայի, և՛ աշխատողների կողմից), քանի որ «հարուստ» ձեռնարկություններն ավելի մեծ հնարավորություններ ունեն աշխատողներին բավարարելու բնակարանով, նախադպրոցական հիմնարկներով, հանգստի և առողջապահության ծառայություններով։ Դրանք, ըստ էության, ավելի հզոր խթանի դեր են կատարում, քան աշխատավարձի բարձրացումը։

Միաժամանակ տարերային շուկայական մեխանիզմի օրինաչափությունները դրսևորվում են լրիվ ծավալով։ Թուլանում է աշխատանքի իրավունքի պետական երաշխավորման գործունեությունը, անշեղորեն չեն պահպանվում աշխատանքային օրենսդրության հիմունքները։

Այլ աշխատանքի տեղափոխում թույլ չտալու համար ադմինիստրացիան կարող է օգտագործել անհիմն գրառումներ, ՍԶՖ-ի հաշվետվության կեղծումներ, ՍԶՖ-ի ձևական օգտագործում և ուրիշ արգելակներ։ Ձևախեղումը կարող է առաջացնել այս կամ այն խումբ բնակչության խտրականության՝ որպես պատրվակ օգտագործելով աշխատուժի հոսքի կանխումը։ Նման պրակտիկայի հետևանքով հասցված վնասը բխում է ոչ միայն աշխատողների չկարգավորվող հոսքի մեծացումից, այլև միևնույն աշխարհագրական տարածքում գտնվող տարբեր ձեռնարկությունների ստեղծած սոցիալական բարիքների անարդյունավետ օգտագործումից։

Ժողովրդի բարեկեցության բարձրացմանն ուղղված միջոցառումների իրականացումը մնում է կիսանձանապարհին, եթե չի ընդգրկում տնտհաշվարկի հետևողական խորացման սոցիալ-տնտեսական նախապայմանները, չի հաղթահարում տընտհաշվարկի ներդրմանն արգելակող գործոնները։

Ժողովրդական դեպուտատների տեղական խորհուրդների դերը չի հանգում բարիքների ողջ համախմբի բաշխումը համահարթելուն։ Դա կհակասեր «ըստ աշխատանքի» բաշխման սոցիալիստական սկզբունքին։ Խնդիրն այն է, որ ապահովվի պահանջմունքների բավարարման որակապես նոր մակարդակ՝ ՍՀՖ-ի «ըստ

կարիքի» բաշխման ֆունկցիայի իրագործման կատարելագործման, այդ խումբ բարիքների արդարացի բաշխման միջոցով: Հարցն առավել դյուրին լուծում կստանար, եթե «ըստ կարիքի» բաշխման ենթակա բոլոր բարիքները հանձնվեին տեղական խորհուրդների տնօրինությանը: Սակայն գործնականում այդպես չէ, և դրան, ի դեպ, խանգարում է նաև այն կոնկրետ բարիքների առանձնացման դժվարությունը, որոնք ենթակա են բաշխվելու կարիքավորի աշխատանքային ներդրումից անկախ: Տեղական խորհուրդները կոչված են հաղթահարելու այդ բնույթի բարիքների բաշխման տարբերությունը ինչպես ըստ ձեռնարկությունների, այնպես էլ զբաղվածների և անաշխատունակների միջև: Հայտնի է, որ «բնակչության կենսամակարդակ» հասկացությունը ներառում է ոչ միայն նյութական բարեկեցությունը, այլև բարիքների բաշխման եղանակը: Այդ իսկ պատճառով բարիքների բաշխումը համահարթելու տարբեր ուղիների քննարկումը դառնում է սոցիալ-տնտեսական հրատապ խնդիր, որի լուծումը կնպաստի ժողովրդի բարեկեցության հետագա աճին:

Մեր կարծիքով, իրավացի են ըստ կարիքի բաշխման համահարթման այնպիսի ձևեր, ինչպիսիք են.

խիստ կարիքավորների ապահովումը տեղական բյուջեի միջոցների հաշվին (ներառյալ նաև «աղքատ» ձեռնարկությունների բանվորների նվազ ապահովվածության փոխհատուցումը).

աշխատանքի արտոնյալ տեղավորման քաղաքականությունը այն ձեռնարկություններում, որոնց սոցիալական զարգացման ֆոնդը ապահովվում է բարիքների ավելի բարձր մակարդակի սպառում.

աշխատանքային ռեսուրսների համար վճարումների տարբերակումը տեղական բյուջե լրացուցիչ մասհանումների հաշվին: Որքան էլ տարօրինակ թվա, հավելյալ գանձման (վերադրման) ենթակա են այն ձեռնարկությունները, որոնց աշխատավորները տեղական խորհուրդների միջոցով ավելի շատ են ապահովվում «ըստ կարիքի» բաշխման բարիքներով: Այսպիսով, պետք է խթանվի աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ վերաբաշխումը ձեռնարկությունների միջև:

Քաղաքային բնակչության բարեկեցության բարձրացման վերը նշված ուղիները դիտարկենք ռեալ իրավիճակում: Օրինակ, «Լույս» արտադրական միավորման Երևանի էլեկտրալամպերի գործարանի (ԵԷԼԳ) մեկ աշխատողի 1988 թվականի նյութական բարեկեցությունը (աշխատավարձ՝ 4157 ռուբլի+ՍԶՖ-ից՝ 419,5 ռուբլի) բարձր է եղել, քան Երքաղխորհրդի գործկոմի շինարարական իրերի կոմբինատի մեկ աշխատողինը (աշխատավարձ՝ 4381 ռուբլի + ՍԶՖ-ից՝ 137,5 ռուբլի): Ընդ որում, նման դրություն առաջացել է այն բանի հետևանքով, որ ՍԶՖ-ից ըստ կարիքի բաշխվող բարիքներ ԵԷԼԳ-ում ստանում են ավելի (419,5 ռուբլի), քան շինարարական իրերի կոմբինատում (137,5 ռուբլի), չնայած այստեղ ավելի բարձր է աշխատավարձը: Պարզ է, որ քննարկվող իրավիճակում բարեկեցության աճի ուղիներից մեկը ֆինանսավորման կարգի փոփոխությունն է, ՍԶՖ-ի վերաբաշխումը:

Եթե աշխատանքային ռեսուրսների պահպանման համար տեղական բյուջե մասհանվի աշխատավարձի 10 տոկոսը, ապա դա հնարավորություն կտա բյուջեի միջոցով մեկ աշխատողի հաշվով ԵԷԼԳ-ից վերաբաշխել 415,7 ռուբլի, իսկ ԵՔԾԻԿ-ից՝ 438,1 ռուբլի:

Գործնականում կիրառելով համահարթման նշված մեթոդիկան, տեղական բյուջեի միջոցները կօգտագործվեն նվազ ապահովված ձեռնարկությունների պահանջմունքների բավարարման համար (չնայած այդ միջոցները շատ ավելի սահմանափակ են, քան խոշոր ձեռնարկություններինը):

Սակայն անկախ ձեռնարկության տնտեսական գործունեության արդյունավետությունից, բարիքների սպառման մակարդակների համահարթումը չի խթանում աշխատանքային և բնական ռեսուրսների ավելի արդյունավետ օգտագործմանը, աշխատուժի վերաբաշխմանը՝ ավելորդ աշխատանքային ռեսուրսներ և աշխատանքի ցածր արդյունավետություն ունեցող կոլեկտիվներից այն ձեռնարկություններ, ուր աշխատանքային ռեսուրսների պակաս կա և բարձր է արդյունավետությունը: Միաժամանակ կոլեկտիվների տնտեսական գործունեության արդյունավետության անտեսումը խոչընդոտում է տեղական բյուջեի այն ծախսերը կրճատելուն, որոնք տրվում են նվազ ապահովված ձեռնարկություններին ըստ կարիքի բարիքների գծով: Այս տեսակետից, մեր կարծիքով, առավել ընդունելի են համահարթման այլ տարբերակներ, որտեղ հաշվի է առնվում աշխատանքային ռեսուրսների արդյունավետությունը:

Մյուս ձևի կիրառմանը խոչընդոտում է այն իրադրությունը, երբ մեկ աշխատողի հաշվով ավելի փոքր սոցիալական զարգացման ֆոնդ, բայց ավելի բարձր աշխա-



տավարձ ունեցող ձեռնարկությունները (օրինակ, ԵՔԾԻԿ) կձգեն իրենց մոտ աշխատանքային ռեսուրսներ այն ձեռնարկություններից (օրինակ, ԵԷԼԳ), որտեղ սոցիալական ֆոնդերը մեկ աշխատողի հաշվով ավելի մեծ են: Տեղական խորհուրդների կողմնորոշիչ գործունեության շնորհիվ աշխատանքային ռեսուրսները կվերաբաշխվեն այն հաշվով, որ այլ հավասար պայմաններում ապահովվի միջին հաշվով մեկ աշխատողին հասնող ըստ կարիքի բարիքների առավել մեծ գումար, այսինքն, առավելագույն չափով մեծացվի աշխատողների ընդգրկումը մեկ շնչի հաշվով ավելի մեծ ՍԶՖ ունեցող ձեռնարկություններում կամ թեկուզ կրճատվի աշխատողների ընդգրկումն այն ձեռնարկություններում, որտեղ համապատասխան ֆոնդերի մակարդակը ցածր է: (Նշենք, որ վերաբաշխման օբյեկտ են ինչպես քաղաքի բնակիչները, այնպես էլ այլ վայրերից հրավիրված աշխատողները):

Նման կողմնորոշումը պայմանավորած է այն հանգամանքով, որ մինիստրություններն ու պլանավորող մարմինները մեկ շնչի հաշվով սոցիալական զարգացման փոքր ֆոնդ ունեցող ձեռնարկություններում զբաղված աշխատողին չեն տարբերում սոցիալական զարգացման մեծ ֆոնդ ունեցող ձեռնարկության աշխատողից: Դրանում համոզվելու համար բավական է ծանոթանալ ինքնաֆինանսավորման փոխադրված ձեռնարկությունների շահույթի վերաբաշխման նորմատիվային մեթոդի մասին տիպային կանոնադրությանը («Экономическая газета», 1987 г., № 50).

Այստեղ, մի կողմից, հանձնարարվում է միջին օրական կազմի մեկ աշխատողի հաշվով աշխատանքային ռեսուրսների օգտագործման համար 300 ռուբլի հատկացնել ձեռնարկությունների շահույթից (աշխատանքային ավելցուկով առանձին շրջաններում՝ 200 ռուբլի), իսկ մյուս կողմից՝ սոցիալական զարգացման ֆոնդը լրիվ թողնել ձեռնարկությունների տրամադրության տակ: Ըստ որում, այդ ֆոնդը կազմավորվում է մնացորդային շահույթից՝ գերատեսչության կողմից սահմանվող նորմատիվներով: Սոցիալական զարգացման ֆոնդի կազմավորման այս եղանակը հանգեցնում է մեկ աշխատողի հաշվով առանձին ձեռնարկությունների ֆոնդերի մակարդակների զգալի տարբերության:

Այսպիսով, ըստ տիպային կանոնադրության, մեկ աշխատողի հաշվով սոցիալական զարգացման ֆոնդի մակարդակները տարբեր ձեռնարկություններում կարող են չհամընկնել և հանգեցնել ըստ կարիքի բաշխվող բարիքների սպառման տարբերության, մինչդեռ աշխատանքային ռեսուրսների օգտագործման համար սահմանվում է միասնական վճար: Այսինքն, բոլոր ձեռնարկությունները միատեսակ են հատուցում աշխատուժի պատրաստման, սոցիալ-կուլտուրական և կոմունալ սպասարկման համար պետության կողմից կատարվող ծախսերը: Աշխատանքային ռեսուրսների համար միասնական վճարը, մեր կարծիքով, հիմնավոր համարել չի կարելի, քանի որ այդ դեպքում հաշվի չի առնվում տարբեր ձեռնարկությունների ՍԶՖ-ից աշխատողների ոչ միանման ապահովվածությունը, հետևաբար, այդ ապահովվածության համահարթման խնդիր էլ չի դրվում: Տնտեսագիտական գրականության մեջ քիչ է ուսումնասիրված այն պրոբլեմը, որ այլ հավասար պայմաններում ՍՀՖ-ից ըստ կարիքի բաշխվող բարիքներից կարիքավորներն օգտվեն անկախ այն բանից, թե որտեղ են նրանք աշխատում: Այս հարցը պայմանավորված է աշխատանքային ռեսուրսների վերաբաշխման գործում տեղական խորհուրդների դերի բարձրացմամբ, այն նպատակամղելով բնակչության կենսամակարդակի աճին, ելնելով ոչ միայն նյութական բարեկեցության մակարդակից, այլ նաև ապրելաձևից՝ լայն իմաստով:

Վարչական-գերատեսչական կառավարման պայմաններում բարիքների առավել արդարացի բաշխումը հնարավոր է միայն մարդկանց գերազանցապես աշխատանքի տեղավորելով այն ձեռնարկություններում, որոնց ՍԶՖ-ն բարիքների ավելի շատ սպառում է ապահովում: Սույն համակարգերում ձեռնարկությունների ինքնուրույնությունը այս կամ այն կերպ կարող է դրսևորվել, երբ նա տեղական խորհուրդներին է ներկայացնում ՍԶՖ-ի նախահաշիվը: Նշված թերության վերացման, ձեռնարկության ինքնուրույնությունն ապահովելու համար, մեր կարծիքով, իրավացի է դիտարկվող համահարթման վերջին ուղին: Խոսքը աշխատանքային ռեսուրսների համար վճարումների տարբերակման (տեղական բյուջե լրացուցիչ մուծումների) մասին է: Ընդ որում, լրացուցիչ վերադրման ենթակա են հենց այն ձեռնարկությունները (օրինակ՝ ԵՔԾԻԿ), որոնց աշխատողները տեղական խորհուրդների կողմից բարձր աստիճանով են ապահովվում: Այդ ձևով ձեռնարկությունների միջև աշխատողների վերաբաշխումը կհանգեցնի աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգ-

տագործմանը՝ ապահովելով բարիքների սպառումը՝ անկախ մասնագիտությունից և աշխատանքի վայրից։

Աշխատանքային ռեսուրսների վերաբաշխման ժամանակ նրանց պահանջմունքների բավարարման հաշվառման վերբերյալ տեղական խորհուրդների պրակտիկայում և գրականության մեջ կարծիքներ արտահայտվել են։ Բայց դրանք հիմնականում վերաբերվել են քաղաքային բյուջեի հաշվին այլ վայրերից հրավիրված մասնագետների պահանջմունքների բավարարմանը։ Այդ հարցի լուծման նպատակով անհրաժեշտ է ստեղծել հատուկ լծակ, որը կարգավորի աշխատողների սոցիալական ապահովման համար առանձին ձեռնարկությունների և տեղական բյուջեի փոխհարաբերությունները։ Այդպիսի լծակ կարելի է ստեղծել միայն քաղաքի տարածքային շրջանակներում, իսկ դրա համար անհրաժեշտ է, որ միութենական, միութենական-հանրապետական և հանրապետական ենթակայության մինիստրությունների ու գերատեսչությունների ձեռնարկությունները, միավորումներն ու կազմակերպությունները մեկ աշխատողի հաշվով ՍԶՖ-ից ըստ կարիքի բարիքների ցածր մակարդակի դեպքում լրացուցիչ վճարումներ կատարեն տեղական բյուջե (տարբերակված տնտեսական նորմատիվներով)։

Աշխատանքային ռեսուրսների համար միասնական վճարի սահմանումն ի սկզբանե նկատի չունի նշված բարիքների բաշխումը՝ անկախ աշխատանքի վայրից և մասնագիտությունից։

Հարց է ծագում. կառավարման տեղական մարմինները գործնականորեն ինչպե՞ս կարող են որոշել աշխատանքային ռեսուրսների համար ձեռնարկությունների լրացուցիչ մուծումների չափերը։ Մեր կարծիքով, անիմաստ չէ մուծումների կազմավորման այնպիսի եղանակը, որը թեկուզ աշխատանքային ռեսուրսների խիստ ռացիոնալ բաշխում չի ապահովում, բայց խոչընդոտում է բացահայտ ոչ ռացիոնալ աշխատողների սոցիալական ապահովման համար ըստ կարիքի բարիքների պահանջի բավարարման նույնիսկ այժմյան մակարդակին չհամապատասխանող բաշխմանը։ Վճարումների հաշվարկումը կարող է պայմանավորվել ձեռնարկությունների սոցիալական զարգացման ֆոնդի ըստ կարիքի բարիքների բաշխման առկա մակարդակով և ամբողջ քաղաքում մեկ աշխատողի համար սպառման առկա չափով։ Եթե ամբողջ քաղաքում այդ ցուցանիշը մեծ է ձեռնարկությունների ՍԶՖ-ի մակարդակից, ապա ձեռնարկությունը պարտավոր չէ լրացուցիչ վճարել աշխատանքային ռեսուրսների համար։ Ընդ որում, ինչքան այդ տարբերությունը մեծ է, այնքան մեծ է վճարման չափը։

Առաջարկվող մեխանիզմը ամենևին չի հակասում պետական ձեռնարկության մասին օրենքի այն դրույթներին, ըստ որոնց նրանց լիակատար ինքնուրույնություն է տրվում տնօրինելու իրենց շահույթները և ֆոնդերը, այդ թվում նաև ՍԶՖ-ն։ Նշված մեթոդիկան ելնում է այն բանից, որ ՍԶՖ-ն հիմնականում կազմված է երկու բաղադրամասից։ Նրա այն ֆունկցիան, որը վերաբերում է ըստ աշխատանքի բաշխմանը, ամբողջովին մնում է ձեռնարկության լիակատար տնօրինությանը։

Ինչ վերաբերում է սոցիալական զարգացման ֆոնդերի այն մասին, որը նախատեսված է հատկացնելու ըստ կարիքի, ապա դրա բաշխումը նպատակահարմար է իրականացնել տեղական խորհուրդների մասնակցությամբ։

Տերիտորիալ կառավարման համակարգում բաշխման այսպիսի մեխանիզմի ներդրումը ձեռնարկությունների ինքնուրույնության ընդլայնման պայմաններում միաժամանակ բարձրացնում է կառավարման տեղական մարմինների դերը։

Համահարթման նշված ուղիները հնարավորություն են ընձեռում նպատակայաց փոփոխելու գործնականում ձևավորված բաշխման կարգը։

Քաղաքի կառավարման տնտեսական մեխանիզմի այս կենսական օղակի էական վերակառուցումը, անշուշտ, կապահովի սոցիալական և տնտեսական կարևոր պրոբլեմի՝ բաշխման հստակ և արդարացի իրականացումը։

---



# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱՆՏԱԺ ՍՈՒՎԵՐԵՆՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՇՏՊԱՆԵԼՈՒ ԴԻՄԱԿՈՎ

Ն. ԱՅՎԱԶՅԱՆ
Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԲԱԶՄԱԶԳ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆ իր զարգացման դժվարին շրջանն է ապրում։ Տասնամյակների ընթացքում իրագործված ստալինյան ազգային քաղաքականությունը հասցրել է խորհրդային ֆեդերացիայի ձևախեղման, ազգամիջյան հարաբերությունների անխուսափելի սրման։ Ինչպես նշվում է ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. սեպտեմբերյան պլենումի ընդունած կուսակցության պլատֆորմում, «ազգային զարգացման և ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմները, որոնց երկիրը բախվում է ներկայումս, խոր արմատներ ունեն նաև անցյալում... Հասարակական զարգացման՝ Վ. Ի. Լենինից հետո շուտով սկսված ձևախեղումները կործանարար ազդեցություն ունեցան նաև ազգամիջյան հարաբերությունների վրա»։*

*Լենինի կողմից կտրականապես մերժված, բայց պրակտիկորեն իրագործված ստալինյան «ինքնավարացման» ծրագիրը էական նահանջ եղավ սոցիալիստական ֆեդերացիայի այն հիմնարար սկզբունքներից, ինչպիսիք են ժողովուրդների ազատ ինքնորոշումը, միասնական ֆեդերալ պետության մեջ նրանց միավորվելու կամովիությունն ու իրավահավասարությունը, Միությունից ազատ դուրս գալու իրավունքը։*

*Այդ սկզբունքներից նշանակալի նահանջը գործնական քաղաքականության մեջ, շատ ժողովուրդների ճակատագրի լուծումն առանց նրանց կամքի արտահայտությունն հաշվի առնելու հասցրեցին այն բանին, որ նրանցից շատերն ընկան բազմաստիճան ենթակայության մեջ։ Այժմ արդեն հանրահայտ է, որ դրանց թվում հայտնվեց Լեռնային Ղարաբաղի ու Նախիջևանի մարզերի համահավաք կերպով ապրող հայ ազգաբնակչությունը՝ արհեստականորեն Ադրբեջանական ԽՍՀ-ի կազմում ինքնավարություններ ստեղծելու հետևանքով։ Ստալինականության-բաղիրովականության, իսկ այնուհետև բրեժնևականության-ալիևականության իշխանության տարիներին Նախիջևանի Ինքնավար Հանրապետությունից վտարվեց արմատական հայ բնակչությունը և այն ամբողջությամբ բնակեցվեց ադրբեջանցիներով։ Այդպիսի ադրբեջանացման քաղաքականություն էր իրագործվում նաև Լեռնային Ղարաբաղում, որտեղ նույնպես աստիճանաբար կրճատվում էր հայ բնակչության թվաքանակը և արհեստականորեն ավելացվում ադրբեջանցի բնակչությունը։*

---

*ԱՅՎԱԶՅԱՆ ՆՈՐԻԿ ԱՆՈՒՇԱՎԱՆԻ— Երևանի պետական համալսարանի պետական, վարչական և միջազգային իրավունքի ամբիոնի վարիչ, իրավաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր։*

*ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԼՅՈՒԴՎԻԳ ՄՆԱՑԱԿԱՆԻ— Երևանի պետական համալսարանի գիտական աշխատանքի գծով պրոռեկտոր, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր։*

*ԽԱՉԱՏՐՅԱՆ ՀԵՆՐԻԿ ՄԿՐՏՉԻ— Երևանի Օրջոնիկիձեի շրջանի դատախազ, իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ։*

Հայ բնիկ բնակչությունն իր նախնիների տարածքից ամբողջապես վտարելուն խանգարեց հեղափոխական վերակառուցումը, որը լույս սփռեց ստալինյան ազգային քաղաքականության բոլոր վերքերի վրա, նշեց խորհրդային ֆեդերացիայի և ազգամիջյան հարաբերությունների լենինյան սկզբունքի վերականգնման ուղիները:

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի աշխատավորները վերակառուցման գաղափարներին և դեմոկրատիայի պահանջներին լիովին համապատասխան կրկին հարց բարձրացրին Ադրբեջանական ԽՍՀ-ի կազմից դուրս գալու և Հայկական ԽՍՀ-ի հետ վերամիավորվելու մասին: Ի պատասխան այդ արդարացի պահանջի, Ադրբեջանի որոշակի շրջանները կազմակերպեցին Սումգայիթի վանդալիզմը և նմանօրինակ գործողություններ Բաքվում, Կիրովաբադում, Խոջալուում և իրենց հանրապետության մյուս շրջաններում: Այդ գործողությունների անհամար հետևանքները հանրահայտ են:

Անցած մեկուկես տարիների ընթացքում խորհրդային Միության կենտրոնական իշխանությունները համապատասխան միջոցներ չեն ձեռնարկել, պատասխանատվության չեն կանչել ազգամիջյան թշնամանք հարուցողներին, որը հասցվել է մինչև ցեղասպանության և հարյուր հազարավոր փախստականների հայտնվելուն: Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի արնածոր պրոբլեմն առաջին անգամ խոր տագնապով հնչեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների անդրանիկ համագումարում, որը որոշեց հանձնաժողով ստեղծել այդ հարցն ուսումնասիրելու և նրա լուծումն արագացնելու համար:

Թեև Ադրբեջանի դեպուտատներն ամեն կերպ ձգտում էին ժողովրդական դեպուտատների համագումարը շեղել հարցի էությունից, այնուամենայնիվ, քվեարկեցին հօգուտ հանձնաժողովի ստեղծման: Սակայն Ադրբեջանական ԽՍՀ ազդեցիկ շրջանները ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարում կատարված հարցադրումներն ամբողջապես անտեսելու կուրս էին վարում: Նրանք ավելի բացահայտ ու անսքող կերպով ուժեղացրին սպառնալիքի ու շանտաժի քաղաքականությունը, սկսեցին կոչ անել իրենց ժողովրդին լուծարքել ԼՂԻՄ-ը և հաշվեհարդար տեսնել հայ բնակչության հետ: Այդ քաղաքականության էությունն առավել խտացված շարադրվել է Բաքվի հասարակայնության ներկայացուցիչների մասնակցությամբ հանրապետության մայրաքաղաքի մտավորականության 1989 թ. օգոստոսի 17-ի ժողովում ընդունված դիմումի մեջ, որը լիակատար պաշտպանություն գտավ Ադրբեջանական ԽՍՀ Գերագույն խորհրդի 1889 թ. սեպտեմբերյան նստաշրջանում: Որպես հետևանք, ուժեղացվեց ԼՂԻՄ-ի ավելի քան մեկուկես տարի շարունակվող շրջափակումը և սկսվեց շրջափակվել Հայկական ԽՍՀ-ն: Այլ կերպ ասած՝ Ադրբեջանի որոշակի շրջանները սպառնալիքներից ու շանտաժից անցան հարևան հանրապետության դեմ չհայտարարված պատերազմի: Միասնական ֆեդերատիվ պետության մեջ այդ անսկզբունք գործողությունը քննության առնվեց Հայկական ԽՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն խորհրդի տասներորդ արտահերթ նստաշրջանում: Ընդունված որոշման մեջ նշված է, որ այն «հետևում է քաղաքական նպատակներ՝ ուժի կիրառմամբ թույլ չտալ ԼՂԻՄ-ի պրոբլեմի դեմոկրատական և իրավական ճանապարհով լուծումը, ուժային ճնշման միջոցով իրագործել հեռուն գնացող ծրագրեր»:

ԽՍՀՄ սահմանադրության համաձայն Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը պահանջեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների արտակարգ համագումարի հրավիրում՝ շրջափակումը վերացնելու վերաբերյալ արտակարգ միջոցներ կիրառելու համար: Սակայն այդ սահմանադրական պահանջը ԽՍՀՄ Գերագույն խորհրդի երկրորդ նստաշրջանի տեսադաշտից դուրս մնաց: Հարցն անդիմորեն հիշատակվեց երկրի մի շարք ռեգիոններում երկաթուղային տրանսպորտի աշխատանքների մեջ ստեղծված իրադրությունը քննարկելիս: Իր եզրափակիչ խոսքում ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ, որոշման նախագիծ մշակող հանձնաժողովի նախագահ Ն. Ի. Ռիժկովը ԽՍՀՄ Գերագույն խորհրդի անդամների ուշադրությունը հրավիրեց ԼՂԻՄ-ի պրոբլեմի քաղաքական լուծումն արագացնելու անհրաժեշտության վրա: Ամփոփելով քննարկումը, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահ Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ ԼՂԻՄ-ի պրոբլեմը գոյություն ունի վաղուց, որ միայն պատերազմի ժամանակ



այն չեն բարձրացրել, որ պատմականորեն ևս այդ հարցը լուծվել է ոչ լավագույն կերպով: Ուստի այն պետք է լուծել, քանի որ նախկինում կիրառված մեթոդները օրակարգից այն չեն հանել:

Ինչպես երևում է, այսպիսի արդարացի (թեև չափազանց ձգձգված) հարցադրումը դժգոհություն հարուցեց ադրբեջանական ղեկավարության մեջ: Պատասխան միջոցները կիրառվեցին անհապաղ: Տառացիորեն մյուս օրը հաջորդեց նոր սպառնալիք՝ Ադրբեջանական ԽՍՀ իշխանության բարձրագույն մարմնի հերթական քաղաքական շանտաժը. Գերագույն խորհուրդը սահմանադրական օրենք ընդունեց հանրապետության սուվերենության մասին, որի տակ քողարկվելով արտահայտեց հեռուն գնացող իր ծրագրերը:

Իհարկե, այս կամ այն հարցով սահմանադրական օրենք ընդունելը սուվերեն հանրապետության իշխանության բարձրագույն մարմնի անկապտելի իրավունքն է: Բայց Ադրբեջանի Գերագույն խորհրդի ընդունած փաստաթուղթը հազիվ թե կարելի է առանձին, ինքնուրույն սահմանադրական օրենք անվանել, քանի որ այն շատ բանով, ըստ էության, կրկնում ԽՍՀՄ սահմանադրության և Ադրբեջանական ԽՍՀ սահմանադրության համապատասխան դրույթները, իսկ որոշ «նորություններն» էլ բացահայտորեն հակասում են նրանց: Այդ բանում համոզվելու համար բավական է հիշյալ օրենքի հոդվածների մեծամասնության բովանդակությունը համեմատել ԽՍՀՄ սահմանադրության 70, 74, 75, 82, 85, 86, 87, 119, 173 հոդվածների և Ադրբեջանական ԽՍՀ սահմանադրության համապատասխան հոդվածների հետ:

Հայտնի է, որ խորհրդային ֆեդերացիայի հիմքերը դրվել են 1922 թվականի դեկտեմբերի 30-ին, որոնք իրենց արտացոլումն են գտել 1936 և 1977 թվականների սահմանադրություններում: Գործող սահմանադրության 70-րդ հոդվածում ասվում է «ԽՍՀՄ-ը միասնական միութենական բազմազգ պետություն է՝ կազմված սոցիալիստական ֆեդերացիայի սկզբունքի հիման վրա՝ ազգերի ազատ ինքնորոշման և իրավահավասար սովետական սոցիալիստական հանրապետությունների կամավոր միավորման հետևանքով»: Բայց ահա Ադրբեջանի ընդունած «հիմնական օրենքի» 5-րդ հոդվածում գրված է, թե «Ադրբեջանական ԽՍՀ սուվերենությունը տարածվում է հանրապետության ամբողջ տերիտորիայի վրա, ներառյալ Նախիջևանի ԻԽՍՀ-ը և Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը, որոնք հանդիսանում են Ադրբեջանի անկապտելի մասը»:

ԽՍՀՄ-ում պետական շինարարության 70-ամյա պրակտիկայի (ընդ որում ամենևին էլ ոչ կատարյալ պրակտիկայի) ընթացքում, ինչպես նաև քաղաքակիրթ երկրների պետշինարարության պրակտիկայում չի հիշվում մի այնպիսի ներպետական օրենսդրական ակտ, որի ուժը մի ժողովրդի սուվերենությունը մյուսի սուվերենության ոտնահարումը լինի՝ հակառակ նրա կամքի: Այդ բանը հնարավոր է միայն այն դեպքում, եթե մի պետություն զենքի ուժով ուրիշ ժողովուրդներին հնազանդեցնում է ու ենթարկում իրեն: Բայց եթե մենք նայենք պատմության խորքերը, ապա կտեսնենք, որ ո՛չ թուրքական նվաճողներին, ո՛չ ադրբեջանական մուսավաթականներին չի հաջողվել ծնկի բերել Արցախի անվեհեր ժողովրդին: Մանավանդ այսօր, նույնիսկ միութենական իշխանության թողտվության պայմաններում հարևան հանրապետությանը չի հաջողվում այսպես կոչված «սահմանադրական ճանապարհով» իր սուվերենությունը պարտադրել ԼՂԻՄ-ի ժողովրդին, որն իրավունք ունի ազատ ինքնորոշման:

Մի ժողովրդի սուվերենության տարածումը մյուսի վրա կոպիտ խախտում է ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների, որոնք ինչպես արդեն ասացինք, ամրապնդվել են ԽՍՀՄ սահմանադրության 70-րդ հոդվածում, ինչպես նաև «Կուսակցության ազգային քաղաքականությունը արդի պայմաններում» ԽՄԿԿ պլատֆորմի մեջ, որում մի շարք միջոցներ են նախատեսվել ուղղված խորհրդային ազգային ինքնավարությունների ստատուսի բարձրացմանը և դրանցում բնակվող ժողովուրդների սուվերենության ամրապնդմանը:

Ադրբեջանական «օրենսդիրները», 5-րդ հոդվածում կորցնելով ողջախոհության ունակությունը, հայտարարում են, թե Նախիջևանի Ինքնավար Հանրապետությունը և Լեռնային Ղարաբաղը «Ադրբեջանական ԽՍՀ-ի անկապտելի

մասն են»: Այդ «հայտնագործության» սնանկությունն ապացուցելու համար դիմենք երկրի Հիմնական օրենքի որոշ հոդվածների դրույթներին:

Այսպես, ԽՍՀՄ սահմանադրության 82-րդ հոդվածում գրված է. «ինքնավար հանրապետությունը գտնվում է միութենական հանրապետության կազմի մեջ», այնուհետև 85-րդում գրված է. «Ադրբեջանական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության մեջ է Նախիջևանի Ինքնավար Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունը»: 86-րդ հոդվածում գրված է, թե «ինքնավար մարզը գտնվում է միութենական հանրապետության... կազմի մեջ», իսկ 87-րդում՝ «Ադրբեջանական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության մեջ է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը»:

Ինչպես տեսնում ենք, ԽՍՀՄ սահմանադրությունը ի հակադրություն Ադրբեջանի Գերագույն խորհրդի ընդունած օրենքի, չի գտնում, թե խորհրդային ինքնավարության ձևերը կարող են լինել այս կամ այն միութենական հանրապետության անկապտելի մասը: Խորհրդային ինքնավարությունները զուտ տերիտորիալ գոյացություններ չեն: Դրանք ազգային-տերիտորիալ գոյացություններ են, միութենական ազգային պետականության ձևեր, որոնք մարմնավորում են խորհրդային ազգերի ու ազգությունների պետական ինքնորոշումը:

Պե՞տք է, արդյոք, ցույց տալ ու ապացուցել, որ ո՛չ Նախիջևանի ԻԽՍՀ-ն, ո՛չ Լեռնային Ղարաբաղը մինչխորհրդային շրջանում երբեք չեն գտնվել Ադրբեջանի կազմում, առավել ևս չեն կազմել նրա տարածքի անկապտելի մասը: Ինչպես ադրբեջանցի ընթերցողը, այնպես էլ մեր երկրի ու արտասահմանի հասարակայնության լայն շրջանները վաղուց ծանոթ են պատմական և իրավական շատ փաստաթղթերի, որոնք հաստատում են այդ ճշմարտությունը:

Ո՞վ, դիցուք, հայտնի չէ, որ խորհրդային Ռուսաստանի և քեմալական Թուրքիայի միջև 1921 թվականի մարտի 16-ին կնքված պայմանագրով առանց հայ ժողովրդի կամքը հաշվի առնելու Նախիջևանը (պատմական Հայաստանի Գողթան գավառը) հանձնվեց Ադրբեջանական ԽՍՀ-ին: Պարզ է, որ հայ ժողովուրդը չի հաշտվել և չի էլ կարող հաշտվել այդ բանի հետ: Նա չի կարող ճանաչել այդ միջազգային պայմանագիրը, որն անարդարացի կերպով խլել է Հայաստանին պատկանող տարածքը: Այն փաստը, որ Նախիջևանի Ինքնավար Հանրապետությունում Ադրբեջանի կառավարող շրջանները պլանաչափորեն իրագործել են հայ բնակչության արտաքսում, որն ավարտեցին 1988 թվականին, ոչ մի չափով նրանց հիմք չի տալիս Նախիջևանը համարելու իրենց հանրապետության անկապտելի մաս: Հայտնի է, որ ժողովուրդների դեմ, մարդկության դեմ հանցագործությունները վաղեմության ժամկետ չունեն:

Գրեթե այդպիսի ճակատագիր բաժին ընկավ հայկական Արցախին: Առանց իրավական հիմքի, բնակչության կամքին հակառակ Կավբյուրոյի 1921 թվականի հուլիսի 5-ի անօրինական որոշումով Լեռնային Ղարաբաղը միացվեց Ադրբեջանական ԽՍՀ-ին:

Եվ այսպիսի պատմական փաստերի առկայության դեպքում Ադրբեջանական Հանրապետությունն իրեն իրավունք է վերապահել Նախիջևանի ու Լեռնային Ղարաբաղի ինքնավարություններն իր անբաժանելի մասը համարելու: Ի դեպ, մեզ համար դա նոր բան չէ: Ադրբեջանը չի խորշում հայ ժողովրդի պատմությունը բացահայտ կերպով աղավաղելուց, հայկական պատմական և մշակութային հուշարձանները սեփականացնելուց, մշակույթի գործիչներին իրենը համարելուց: Այնպես որ, հարևան հանրապետության գործողություններում որոշակի տրամաբանությունն ակնառու է:

Ադրբեջանի Գերագույն խորհրդի հապճեպորեն ընդունած այդ օրենքն ամբողջությամբ ուղղված է ընդդեմ ԼՂԻՄ-ի պրոբլեմի արդարացի լուծման: Այդ կապակցությամբ բավականաչափ անկեղծ է հնչում 5-րդ հոդվածի 2-րդ կետը, որտեղ ասված է. «Ադրբեջանական ԽՍՀ տերիտորիան անօտարելի է և չի կարող փոփոխվել առանց Ադրբեջանական ԽՍՀ Գերագույն խորհրդի որոշման՝ հանրապետության ամբողջ բնակչության մեջ անցկացված քվեարկությամբ (հանրաքվեով) արտահայտված նրա համաձայնության»: Դժվար չէ



նկատել, որ հոդվածի նման ձևակերպումն անմիջականորեն ուղղված է ԼՂԻՄ-ի պրոբլեմը նրա իսկ բնակչության մեջ հանրաքվեով լուծելու դեմ: Հիշենք, որ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանն առաջարկեց ԼՂԻՄ-ի պրոբլեմը լուծել հենց նրա բնակչության մեջ հանրաքվե անցկացնելով: Այնուհետև, ելույթ ունեցած Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Վեզիրովը նշեց, որ ԼՂԻՄ-ի հարցով հանրաքվեն պետք է անցկացվի Ադրբեջանի ամբողջ բնակչության մեջ: Ինչպես տեսնում ենք, այդ անիմաստ պահանջն իր արտահայտությունն է գտել օրենքի 5-րդ հոդվածում: Պարզվում է, որ Ադրբեջանի կոմունիստների ղեկավարը և հարևան հանրապետության օրենսդիրները կամ անտեղյակ են հանրաքվեի բուն բովանդակությանը, կամ էլ միտումնավոր կերպով մոլորության մեջ են գցում իրենց ժողովրդին ու երկրի հասարակայնությանը:

Պետական-իրավական տեսանկյունից հանրաքվե նշանակում է սահմանադրական և այլ օրենսդրական ակտերի վերջնական ընդունում, ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի լուծում: Հանրաքվեի օգնությամբ ժողովրդի կամքը կարող է արտահայտվել երեք ձևով. 1. համաժողովրդական քվեարկությամբ, 2. համաժողովրդական հարցմամբ, 3. հանրաքվեով:

Համաժողովրդական քվեարկության են դրվում, մասնավորապես, նոր սահմանադրության ընդունումը, նրա մեջ ուղղումներ և փոփոխություններ մտցնելը (սահմանադրական ռեֆերենդում), ինչպես նաև այլ օրենքների ընդունում (օրենսդրական ռեֆերենդում):

Համաժողովրդական հարցման ձևը կիրառվում է օրենսդրությունը կատարելագործելու դեպքում ժողովրդական լայն զանգվածների կարծիքը բացահայտելու նպատակով:

Հանրաքվեն համաժողովրդական քվեարկությունն է, որը մեծ մասամբ կատարվում է տերիտորիալ փոփոխությունների դեպքում, և հանրաքվեի արդյունքները պարտադիր են պետական իշխանության օրենսդիր մարմինների համար:

Հանրաքվեն գլխավորապես ծառայում է իբրև ազգերի ինքնորոշման իրավունքն իրականացնելու միջոց: Ինչպես միջազգային, այնպես էլ խորհրդային երկրի պրակտիկայում հայտնի են ազգային հարցը ռեֆերենդումի (հանրաքվեի) միջոցով լուծելու (կամ լուծել փորձելու) ոչ քիչ դեպքեր: Օրինակ՝ 1918 թվականի հունվարի 11-ին ՌԽՖՍՀ Ժողկոմխորհը դեկրետ ընդունեց «Թուրքահայաստանի մասին», որի համաձայն Հայաստանը կարող էր հանրաքվեի ճանապարհով իրականացնել իր ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև Ռուսաստանից անջատվելը:

Հանրաքվեի ճանապարհով ինքնորոշման իրավունքը 1923 թվականին ենթադրվում էր պահպանել նաև Լեռնային Ղարաբաղի համար: Սակայն առաջին դեպքում հանրաքվեն խափանեց Թուրքիան՝ 1918 թվականի մայիսին խախտելով Բրեստի պայմանավորվածությունները: Երկրորդ դեպքում Արցախի հայության կամքի արտահայտմանը խանգարեցին Ստալինի և ադրբեջանական ղեկավարների խարդավանքները:

Հանրաքվեի, որպես ժողովրդի ինքնորոշման իրավունքի արտահայտման միջոցի, ամբողջ իմաստը նրանումն է, թե այն ժողովուրդը, որը որոշել է իրագործել ինքնորոշման իր իրավունքը, հանրաքվե է կազմակերպում միայն ինքը և միայն իր տերիտորիայում: Եվ այդ բանում չի կարող մասնակցություն ունենալ այն ժողովուրդը, որից ցանկանում է անջատվել մյուս ժողովուրդը՝ իրագործելով ինքնորոշման իր իրավունքը: Հակառակ դեպքում ռեֆերենդումը (հանրաքվեն) կորցնում է իր իմաստը:

Այսպիսով, ռեֆերենդումը չի կարող անցկացվել Ադրբեջանի ամբողջ տերիտորիայում, այլ միայն ԼՂԻՄ-ի տերիտորիայում և պետք է նրանում մասնակցի ոչ թե Ադրբեջանի ամբողջ բնակչությունը, այլ միայն Լեռնային Ղարաբաղինը:

Սուվերենության մասին օրենքին վերաբերող 5-րդ հոդվածի տրամաբանական շարունակությունն է 12-րդ հոդվածի 3-րդ կետը, ըստ որի Ադրբեջա-

հանրապետության իշխանության բարձրագույն մարմիններն ու ղեկավար գործիչները մշտապես մատնանշում են ԽՍՀՄ սահմանադրության 78-րդ հոդվածը, որտեղ ասվում է, թե միութենական հանրապետության տերիտորիան չի կարող փոփոխվել առանց նրա համաձայնության։ Բայց նրանք լիովին անտեսում են այդ իսկ գործող սահմանադրության շատ այլ հոդվածներ, որոնցում սահմանվում են միութենական հանրապետության իրավասության շրջանակները և ժողովրդի ինքնորոշման իրավունքը։

Կուզենայինք դարձյալ ուշադրություն հրավիրել Լեռնային Ղարաբաղի և Նախիջևանի նկատմամբ տերիտորիալ հավակնությունների խնդրում Ադրբեջանի ղեկավարության և մտավորականության տարօրինակ ու ըստ էության հրեշավոր տրամաբանության վրա։ Դա այն է, որ չնայած համաշխարհային և հայրենական պատմագրությանը, չնայած պատմաբան-ականատեսների աշխատություններին, ըստ որոնց բազում դարերի ընթացքում հանրաճանաչ է եղել դրանց հնագույն և նորագույն Հայաստանի բաղադրամաս լինելը, Ադրբեջանի նորաթուխ գիտնականները սկսել են իրենց ժողովրդին ներշնչել, թե իբր այդ տերիտորիաները պատկանել են Ադրբեջանին։ Այդ կեղծիքը հնարողներին, ինչպես նաև հիշյալ սահմանադրական օրենքի հեղինակներին ու նրանց համախոհներին հարկավոր էր իմանալ ու հիշել, որ «Ադրբեջանը» որպես քաղաքական-աշխարհագրական հասկացություն, հայտնվել է սոսկ XX դարի 20-ական թվականներին՝ շնորհիվ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի և ժողովուրդներին ինքնորոշման իրավունք ընձեռելու։ Նրանք չպետք է մոռանային, որ Նախիջևանի մարզը Ադրբեջանի կազմի մեջ է մտցվել համաձայն 1921 թվականի մարտին Խորհրդային Ռուսաստանի և Թուրքիայի միջև կնքված խայտառակ պայմանագրի, որում ակտիվ դեր է կատարել Ստալինը, ճիշտ այնպես, ինչպես որ նրա իսկ հարկադրանքով Կավբյուրոյի նույն տարվա հուլիսին կայացրած տխրահռչակ որոշմամբ Ադրբեջանին է հանձնվել Լեռնային Ղարաբաղը։

Քաղաքական շանտաժի գագաթնակետն է ընդունված օրենքի այն պնդումը, թե Ադրբեջանը իրեն է վերապահում ԽՍՀՄ-ից դուրս գալու իրավունքը։ Այսպես կոչված՝ սահմանադրական օրենքի հեղինակներն անգամ ժամանակ չեն գտել աչքի անցկացնելու ԽՍՀՄ կազմավորման դեկլարացիան, որտեղ դեռևս 1922 թվականի դեկտեմբերի 30-ին գրվել է, թե «... յուրաքանչյուր հանրապետություն ապահովված է Միությունից ազատ կերպով դուրս գալու իրավունքով...», որը ամրապնդված է գործող սահմանադրության 72-րդ հոդվածով և բոլոր միութենական հանրապետությունների սահմանադրությունների համապատասխան հոդվածներով։

Ադրբեջանի իշխանության բարձրագույն մարմինների նոր դեմարշի վերլուծությունը թույլ է տալիս հասկանալ, թե ինչպիսի ուժեր են ոգևորում ԼՂԻՄ-ի և Հայկական ԽՍՀ-ի շրջափակումն իրագործողներին, թե Հատուկ կառավարման ռեգիոնում ինչպիսի ուժեր են զինված ջոկատներ ստեղծել, որոնք պայթեցնում են կամուրջներ ու ճանապարհներ, սպանում խորհրդային բանակի սպաներ ու զինվորներ։ Այդ ուժերի մտքերն ու գործերն ուղղված են լենինյան ազգային քաղաքականության իրավական, բարոյական և բարձր մարդասիրական հիմքերը սասանելուն, ընդդեմ խորհրդային ֆեդերացիայի դեմոկրատական սկզբունքների, որոնք կոչված են վերածնելու և անդառնալիորեն հաստատելու մեր բազմազգ հասարակության կյանքի բոլոր ոլորտների հեղափոխական վերակառուցումը։

Ադրբեջանի որոշակի շրջանների մտքերն ու պրակտիկ գործունեությունը հիշեցնում են դարասկզբին այնտեղ վարվող քաղաքականությունը, որի հետևանքով 1905 թվականին Բաքվում կազմակերպվեց հայերի զանգվածային կոտորած։ Ինչպես հայտնի է, այդ անմարդկային գործողության քաղաքական գնահատականը տվել է Վ. Ի. Լենինը «Հեղափոխություն և հակահեղափոխություն» հոդվածում։

Հայերի 1905—1907 թվականների Բաքվի կոտորածը, օսմանյան Թուրքիայի կազմակերպած 1915—1921 թվականների ցեղասպանությունը, սումգայիթյան վանդալիզմը, դրան հաջորդած Կիրովաբադի, Խոջալուի և այլ վայրերի բռնություններն ու ջարդերը պանթուրքիզմի ռեակցիոն ազգային քաղաքականության շղթայի օղակներն են։



Հայ ժողովուրդը համոզված է, որ այդ քաղաքականությունը երբեք չի համապատասխանել Ադրբեջանի աշխատավոր ժողովրդի շահերին։ Ադրբեջանի առաջադեմ ուժերը դատապարտում են իրենց կեղծ հայրենասերների անխոհեմ գործողությունները՝ ուղղված հարևան հանրապետությանը, մանավանդ երկրաշարժի հետևանքների հետ կապված այս խառնակ ժամանակներում։ Այդ բանի օրինակ է Բաքվի քաղաքային խորհրդի վերջերս ընդունած դիմումը հանրապետության առողջ ուժերին, որտեղ մասնավորապես ասված է. «Քողարկվելով ԼՂԻՄ-ի վերաբերյալ հարցով, հանրապետությունում մոլեգնում են մաֆիան և նրա հետ միասնական շղթայով կապված նման տարրերը, հակախորհրդային և հակակոմունիստական խմբավորումները, որոնք կապի մեջ են մտել մեր երկրի տարբեր ռեգիոններում գործող ծայրահեղական ազգայնական խմբերի հետ...» (մեջբերումը կատարված է Վ. Ա. Սիդորովի՝ «Аргументы и факты» շաբաթաթերթի թղթակցի հետ ունեցած հարցազրույցից, տե՛ս № 39)։

Ադրբեջանական ժողովրդի լավագույն ուժերը ինչպես սումգայիթյան վանդալիզմի, այնպես էլ դաժան շրջափակման այս օրերին երևան են բերել իրենց իսկական մարդասիրական գծերը, ազատել են հայազգի շատ մարդկանց՝ իրենց գլուխը կորցրած, ազգային ատելությունից կուրացած խմբերի հաշվեհարդարից։ Հայ ժողովուրդը վստահ է, որ մեր ժողովուրդները ԼՂԻՄ-ի, ինչպես նաև Նախիջևանի ԻԽՍՀ-ի պրոբլեմի արդարացի լուծումից հետո նույնպես կողք-կողքի կապրեն բարիդրացիական հարաբերություններով։ Ազգամիջյան թշնամանքի ոգեշնչողներն ու կազմակերպիչները, զանազան սպառնալիքների ու շանտաժների հեղինակները գալիս են ու գնում, իսկ ժողովուրդները մնում են և ապրում հավիտյան։

# ՇԵՆԵՐԸ ՆՈՐ ԶԳԵՍՏ ԿՀԱԳՆԵՆ

Տ. ԹԱՆԴԻԼՅԱՆ

## ՄԻ ՍԻՐՏ ՈՒ ՄԻ ՄԱՐՄԻՆ ԴԱՐՁԱԾ

Հազարավոր արթիկցիներից ոչ մեկը չգիտեր, չէր կարող իմանալ, թե ինչ է տեղի ունենալու հաջորդ ակնթարթին, և ինչպես ընդամենը վայրկյաններ անց հիմնիվեր շուռ է գալու կյանքի ընթացքը: Տանը, հիմնարկում, հանքերում, գործարաններում ու ձեռնարկություններում, ֆերմաներում ու գրասենյակներում, դպրոցներում ու մանկապարտեզներում, ամեն, ամեն տեղ օրը սովորական ուղին էր բռնել, և հորիզոնն ի վեր քմայքոտ ժպտալով բարձրանում էր պճնազարդված մի արև՝ ցրելով ձմեռվա պատառները: Եվ հանկարծ...

....—Դեռ չհասկանալով, թե ինչ է կատարվում, վեր թռանք տեղից ու կարկամած իրար երեսի էինք նայում,—պատմում է կուսշրջկոմի երկրորդ քարտուղար Կոլյա Ղալթախչյանը: —Ապակիները զնգում էին, հատակն ասես փախչում էր ոտքերի տակից: Թվում էր, թե երկինքը փուլ է գալիս: Ակնթարթներ հետո, որոնք հավերժության նման երկար էին, գետինը դադարեց ծառս լինել, հողը հանդարտվեց, և լռություն իջավ քաղաքի վրա: Մեր սերունդը երկրաշարժ չէր տեսել և պատկերացում չունեինք նման պարագայում առաջին անելիքի մասին: Կուսակցական աշխատողի փորձը, սակայն, հուշում էր հետագա գործողությունները: Հավաքվեցինք իսկույն շրջկոմի առաջին քարտուղար Նադիր Սահակյանի առանձնասենյակում, անմիջապես մշակեցինք յուրաքանչյուրիս երթուղին ու մեկնեցինք գյուղեր: Շրջկոմում արդեն ստացվում էին առաջին լուրերը՝ բոլոր բնակավայրերում վնասված շենքեր շատ կան, իսկ մարդկային զոհեր՝ ոչ: Դա մխիթարում էր: Բայց և անհանգստացնում էր հարցը՝ իրենց մո՞տ է միայն երկրաշարժն այդպես ուժեղ եղել, թե՞ այլ տեղերում ևս: Ցանկացան կապվել Լենինականի հետ՝ օգտագործելով բոլոր միջոցները: Չստացվեց: Թողեցին ավելի հարմար պահի և զբաղվեցին սեփական ցավերով: Ստացվող հաղորդումները ուրախացնող չէին. էլեկտրագծերը վնասվել են (դրանք ուղիղ մի շաբաթ չեն աշխատել), ջուր չկա, եղածը խիստ կեղտոտված է, խմելու, օգտագործելու համար առայժմ ոչ պիտանի: Ամենուր վթարված, ճաք տված, ապրելու և աշխատելու համար վտանգավոր դարձած բնակելիներ, շինություններ, օբյեկտներ են: Ֆերմաներում հին գոմեր են քանդվել՝ իրենց տակ ճզմելով 84 գլուխ անասուն:

Հետագայում ավելի ստույգ կդառնան տվյալները. պարապմունքների համար այլևս պիտանի չեն 25 դպրոցներ՝ 4600 աշակերտական տեղով: Հնարավոր չէ շարունակել աշխատանքը մանկապարտեզներում: Արդյունաբերությունը ընդհանուր առմամբ կրել է 30 միլիոն, գյուղատնտեսությունը՝ 50 միլիոն ռուբլու վնաս: Տարբեր աստիճանի փլվածքների ու վթարների են ենթարկվել 219 գոմ, 136 գյուղատնտեսական օբյեկտ: Մեծ թիվ են կազմում բնակության համար անօգտագործելի դարձած շենքերը. տարբեր աստիճանի վնասվածքներ են ստացել 5000 անհատական տներ, կորսվել է 108 հազար քմ բնակմակերես: Շուրջ 13 հազար մարդ մնացել է անօթևան:

Ցավերը գալիս մեկ-մեկ չեն գալիս. դեկտեմբերի 7-ից դեռ շատ առաջ Արթիկում ևս, ինչպես հանրապետության մյուս շրջաններում, լարված, պայթյունալի դրություն էր: Ազգամիջյան հարաբերությունների անսովոր բարդացումը իր հետ բազմաթիվ պրոբլեմներ էր բերել, և սուր սլաքով խրվել նաև հանքագործների գողտրիկ քաղաքի սիրտը: Բաքվից, Կիրովաբադից, Սումգայիթից, Ադրբեջանի տարբեր վայրերից արտաքսված, բռնագաղթված ու փախստական 2—3 հազար հայեր հասել էին այստեղ՝ դատարկաձեռն, անտուն ու անօթևան: Շրջանի կուսակցական ու խորհրդային մարմինները, Արթիկի ողջ ժողովուրդը բարեգութ կարեկցանքով ընդունել էին նրանց, տեղավորել սեփական հարկերի տակ, առողջարաններում ու հանրակացարաններում: Ութ ընտանիք արդեն պետական բնակարաններ էին ստացել, մտածում էին մյուսների կարիքը վերջնականապես հոգալու մասին, երբ վրա հասավ տիեզերական աղետը: Դղրդացող, դժոխքի փոխված Լենինականից մի-երկու ժամ անց առաջին փրկված գուժաբերները եկան, հետո եկան նաև Սպիտակից, Կիրովականից, Ստեփանավանից, Ախուրյանից, եկան սարսափահար, լայնացած աչքերով մանուկներ, ողբացյալ ծերունիներ ու կանայք, ցավից ու անզորությունից ատամները սեղմած երիտասարդներ, որոնք, յուրայիններին մի կերպ ծածկ ապահովելով, կրկին հետ դարձան դեպի իրենց քաղաքները, դեպի նրանց տնքացող փլատակները:

Արթիկի հողը, բարեբախտաբար, դիմացել էր ընդերկրյա հարվածներին ու կարողացավ ընդունել գեհենից փախչողներին: Շրջանի բնակիչների թիվը միանգամից անցավ 70 հազարից: Ո՞վ էր՝ բարեկամ էր թե պատահական ծանոթ, հարազատ էր թե արյունակից, նշանակություն չուներ. արթիկցիները բոլորին վերցնում էին իրենց հարկի տակ, սնունդ ու հագուստ տալիս, կիսում պատառ հացը, մինչև սարսափից ուշակորույս մարդիկ կրկին կսթափվեին, ոտքի տակ ամուր հող կզգային: Կոմունիստ Կ. Ղալթախչյանը իր հարկի տակ էր առել աղետյալ 13 ընտանիք, Մ. Զարչյանը՝ 10, Ն. Ստեփանյանը՝ 11 և այդպես շատ-շատերը, անթիվ-անհաշիվ: Եվ դա ոչ թե մի օր կամ երկու, այլ օրեր, շաբաթներ, ամիսներ: Հյուրընկալության այդպիսի չափանիշները դուրս էին ամեն տեսակի պատկերացումներից:

Ում ոտքը բռնում էր, ով ի վիճակի էր, ով ուժ ուներ, նետվում էր Լենինական՝ դեռ չպատկերացնելով կատարվածի իրական վիճակը:

— Քաղաքը չկար,— պատմում է կուսշրջկոմի կազմակերպական աշխատանքի բաժնի վարիչ Մուշեղ Զարչյանը, որը երիտասարդների մի խմբով մեկնել էր այնտեղ:— Անհնար է սովորական բառերով նկարագրել-ներկայացնել այն պատկերները, որոնք բացվեցին մեր աչքերի առջև: Ոչինչ չէր երևում, ծուխը, փոշին, մուրը փակել էին արևի դեմքը, փլվածքների տակից հրդեհի բոցն էր ելնում, հողը տնքում, ցնցվում էր իր տակ կենդանի թաղված մարմինների շատությունից: Հեծեծանքներից, անզոր վազվռտուքից, դես ու դեն նետվող հրաշքով փրկված հատուկենտ ավտոմեքենաների աղեկտուր սուլոցներից դեռ մի-երկու ժամ առաջվա ծաղկուն քաղաքը դժոխքի էր վերածվել: Դղրդալով շարունակում էին փուլ գալ երերացող պատերը՝ իրենց հետ ավերելով դեռևս կանգուն մնացած մերձակա ամեն ինչ...

Բոլորը գիտակցում էին՝ ձեռքով, սովորական գործիքներով այստեղ ոչինչ անել հնարավոր չէ: Տեխնիկա էր պահանջվում, հզոր տեխնիկա՝ ավտոմեքենաներ, բուլդոզերներ, էքսկավատորներ, կռունկներ... Քիչ էր, չկար, չկային: Չկային հաց, լույս, ջուր, բուժամիջոցներ, խառնաշփոթ էր ամենուր: Այդ թոհ ու բոհի մեջ զինվորական ու ներքին ծառայության կարգախմբերը փորձում էին ինչ-որ չափով կարգ ու կանոն հաստատել, մարդկանց օգնություն ցույց տալ:

Զինվորներ, միլիցիոներներ... Եթե առաջինների մասին անմիջապես ու շատ է գրվել, ապա երկրորդները կարծես մնացել են ստվերում՝ իրենց բաժին դափնիները սիրով զիջելով մյուսներին: Մինչդեռ նրանք ևս արժանի են երախտագիտության:

ԽՍՀՄ ՆԳՄ քաղվարչության կուսակցական-քաղաքական աշխատանքների ծառայության՝ դեկտեմբերի 19-ի և 22-ի «Մարտական թերթիկի» համարները նվիրված են արթիկցի միլիցիոներներին, որոնք այդ դժնդակ օրերին, չիմանալով քուն ու հանգիստ, շարունակ ոտքի վրա էին, շարունակ իրենց ծառայողական բարձրության վրա: Մասնավորապես ահա թե ինչ է ասվում «Թերթիկ»-ում. «Դեկտեմբերի 7-ին, երկրաշարժից անմիջապես հետո, Արթիկի քաղշրջ ՆԳ բաժնում կազմակերպվեց հատուկ ջոկատ, որն իսկույն մեկնեց աղետից ավերված Ախուրյան: Նրա գործողությունները ղեկավարում էր կոմունիստ, քաղշրջ ՆԳ բաժնի պետի քաղգծով տեղակալ, միլիցիայի մայոր Մ. Հովհաննիսյանը: Միլիցիոներները փլատակներից հանեցին մարդկանց, ծառայողական և անձնական մեքենաներով վիրավորներին տեղափոխեցին Արթիկ, շուրջօրյա հսկողություն սահմանեցին հասարակական կարգ ու կանոնի վերականգնման, նյութական արժեքների պահպանման վրա: Ծառայության ընթացքում ճանապարհահսկիչ-տեսուչներ, միլիցիայի ավագ լեյտենանտ Է. Թարջումանյանի և շարքային Ա. Գևորգյանի կողմից վնասազերծվել են գանձարկղից գողություն կատարած երկու հանցագործներ: Միլիցիայի կապիտան Մ. Ջաֆարյանը բռնել է մի կողոպտիչի՝ մանկապարտեզի շենքում: Ավագ լեյտենանտ Ա. Աբրահամյանի, միլիցիայի ավագ Մ. Պետրոսյանի և կրտսեր սերժանտ Վ. Մինասյանի զգոնության շնորհիվ կանխվել են կողոպուտները Լենինականի քաղխորհրդի, փոստատան, հանրախանութի շենքերում»:

Զրուցակիցներս խնդրում են գրել Արթիկի քաղշրջ ՆԳ բաժնի պետ, միլիցիայի փոխգնդապետ Ռոբերտ Ջախոյանի մասին ևս, որի ղեկավարած շուրջ 70 հոգիանոց անձնակազմը քաղաքացիական ու մարտական ծառայության անուրանալի օրինակներ տվեց:

Ամենուր լեգենդի պես էին պատմում նաև բժիշկների սխրանքի մասին: Նրանք սառնասիրտ էին անգամ ամենածայրահեղ պահերին: Իսկույն կազմակերպեցին շարժական հոսպիտալներ, բուժկետեր բակերում, հրապարակներում, դեռևս անվթար մնացած շենքերում, ուր կարելի էր տեղադրել թեկուզ մեկ մահճակալ: Կոստյա Մոսինյանի, Աղասի Ստեփանյանի, Համլիկ

---

ԹԱՆԴԻԼՅԱՆ ՏԱՆՅԱ ԲԱՂԻՇԻ— ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ:

Գրիգորյանի, Լենա Թարլոյանի, Ռոբերտ Դումանյանի, բուժանձնակազմի բոլոր-բոլոր անդամների անուններն այդ օրերին շրջանի մարդկանց շուրթերին էին: Չկար ընդհանրապես մի հոգի, որ կողքից դիտողի դերում լիներ, որ համընդհանուր ցավը իրենը չհամարեր ու չայրվեր մի բան անելու, ինչ-որ ձևով մերձավորին օգնելու ցանկությամբ: Կոմունիստ մեխանիզատոր Էդիկ Աջամօղլյանը մեկ շաբաթ գիշեր-ցերեկ աղետի գոտում էր, իր կռունկով օգնում էր փրկարարներին, իսկ երբ հզոր մեքենան անգամ անզոր էր լինում, նա ինքն էր նետվում դեպի փլատակները, մերկ ձեռքերով փորձում հետ քաշել ծանրածանր մետաղի կույտերը:

Կուսշրջկոմի առաջին քարտուղար Նադիր Սահակյանին հարցրի, թե կուսակցական ո՞ր կազմակերպություններն են առավել մեծ ակտիվություն դրսևորել, և նրա՝ ցավագին զարմանքով ինձ հառնված հայացքում տարակուսանք հայտնըվեց.

—Այսքանից հետո տալ մեկն ու մեկի անունը, առանձնացնել ընդհանուրից, մի՞թե վիրավորական չի հնչի: Ես ինձ թույլ չեմ տա այդպիսի բան անել: Ողջ Արթիկի շրջանը, բոլոր կազմակերպությունների անդամները մի սիրտ ու մի մարմին էին: Ուրախանում էին միասին յուրաքանչյուր փրկված կյանքի համար և միասին էլ արցունք թափում զոհվածների վրա:

## ՔԱՈՍԻՑ ԴԵՊԻ ՊԱՐԶԵՑՈՒՄ

Քանի դեռ տեղյակ չէին Լենինականի ու Սպիտակի ողբերգությունից, քանի դեռ չէին իմացել Կիրովականի ու Ստեփանավանի հիմնահատակ եղած տասնյակ գյուղերի ու ավանների, կործանված ու հաշմված հազարավոր մարդկային կյանքերի մասին, քանի դեռ ողբերգության ահավոր չափերին սոսկ ականջալուր էին և ոչ ականատես,—սեփական ցավը աչքերին շատ մեծ էր թվում: Եվ առաջին ժամերին դըժվար էր կառավարման բոլոր թելերը կրկին ձեռքն առնել: Սակայն խառնաշփոթից կարողացան շուտ գլուխ հանել. տեղը չէր ճաք ու ճեղքի համար լաց լինելու, երբ ամեն ինչ շատ ավելի վատ ու ողբերգական էր: Աղետից մի քանի ժամ չանցած կուսշրջկոմում հավաքվեց շրջանի ողջ ակտիվը, կազմակերպվեց կոորդինացնող հանձնաժողով, որի գլուխ կանգնեց կուսշրջկոմի առաջին քարտուղար Նադիր Սահակյանը: Կազմի մեջ մտան շրջխորհրդի գործկոմի, խոշոր հիմնարկ-ձեռնարկությունների, կուսկազմակերպությունների ղեկավարներ ու շարքային կոմունիստներ:

Երկու հարց առաջին պլանում էին՝ կազմակերպել սննդի մատակարարում աղետյալ շրջաններին և հոգ տանել սեփական վերքերի ամոքման մասին:

Արթիկը դարձավ հատկապես Լենինական քաղաք հասցվող սննդի ու ջրի սպասարկման կենտրոն: Մարդիկ մորթում էին սեփական անասունները, տաք հաց ու տապակա պատրաստում և անմիջապես էլ տեղ հասցնում: Խնայած մի բուռ ալյուրից անգամ հաց էին թխում, վերջին գրամ յուղն ու պանիրը տալիս: Ոչ ոք չէր մտածում «սև օրվա» մասին, պահածոները, աղծուները, հյութերն ու մուրաբաները հարյուրավոր բանկաներով հասցվում էին աղետյալներին ու նրանց փրկարարներին:

Իսկ երբ սկսեց սնունդ ստացվել հանրապետության այլ վայրերից և ապա՝ Միության ու արտասահմանի տարբեր ծայրերից, անմիջապես կազմակերպվեցին կամավորական ջոկատներ, որոնք փաթեթավորում, դասավորում էին սըննդամթերքը և իսկույն ուղարկում: Այդ կերպ աշխատում էին գիշեր ու զոր՝ ամեն անգամ պատրաստելով 60—70 հազար փաթեթ: Գերզբաղվածությամբ անցնում էին օրերն ու շաբաթները, ժամանակը սահում էր այլ ռիթմով, այլ բովանդակությամբ:

Հետզհետե լարվածությունը թուլանում էր, և արդեն կարելի էր «սեփական տան» մասին մըտածել: Դպրոցներում պարապմունքները դադարել էին, մանկապարտեզ հնարավոր չէր հաճախել: Սկսվեց մի նոր ծանր շրջան՝ էվակուացիայի շրջանը: Առաջինը արթիկցիներին ձեռք մեկնեցին Լատվիայի «Հայկական ընկերություն» կազմակերպության անդամները: Կարճ ժամանակում նրանց հրավերով և անմիջական ջանքերով Լատվիա հասավ էվակուացված երեխաների քարավանը՝ 1200 աշակերտով: Նրանց հետ էին ուսուցիչները, որոնք տանում էին գրքեր, տետրեր, գրենական անհրաժեշտ պիտույքներ: Ուսումնական տարին այնտեղ էլ ավարտվեց: Արթիկցի ծնողները, որոնց շարունակ տեղյակ էր պահվում իրենց երեխաների ֆիզիկական ու բարոյական վիճակի մասին, լատիշ բարեկամների հանդեպ պարտքի տակ չմնացին. դրամ հանգանակելով՝ Լատվիա մեկնեց շինարար-արթիկցիների մի ջոկատ, որը Ցեսիս քաղաքում, ուր ամենից շատ էին հայ երեխաները, կառուցեց հուշարձան-աղբյուր՝ ի նշան երկու ժողովուրդների բարեկամության ու նրանցից մեկի անհուն երախտագիտության՝ մյուսի հանդեպ:

## ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ ԳԱԼԻՍ ԵՆ ԱՐԹԻԿ

Շրջանը այսօր ընդարձակ շինհրապարակ է հիշեցնում: Զրնգում են վերամբարձ կռունկների զանգերը, ազդանշանում են բեռնատարները, հռնդում են հզոր էքսկավատորները: Քանդվում, վերաշինվում, կառուցվում է մի նոր Արթիկ՝ իր կենտրոնով, իր գյուղերով ու շեներով: Դեռ հունվարի վերջերին ու փետրվարի սկզբներին այստեղ դրվեցին առաջին նորակառույցների հիմքերը, որոնց հեղինակները բելոռուս և լիտվացի շինարարներն էին: Թե առաջինների՝ «Բելոռուսգյուղշին» և թե երկրորդների՝ «Լիտվքաղշին» ՇՄՇ-ների ծրագրերը խիստ ընդարձակ են: Մանրամասնությունների մեջ չմտնելով՝ ասենք միայն, որ նրանց ուժերով կառուցվելու են գյուղերում 125 անհատական բնակարաններ, 1100 տեղով հինգ ակումբ, 1400 աշակերտի համար դպրոցներ, 180 տեղով նոր մանկապարտեզներ, հիմնովին նորոգվելու են 2600 տեղով դպրոցներ, 450 տեղով մանկապարտեզներ: Կկառուցվեն 9000 գլխի համար նոր ոչխարանոց և 2600-ի համար՝ նոր կովանոցներ: Քաղաքում ևս լիտվացիները ծնունդ կտան նոր դպրոցների ու մանկապարտեզների, բնակելիների և արդյունաբերական օբյեկտների:

—Իսկ տեղացիների՞ մասնակցությունը շինարարական աշխատանքներին,— հարցնում եմ:

—Կուսշրջկոմի բյուրոյի առաջին իսկ նիստում, որը անցկացվել է երկրաշարժից անմիջապես հետո, մենք արդեն խոսել ենք այդ մասին, անհանգստացել,—պատասխանում է Ն. Սահակյանը: —Շատ ամոթ բան կլիներ, եթե ուրիշները մեզ շտապեին օգնության, իսկ մերոնք թողնեին իրենց տունուտեղը և մեկնեին օտար ափեր: Մինչև այս աղետը Արթիկը, հանրապետության շատ շրջանների նման, ամեն գարնան նյարդային վիճակ էր ապրում այն բանից, որ իր աշխատող ձեռքի ծաղիկը՝ 1900-2000 երիտասարդ, կարող տղամարդիկ, բռնում էին «խոպանի» ճանապարհը՝ թողնելով տուն ու աշխատանք, կանանց ու երեխաներին: Մենք բոլորովին էլ բավականություն չէինք զգում վերջիններիս քավության նոխազ դարձնելուց, բայց վարչական և այլ կարգի միջոցներով ամեն կերպ ձգտում էինք մեր մարդկանց հետ բերել, իրենց տուն ու տեղին հենարան դարձնել: Միջոցառումները, ցավոք, չնչին արդյունք էին տալիս: Իսկ այս գարնանը, առանց հատուկ «հրավերքի», շրջանում մնացին հարյուրավոր խոպանչիներ, և ընդամենը 5—6 հարյուր մարդ մեկնեց: Աստված իրենց հետ... Մնացածները մի կետում լիովին համամիտ են մեզ՝ շրջանը պետք է վերակառուցել, դարձնել ավելի լավը: Եվ դա անել սեփական ձեռքերով, սեփական քրտինքով:

Կուսշրջկոմում հրավիրել ենք «խոպանիստ» համաբրիգադավարների խորհրդակցություն, համատեղ քննարկել հետագա անելիքների ծրագիրը: Տղաները կազմակերպել են «Շինարար» և «Բելի («Белый») կոոպերատիվները, որոնց շարքերում ընդգրկվել են մոտ 1100 վարպետ որմնադիրներ, թիթեղագործներ, հյուսներ: Ասված է՝ ամեն գործի սկիզբն է դժվար. այստեղ էլ հարկ եղավ հաղթահարել շատ դժվարություններ, մինչև գործերն աստիճանաբար հունի մեջ կմտնեին: Մերթ նախագծեր չկային, մերթ՝ բավարար տեխնիկա ու սարքավորումներ, մերթ շինանյութ... Այժմ մեր ամենացավոտ հարցը քարի և գաջի պակասն է...

— Արթիկ և... քարի պակասությո՞ւն:

—Դրա մեջ զարմանալու ի՞նչ կա. մեզ ևս չափավոր քանակի են տալիս, դրան գումարած վըրթարված հանքերն ու քարհատ մեքենաների հետզհետե ավելացող դեֆիցիտը: Ժամանակին մտքով իսկ չենք անցկացրել, թե մի օր դա կդառնա մեր այրող ցավը՝ կապված Լենինականի՝ Միության մեջ միակ քարհատ մեքենաների արտադրության գործարանի ավերվելու հետ: Աղետը տեղի է ունեցել, և նոր միայն ծառացել է մեքենա չունենալու հարցը: Իտալացի բարեկամները խոստացել են օգնել մեզ, և հույսով սպասում ենք նրանց եղբայրական ձեռքմեկնումին:

—Ասացիք, որ նախագծերի հարցում բողոքներ չունեք:

—Ոչ այն է՝ չունենք, ոչ այն է՝ ոչ: «Երևաննախագիծ» ինստիտուտը հիմնականում կատարել է քաղաքում գտնվող ամենատարբեր օբյեկտների ու բնակելիների նախագծերը կազմելու իր աշխատանքը: Այստեղ, ճիշտն ասած, բողոքելու բան չկա, իսկ ինչ մնում է գյուղին... մի տեսակ ոչ հստակ դրություն է, կամ պատվիրատուն է անհայտ, կամ նախագծողը. պատահում է՝ օրերով փնտրում ու չենք գըտնում, թե այս կամ այն օբյեկտի նախագծմամբ ով է զբաղվում, կամ արդյո՞ք զբաղվում է: Ներկայումս մեր գյուղերում միաժամանակ կառուցվում են 400 բնակարաններ: Մենք թույլատրել ենք դա անել պայմանով, որ գյուղի ընդհանուր տեսքը չզցեն, համայնապատկերը ավելի ակնահաճո դառնա: Մի փաստ անժխտելի է՝ եթե շինաքարի պակասը չլինի, այդ 400-ը մի գիշերվա մեջ սնկի նման կաճեն, և ամեն մեկը կցանկանա իր հարկն իր ձեռքով բարձրացնել ու ձևավորել: Հողի հարցն այլևս պրոբլեմ չէ, տալիս ենք գրեթե ըստ ցանկության: Իսկ շինաքարի պակասն ու առանձին նախագծերի բացակայությունը մեզ տեմպից գըցում են: Մի բան էլ,— և սա շինարարությանը մոտ կանգնած բոլոր մարդկանց մտքով էլ անցնում է,— մենք խոսում ենք եղբայրական օգնության մասին, ինչ խոսք, դա շատ մեծ, շատ արժեքավոր գործոն է, բայց արդյունքը տասնապատիկ ավելի բարձր կլիներ, եթե մեր շեֆերը մեզ կարողանային ապահովել առաջին հերթին շինանյութերով ու տրանսպորտային միջոցներով, նոր միայն մտածեին աշխատող ձեռք ուղարկելու մասին: Մի շարք առումներով դա մեզ այնքան էլ ձեռք չի տալիս, իսկ նյութական օգնությունից չէինք հրաժարվի: Տարբեր առիթներով լսում ենք, որ իրենց հանրապետություններում էլ շինարար մարդկանց համար մինչև կոկորդը գործ կա, իսկ մենք նրանց քարշ ենք տալիս հազարավոր կիլոմետրեր հեռու: Մինչդեռ ինքներս չգիտենք, թե ինչպես պահպանենք մեր շինարարների շուրջտարյա զբաղվածությունը և այս պարագայում հարցն ինքնըստինքյան կլուծվեր:

— Շրջկոմն, անշուշտ, պասիվ հայեցողի դերում չէ:

—Բնականաբար: Մենք չենք կարող միայն ցանկալի երազներ փայփայելով յոլա գնալ կամ գործն ավարտված համարել: Դուք ինքներդ համոզվեցիք, որ ամենատարբեր օղակների գործունեությանը մեր աշխատողները քաջատեղյակ են, գիտեն նրանց հաջողությունների, ձախողումների, թերությունների ու առաջխաղացումների մասին: Բյուրոյի մի նիստ չի եղել, ուր այդ բոլոր հարցերի շուրջ խոսակցություն չլիներ և գործնական որոշում չընդունվեր՝ կատարման կոնկրետ հանձնարարականներով: Հունվար ամսին մենք հիմնականում կազմակերպչական հարցեր էինք քննարկում՝ ստեղծվել են շրջանային շտաբ, հանձնաժողովներ, որոնց առաջին խնդիրն է համարվել պատճառված վնասի չափերի ճշգրտումն ու հաշվառումը: Փետրվարի 28-ին լսել ենք շրջխորհրդի գործկոմի նախագահի հաղորդումը՝ երկրաշարժի հետևանքների վերացման նպատակով տարվող առաջին աշխատանքների ու դրանց արդյունքների վերաբերյալ: Ապրիլի 28-ին տեղի է ունեցել կուսշրջկոմի պլենումը: Կոմունիստներին հստակ ինֆորմացիա է տրվել կատարված վերականգնողական աշխատանքների մասին, նշվել հետագա անելիքները: Բյուրոյի նիստ ենք պլանավորել անցկացնել շինարարական կուսկազմակերպությունների ղեկավարների մասնակցությամբ: Օրակարգում՝ կոմունիստների մասնակցությունը վերականգնողական աշխատանքներին՝ ծառացած պրոբլեմների ու խնդիրների ֆոնի վրա:

Համընդհանուր աղետը իր հետ ևս մեկ դժվարություն բերեց, որ մինչ այդ ստվերում էր: Արթիկը, արդյունաբերական շրջան լինելուց բացի, ունի նաև զարգացած գյուղատնտեսություն: Բավական է արձանագրել թեկուզ մի փաստ, որը կարող է պատկերացում տալ նրա մինչերկրաշարժային մակարդակի մասին. հեկտարի հաշվով հացահատիկի բերքը կազմել էր 40—45 ցենտներ, նախատեսված 20 հազար 635 տոննայի փոխարեն կուտակվել էր շուրջ 23 հազար տոննա կեր: Հեկտարից ավելի շատ՝ 50—59 ցենտներ հացահատիկ են ստացել Հայրենյացում, Հոռոմում, Գետափում, Հառիճում...

Շրջանը նաև մշակում էր 300 հեկտար ճակնդեղ, որից տարեկան շուրջ 13 հազար տոննա համախառն բերք էր ստանում: Մոտավորապես 1000 մարդ տարբեր օղակներում զբաղված էր ճակնդեղի խնամքի ու մշակության, հավաքի ու տեսակավորման, պահեստավորման ու մթերման աշխատանքներով: Երկրաշարժի ու նրա աղետաբեր հետևանքների պատճառով շաքարի ճակնդեղի արտադրությունը հանվեց նրա ցանքով զբաղվող բոլոր շրջաններից: Դա ամենուրեք ընդունվեց գոհունակությամբ. կանայք ազատվում էին կնոջ համար անմարդկայնորեն ծանր, հոգնեցուցիչ աշխատանքից: Սակայն դա իր հետ բերեց նոր մտահոգություն՝ իսկ ինչո՞վ զբաղեցնել նրանց, ո՞ւր տեղավորել, ի՞նչ աշխատանք գտնել ազատված բանվորական ձեռքի համար:

—Այս առնչությամբ որևէ քայլ արվո՞ւմ է:

—Ճակնդեղագործությունը որպես ոչ եկամտաբեր ճյուղ մեզ արդեն սկսել էր անհանգստացնել,—պատասխանում է Ն. Սահակյանը,—ինձ թույլ չեմ տա ասել, թե այն միշտ հետ մնացող է եղել: Քավ լիցի: Բայց ընդհանուր թողտվության ու բարեհոգության ժամանակները նրա վրա ևս իրենց սև կնիքը դրին: Մեքենայությունների, խաբեբայության, ստվերային էկոնոմիկայի շոշափուկները աստիճանաբար իրենց մեջ առան նաև այդ բնագավառը: Իրական հումքի փոխարեն հրամցվում էին հղկված թվեր, հավելավճարներ ու պարգևներ էին տրվում ուռճացված, ըստ էության պղպջակի կյանք ունեցող ցուցանիշներ գրանցողներին, իսկ ովքեր նկատում ու ցանկանում էին դրա դեմն առնել, ամբաստանվում ու հալածվում էին, իրենց բողոքներով մնում խաղից դուրս վիճակում: Այս դրության մենաշնորհն, անշուշտ, միայն ճակնդեղագործությունը չէր, ոչ էլ ես մտադիր եմ այս պահին հին դարմանը քամուն տալ: Բարեբախտաբար թե դժբախտաբար, այդ օրից շատ ջրեր են հոսել և մեղավորներ որոնել այլևս միտք չունի: Հարցը ստեղծված վիճակից արագորեն ելք որոնելու մեջ է: Եվ մենք առայժմ ամենալավ տարբերակը տեսնում ենք գյուղերում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր բացելու մեջ: Փանիկում, Անուշավանում, Հառիճում, Պեմզաշեն ավանում, մի խոսքով, թվով յոթ բնակավայրերում այդպիսիք արդեն գործում են և գյուղատնտեսությանը զուգահեռ փոխադարձաբար օգնում են միմյանց առաջխաղացմանը: Նպատակ ունենք բացել միանգամյա սրսկիչների պատրաստման, խտացրած կերի արտադրության ձեռնարկություններ: Արթիկ քաղաքում կառուցվում է էլեկտրասարքավորումների գործարանի նոր մասնաճյուղ, ընդլայնվելու են «Արագած» գործարանի արտադրության ծավալները: Այս և էլի նոր օբյեկտներում, որոնք կյանք կառնեն, զբաղված կլինի կանանց ծանրակշիռ մասը, իսկ տղամարդիկ տեղ կգտնեն շինարարական նորանոր բրիգադներում ու կոոպերատիվներում, որոնց համար, ոչ վերջնական տվյալներով, կպահանջվի մոտ 1100 աշխատող ձեռք:

Կանցնի շատ ժամանակ, ավելի, քան նախատեսված երկու տարին: Արթիկցիները, որոնք պակաս սարսափ չապրեցին երկրաշարժից ու նրան հաջորդած աղետներից, վերջնականապես ոտքի կկանգնեն: Բարեկամների ու եղբայրների ձեռքը բռնած՝ նրանք կկերտեն ու կշենացնեն մի նոր Արթիկ, որը կժպտա աշխարհին ու մարդկանց իր բարեբեր հողով, իր վարդատուֆե զգեստով, իր կանաչ սարերով ու ծիծղուն հովիտներով:

# ԱՂԵՏԻ ԳՈՏՈՒ ՏԱՐԵԳԻՐՆԵՐԸ

ՀՐ. ՀՈՎՍԵՓՅԱՆ, Ղ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

1988 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 7-ը դարձավ հայ ժողովրդի պատմության ամենաողբերգական էջերից մեկը։ Ահավոր երկրաշարժը ակնթարթորեն ավերեց հանրապետության հյուսիսարևելյան գոտու մի քանի քաղաքներ ու հարյուրավոր գյուղեր։ Այդ ծանր աղետի հետևանքով զոհվեցին տասնյակ հազարավոր մարդիկ, ավելի քան կես միլիոնը մնաց անօթևան։ Շարքից լրիվին կամ մասնակի դուրս եկան հարյուրավոր արդյունաբերական ձեռնարկություններ, շինարարական ու տրանսպորտային կազմակերպություններ, կոլեկտիվ ու պետական տնտեսություններ, առողջապահական, ուսումնական և մշակույթի հիմնարկներ։

Երկրաշարժի առաջին իսկ ժամերից եղբայրական բոլոր հանրապետություններն օգնության ձեռք մեկնեցին մեզ, հայ ժողովրդի հետ կիսելով վիշտը, անմիջապես ձեռնամուխ եղան սկզբում փրկարար, ապա՝ աղետի հետևանքների վերացման աշխատանքներին։ Այդ մարդասիրական շարժմանը, մինչ այդ չտեսնված չափերով, իրենց մասնակցությունը բերեցին մոլորակի բոլոր մայրցամաքների հարյուրից ավելի երկրներ, բազմաթիվ միջազգային կազմակերպություններ, անձինք։

Աղետից մեծապես տուժեցին նաև երկրաշարժի գոտու թերթերի խմբագրություններն ու տպարանները. ահավոր տարերքին զոհ գնացին մեր 17 գրչակից ընկերները։ Այս պայմաններում ընդհատվեց քաղաքային և շրջանային թերթերի լույս ընծայումը։ Երևանի մի շարք խմբագրությունների, ժուռնալիստական կազմակերպությունների, տեղական կուսակցական և խորհրդային մարմինների աջակցությամբ նրանց հրատարակումը շուտով վերականգնվեց։

Այդ պարբերականների խմբագրություններն ինչպե՞ս են աշխատել ու աշխատում արտասովոր, դժվարին պայմաններում, ինչպե՞ս են լուսաբանում աղետի հետևանքների վերացման, բնակավայրերի վերականգնման, շինարարական աշխատանքների ծավալման պրոբլեմները։ Թերթերը տպագիր խոսքի ուժով ինչպե՞ս են ներազդում մարդկանց հոգեբանության վրա, նրանց տրամադրության բարձրացման, հույսի ու հավատի ամրապնդման, վերականգնման աշխատանքներին տեղի բնակչության ակտիվ մասնակցությունն ապահովելու հարցերի վրա։ Այդ տեսանկյունից համառոտակի անդրադառնանք երկրաշարժի գոտու մի հատվածի՝ Սպիտակի «Լուսարձակ», Կիրովականի «Կայծ», Գուգարքի «Գուգարք» և Ստեփանավանի «Փարոս» թերթերի գործունեությանը։

## «ԼՈՒՍԱՐՁԱԿ»

ԱՆՑՅԱԼ ՏԱՐՎԱ ՆՈՅԵՄԲԵՐԻ կեսերին էր։ Շրջանային կուսկոնֆերանսի աշխատանքները լուսաբանելու համար գործուղվել էինք Սպիտակ։ Առիթը օգտագործեցինք հանդիպելու շրջանային «Լուսարձակ» թերթի մեր գործընկերներին, մտքեր փոխանակելու լրագրողներին հուզող հարցերի շուրջ։ Այդ զրույցներին մասնակցում էին նաև թերթի խմբագիր Սմբատ Գալստյանը, խմբագրի տեղակալ Սոնա Ամիրխանյանը, պատասխանատու քարտուղար Վանուշ Աթանեսյանը, բաժնի վարիչ Ռուզաննա Կարապետյանը, լուսանկարիչ Միշա Աբրահամյանը, գրադարանավարուհի Ալվարդ Պապիկյանը։

Մի քանի շաբաթ անց անհուն վշտով տեղեկացանք, որ խմբագրության վերոհիշյալ ընկերները զոհվել են ահավոր երկրաշարժից, ինչպես ընդունված է ասել, իրենց մարտական դիրքում։ 1988 թ. դեկտեմբերի 7-ից աշխատանքի ու կենցաղի անսովոր պայմաններ ստեղծվեցին նաև «Լուսարձակի» խմբագրությունում, որի շատ աշխատակիցներ տուժել են, անդառնալի կորուստներ ունեցել... Բայց, ինչքան էլ մեծ լինի կսկիծը, ողբերգությունը՝ խոր, կյանքը կանգ չի առնում, այն շարունակվում է, և ամենաբուժիչ սպեղանին, իրոք, աշխատանքն է, լարված ու ինքնամոռաց ստեղծարար աշխատանքը։ Այդ ծանր օրերին կոլեկտիվին նեցուկ դարձան երիտասարդական «Ավանգարդը», մայրաքաղաքից ժամանած ուրիշ ժուռնալիստներ,

ՀՈՎՍԵՓՅԱՆ ՀՐԱՆՏ ՍԱՂԱԹԵԼԻ, ՀՈՎԱԿԻՄՅԱՆ ՂԱԶԱՐՈՍ ԳԱՌՆԻԿԻ— ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամներ

ները տանում են երկու ճակատով՝ հիմնում են նորակառույց թաղամասեր, միաժամանակ վերականգնում վթարված շենքերը։ Այդ ամենի մասին թերթի էջերում սիստեմատիկաբար տպագրվում են հոդվածներ, թղթակցություններ, ռեպորտաժներ և այլ նյութեր։ «Օգնում են ուկրաինացի շինարարները» վերնագրով թղթակցությունից ընթերցողները տեղեկանում են, որ քաղաքում կառուցվելիք 700 հազար քմ բնակտարածությունից 500 հազարը իրականացնելու է «Ուկրշին» շինմոնտաժային կազմակերպությունը։ Նրա պետ Ն. Կապուստինը պատմում է, որ առաջադրված խնդիրը հաջողությամբ լուծելու համար ստեղծվել է հզոր արտադրական բազա, կառուցվել տարեկան 27 հազար տոննա կարողությամբ երկաթբետոնե կառուցվածքների երկու գործարան։ Դա հնարավորություն կընձեռի մեզ, ասում է նա, ընթացիկ տարում շահագործման հանձնել 200 հազար քմ բնակմակերես։ Շինարարության տեմպերն արագացնելու նպատակով նա միաժամանակ խնդիր է դնում ավելացնել տեղական շինանյութերի արտադրությունը։

Մի այլ համարում «Կայծը» անդրադարձել է Գրոդնոյի մարզի № 273 շինմոնտաժային վարչության կոլեկտիվին, որը Կիրովականի նոր միկրոշրջանի՝ Տարոն-4 տեղամասում հիմնում է բնակելի տներ։ Շինչկատն այս տարի կատարելու է 7,2 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանք։ Կառուցողներն իրենց հետ բերել են անհրաժեշտ քանակությամբ մեխանիզմներ, հաստոցներ և ագրեգատներ։ Այժմ Տարոն—4-ում արագ թափով ծավալվում են շինարարական աշխատանքները։ Բելոռուսիայի պատվիրակները երկու տարում շահագործման են հանձնելու 50 հազար քմ բնակմակերես, ինչպես նաև դպրոցներ, չորս մանկապարտեզ։

Կիրովականը դարձել է ինտերնացիոնալ կոլեկտիվների յուրովի հավաքատեղի։ Ուկրաինացիների, բելոռուսների հարևանությամբ եռանդով են աշխատում ռուսը, ուզբեկը, վրացին, հայը, էստոնացին, լիտվացին, որոնք կառուցում են Տարոն—2 թաղամասը։ Ս. Աբրահամյանը իր թղթակցությունում գրում է, որ նրանք կատարելու են ութ մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանք, կառուցելու 19 բնակելի շենք, որոնցից 12-ը՝ ընթացիկ տարում։

Թերթը առանձնակի ուշադրություն է նվիրում դպրոցական, առողջապահական և մանկական հիմնարկների շինարարության աշխատանքների ընթացքի լուսաբանմանը։ Հուլիսի 20-ի համարում զետեղված լուսանկարային ռեպորտաժից իմանում ենք, որ մոսկվացիների ուժերով Դիմաց թաղամասում բարձրանում են մանկապարտեզի ինը մասնաշենքերը, որոնք շահագործման են հանձնվելու այս տարի։ Քիչ չեն նաև այն նորակառույցները, որոնք արդեն հանձնվել են կիրովականցիներին։ Այդպիսիներից է առողջապահական ավանը, որը կյանքի է կոչվել «Աշխարհի բժիշկները» կազմակերպության միջոցներով, ֆրանսիացի, իտալացի և լեհ մասնագետների ջանքերով։

Հատկանշական է այն, որ «Կայծը» երբեք չի մոռանում գլխավորը՝ շինարարության որակի հարցը, համոզիչ օրինակներով ու փաստերով գովատում է լավագույն կոլեկտիվներին, պարսավանքի ենթարկում նրանց, ովքեր, կորցնելով խիղճ ու պատասխանատվություն, դարձյալ անտեսում են օրվա կարևորագույն պահանջը։

## «ԳՈՒԳԱՐՔ»

ԹԵՐԹԻ ԽՄԲԱԳԻՐ Վ. ԹՈՐՈՍՅԱՆԸ վերհիշում է. «Երկրաշարժի ահեղ ցնցումներից ճոճվող քառահարկ շենքը հրաշքով կանգուն մնաց։ Հետո պարզվեց, որ ոչ միայն խմբագրությունը, այլև տպարանը վթարային վիճակում են։ Ի՞նչ անել. չէ՞ որ գուգարքցիները աղետի պատճառած վնասների մասին հավաստի տվյալների, թարմ լուրերի կարիք ունեն։ Կուսշրջկոմում խորհուրդ տվեցին առայժմ հրատարակել բյուլետեն՝ մեքենագիր վիճակում։ Այդպես էլ արեցինք։ Ընթերցողներն իրենց հետաքրքրող շատ հարցերի պատասխանն ստացան մեր թերթի բյուլետենում»։

Մի քանի օր անց՝ դեկտեմբերի 12-ին, «Գուգարքի» հրատարակումը վերսկսվեց։ «Չվհատվել, լինել տոկուն», «Դեպի գործ, դեպի մաքառում» ընդհանուր խորագրերի ներքո տպագրված լուրերը, թղթակցությունները պատմում էին աղետի վնասների, փրկարարական աշխատանքների, մարդկանց անձնազոհության մասին և կոչ անում ընդհանուր ուժերով դիմակայել տարերքին։ Ու այսպես, տարերքը ստիպեց փոխել թերթի գործելակերպն ու բովանդակությունը։ «Գուգարքը» համարից համար սկսեց ստեղծել շրջանի հետերկրաշարժյան տարեգրությունը, պատմել փլատակներից հառնող տների հիմքը գցողների, օգնության ձեռք մեկնած եղբայր ժողովուրդների բացառիկ բարության ու աջակցության, նրանց մասին, ովքեր իրենց ծանր վիճակը անտեսելով սեփական հարկի տակ ապաստանեցին անօթևան մնացած աղետյալներին։ Վերականգնման աշխատանքներին զուգընթաց փոխվում է նաև թերթի թեմատիկան, երևում են նոր խորագրեր։ Ահա դրանցից մի քանիսը. «Երկիրը մեզ հետ է», «Փորձության, մաքառման տարի», «Գթության օրենքներին հավատարիմ», «Կյանքը հունի մեջ է մտնում», «Փլատակները վերածնված տեսնելու փափագով»։

Թերթի էջերում մշտական տեղ են գրավում երկրի տարբեր հանրապետություններից ժամանած շինարարների աշխատանքը լուսաբանող, և այդ առիթով ժողովուրդների բարեկամությունը, ինտերնացիոնալ դաստիարակությանը նվիրված նյութերը։ «Թուրքմեն էներգետիկները Գուգարքում» թղթակցությունից տեղեկանում ենք, որ 30 էներգետիկներ լարված աշխատանք են կատարել շրջկենտրոնում և այլ բնակավայրերում նոր գծեր անցկացնելու, էլեկտրական ցանցը վերականգնելու համար։ Աղետից անմիջապես հետո շրջան են եկել հարյուրավոր շինարարներ Օմսկից, Նովոսիբիրսկից, Վոլգոգրադից, Ալթայից, Տոմսկից, Վորոնեժից։ Նրանք պարտավորվել են երկու տարում կատարել ութ մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանք, վերականգնել Վահագն, Եղեգնուտ և այլ գյուղեր։ Տեղեկացնելով այդ մասին՝ թերթը նկարագրում է Ռուսաստանից ժամանած կառուցողների դժվարին աշխատանքը աղետի գոտում։ Հաջորդ համարում զետեղված «Առաջին ծիծեռնակները» ծավալուն հոդվածում «Մինսկարմենստրոյ» տրեստի կառավարիչ Ն. Գրեսը պատմում է կոլեկտիվի առաջիկա անելիքների մասին։ Բելոռուս բարեկամները շրջանում շահագործման են հանձնելու 60 հազար քմ բնակելի տարածություն, այդ թվում շրջկենտրոնում կառուցելու են մի ամբողջ թաղամաս երկհարկանի շենքեր, որոնցից յուրաքանչյուրը կունենա հարմարավետ չորս բնակարան։

Նովոսիբիրսկի մարզի ագրոարդի մասնագիտացված շինմոնտաժային շարասյունը աշխատանքներ է ծավալել Ջորագյուղ, Դեբեդ, Անտառամուտ գյուղերում։ Կառուցում և վերականգնում են բնակելի տներ, դպրոցներ, մանկապարտեզներ։ Սիբիրցի շինարարների հետ կողք-կողքի աշխատում են նաև տեղացիները, միասին պայքարում հարազատ շեներն արագորեն վերականգնելու համար։ Գրելով այդ մասին՝ թերթը անդրադառնում է նաև կառուցողներին խանգարող թերություններին, նախագծերի ուշացմանը։ «Գուգարքը» ինչ թեմա էլ արծարծում է, այն լուսաբանում է աղետի հետևանքների արագ վերացման, շինարարությանը լայն թափ հաղորդելու տեսանկյունից։ Այս առումով ուշագրավ են «Կուսակցական կյանք» խորագրի ներքո տպագրված թղթակցությունները։ Շրջանի բոլոր կուսկազմակերպությունները քննարկել են «Տարերային աղետի հետևանքների վերացումը և ըսկըզբնական կուսկազմակերպությունների խնդիրները» հարցը։ Թերթը, լուսաբանելով այդ ժողովների ընթացքը, միանգամայն ճիշտ է վարվում, որ շեշտը դնում է թերությունների, դեռևս չլուծված հարցերի, որոշ հիմնարկ-ձեռնարկությունների դանդաղկոտության, նրանց ղեկավարների անպատասխանատվության վրա։

Լեռնապատը Գուգարքի շրջանում առավել շատ տուժված գյուղերից է. այն փաստորեն վերածվել է փլատակների։ Երկար ժամանակ բնակավայրի ապագայի հարցը չէր լուծվում։ Վերջապես լեռնապատցիների ակտիվ մասնակցությամբ քննարկումներից հետո որոշվում է գյուղը տեղափոխել նոր վայր։ Այստեղ կկառուցվեն 560 առանձնատուն, 420 տեղով դպրոց, մանկապարտեզ, ակումբ, խանութ և այլ օբյեկտներ։ Նոր գյուղի շինարարությանը, որն իրականացնում են վոլգոգրադցիները, հատկացվել է 40 միլիոն ռուբլի։ Այդ մասին է պատմում «Լեռնապատը վեր կհառնի փլատակներից» նպատակային էջը։

Շրջանում չկա աղետի հետևանքների վերացման հետ կապված քիչ թե շատ կարևոր մի երևույթ, որին թերթը չանդրադառնա։ Նա, հետևողականորեն լուսաբանելով շինարարության ընթացքը, օպերատիվ կարգով ընթերցողներին տեղյակ է պահում վերականգնման ընթացքում ձեռք բերված առաջին հաջողությունների մասին, շարք մտած նորակառույցների, նոր բացված առաջին դպրոցի, մանկապարտեզի, բուժհիմնարկի մասին։ Այսպես, «Մնայուն նվերներ գուգարքցիներին» ռեպորտաժից ընթերցողներն իմանում են, որ «Աշխարհի բժիշկները» կազմակերպության միջոցներով շրջկենտրոնում, Լեռնապատ, Մարգահովիտ, Վահագն գյուղերում կառուցվել և շահագործման են հանձնվել պոլիկլինիկաների նոր շենքերը։

Աղետի գոտու ինչպես բոլոր շրջաններում, Գուգարքում ևս երկրաշարժի հետևանքների վերացման աշխատանքները դանդաղ են ընթանում, կան բազմաթիվ պրոբլեմներ, արագ լուծման կարոտ խնդիրներ։ Դրանցից մեկը տեղաբնակների ներգրավումն է այդ աշխատանքներին։ Ցավոք, երբեմն այդ հարցը պատշաճ ձևով չեն լուծում ղեկավար մարմինները, մյուս կողմից էլ որոշ գուգարքցիներ ինչ-ինչ պատճառներով չեն մասնակցում կառուցման աշխատանքներին։ Այս պայմաններում գովելի է խմբագրության հետևյալ նախաձեռնությունը. «Մեր տունը՝ սեփական ուժերով» խորագրի ներքո թերթը պարբերաբար նյութեր է տպագրում այն մասին, թե ինչպես առանձին աշխատավորական կոլեկտիվներ իրենց ուժերով են վերականգնում հարազատ ձեռնարկությունը, կամ գյուղի մարդիկ կառուցում են սեփական տունը։ Թերթը կոչ է անում գուգարքցիներին՝ հետևել այդ լավ օրինակներին, ակտիվորեն մասնակցել հարազատ ոստանի կառուցապատմանը։

## «ՓԱՐՈՍ»

ՔՆՆԱՐԿՎՈՂ ԹԵՐԹԵՐԻ բովանդակությունը, անշուշտ, պայմանավորված է նրանց առջև դրված շատ կողմերով միանման խնդիրներով, ուստի և զարմանալի չէ, որ նրանք այս առումով իրարից քիչ են տարբերվում։ Եվ միանգամայն բնական է, որ ինչ ասվեց վերոհիշյալ թերթերի մասին, կարելի է գտնել նաև «Փարոսի» (խմբագիր՝ Ս. Սարգսյան) էջերում։ Բայց, այնուամենայնիվ, նրանցից յուրաքանչյուրն ունի իր նախասիրությունները, առանձնահատկությունները, մատուցման եղանակները։ «Փարոսը», օրինակ, շահեկանորեն տարբերվում է մյուսներից, հա-

# ՀԱՄԱՏԵՂ, ՀԱՄԵՐԱՇԽ ԿՅԱՆՔԻ ՀԻՄՔԵՐԸ

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

ԲԱԶՄԱԶԳ ԽՍՀՄ-ը, որտեղ տարբեր ազգերի ու ազգությունների աշխատավորներն ապրում ու աշխատում են կողք-կողքի, ազգային իրավահավասար հանրապետությունների միություն է, որտեղ ազգային պատկանելությունը պաշտպանվում է սահմանադրությամբ: Այդ մեծ Միության մեջ գոյություն ունի ազգային հայրենիքի ըմբռնում, որը ստեղծարար աշխատանքի է կոչում յուրաքանչյուր մարդու: Խորհրդային քաղաքացին տվյալ ազգության ներկայացուցիչ է, հարազատ միջավայրի զավակը: Միասնական աշխատանքը, նրա ստեղծագործական բնույթը հազար ու մի թելերով միմյանց է շաղկապում մեր երկրի ժողովուրդներին, զարգացնում ազգամիջյան հարաբերությունները:

Մեր անցած ուղու առաջին քսանամյակը բարդ էր ու աննախադեպ: Եղել են ճակատագրական սխալներ, կամայականություններ, վերելքներ ու վայրէջքներ: Անդրադառնալով անցյալին, հաճախ նաև տեսնելով անցյալի իրադարձությունների մեջ այսօրվա հրատապ հիմնահարցերը, անհրաժեշտ է սովորել անցյալից և չկրկնել պատմության սխալները, օգտագործել ճիշտ գտնված լուծումները, նորովի, իրոք դեմոկրատական մտածողության, վերակառուցման ստրատեգիայի հիման վրա բացահայտել ճշմարտությունը: Այդ տարիներին Հայաստանի կոմունիստական կուսակցությունն ու կառավարությունը հսկայական ջանքեր են գործադրել քուրդ ազգաբնակչությանը համակողմանիորեն ընդգրկելու նոր հասարակության կառուցման գործին: Նկատի ունենալով հանրապետությունում ապրող քրդերի, ինչպես և մյուս ազգությունների ներկայացուցիչների սոցիալ-քաղաքական իրավիճակը, խորհրդային մարմինները, կուսակցական կազմակերպություններն ամեն կերպ ջանում էին նրանց տրամադրել այն հնարավորությունները, որոնք ընձեռում էր նոր իշխանությունը երկրի վերականգնման, խաղաղ շինարարության տարիներին: Հոգատար վերաբերմունքին ամենուրեք նրանք պատասխանում էին երախտապարտ, հարվածային աշխատանքով, հասարակական-քաղաքական կյանքին իրենց ակտիվ մասնակցությամբ:

Հայաստանում կային 15 հազար քրդեր[1], որոնք տեղավորված էին Լենինականի, Էջմիածնի գավառներում: Ձմռանն ապրում էին Ալագյազի լանջերում, հովիտներում, ամռանը քոչում էին սարերը: Զբաղված էին գլխավորապես անասնապահությամբ: Կանանցից ոմանք աշխատում էին քաղաքային տնտեսությունում: Հայտնի քրդագետ Արաբ Շամիլովը 1923 թվականին գրած մի զեկուցագրում նշում է, որ ինքը «անձամբ զրույց է ունեցել մի քանի քրդերի հետ, որոնք ասում են. «Մեծ բավականությամբ կմտնենք կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության մեջ, քանի որ նա աշխատավորների միակ պաշտպանն է»[2]:

1924 թվականի հունիսի 3-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի նախագահությունը քննության առավ քրդերի մեջ տարվող աշխատանքի մասին հարցը: Ընդունված որոշման մեջ նշվում էր, որ Լենինականի, Էջմիածնի գավկոմները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն քրդերի շրջանում տարվող աշխատանքի կազմակերպմանը: Այդ գործին պետք է առանձնակի տեղ հատկացնի ագիտբաժինը, պլանավորի և ժամանակին կատարի նախատեսված բոլոր միջոցառումները, հաշվի առնելով կուլակային տարրերի ազդեցությունը նրանց վրա, չքավոր ու միջակ գյուղացիներին համախմբի խորհրդային իշխանության շուրջը: Քուրդ երեխաների համար պետք է ստեղծել դպրոցներ, գյուղական վայրերում կազմակերպել անասնաբուժական, պետական կոոպերացիաներ:

Հայկական ԽՍՀ Կենտգործկոմը մի քանի որոշում ընդունեց քուրդ աշխատավորների կյանքի ու աշխատանքի կազմակերպման մասին: Այդ

1. Տե՛ս ՄԼԻ, ՀՄԿԱ, ֆ. 1, ց. 3, գ. 249, թ. 70:

2. Նույն տեղը:

ՍԱՐԳՍՅԱՆ ՍՈՒՐԵՆ ՀՈՒՆԱՆԻ— ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի— ՄԼԻ հայկական մասնաճյուղի ավագ գիտաշխատող, պատմական գիտությունների դոկտոր:



որոշումներից մեկում ասված է. «Քրդերի քոչվորական կենցաղը վերացնելու, նրանց նստակեցություն սովորեցնելու, կուլտուր-կենցաղային վիճակը բարելավելու և սոցիալիստական հիմունքներով նրանց սոցիալ-տնտեսական կենցաղը զարգացնելու համար անհրաժեշտ համարել քուրդ քոչվորական տնտեսությունները վերաբնակեցնելու անասնապահական շրջաններում: Այդ վերաբնակությունը կատարելիս ապահովել քուրդ քոչվորների բնակության միատարրությունը նստակեցության, դրացիական համակեցության, տնտեսական հարմարության, կլիմայական, առողջապահական և այլ անհրաժեշտ ու հնարավոր պայմանները»[1]:

1920—1925 թվականներին Հայաստանում կառուցվեց 10 քրդաբնակ գյուղ: Նստակեցության անցնելու համար քուրդ աշխատավորներին տրվում էր համապատասխան քանակությամբ հող և վարկ: Քրդերն ազատվում էին հարկերից: 1928 թվականին այդ ուղղությամբ որոշված էր ծախսել 36 հազար ռուբլի[2]:

Հայ շատ մանկավարժներ սկսեցին դասավանդել քրդական դպրոցներում ու դասընթացներում: Նրանցից էին Ա. Մուրադյանը, Վ. Մխիթարյանը, Հ. Մկրտչյանը, Գ. Գյուրջյանը, Ն. Վշտունին, Ս. Սարգսյանը, Ա. Մարուխյանը և ուրիշներ:

1927 թվականի դեկտեմբերին տեղի ունեցած քրդական ակտիվի II կոնֆերանսում նշվեց, որ ուժեղացել է կոմունիստական կորիզը, 6 ամսվա ընթացքում 40 տոկոսով աճել է կոմերիտական կազմակերպությունը: Քրդական ակտիվի միջոցով զգալի աշխատանք է կատարվել ղալիմի սովորույթը արմատախիլ անելու ուղղությամբ:

Կուսակցական աշխատանքի ուժեղացմամբ զգալիորեն մեծացել էր նրա ազդեցությունը չքավոր ու միջակ գյուղացիության վրա: Դա պարզորոշ դրսևորվեց 1927 թվականի խորհուրդների ընտրությունների կամպանիայի ընթացքում: Քրդաբնակ գյուղերում ընտրողներն իրենց ակտիվությամբ հետ չէին մնում Հայաստանի մյուս շրջանների ընտրողներից: Քուրդ բեկերն ու շեյխերը ընտրությունների ժամանակ լիակատար պարտություն կրեցին: Նրանք, չկամենալով այլ կերպ կռվել խորհրդային իշխանության և նրա չքավոր-միջակ գյուղացիության բլոկի դեմ, սկսեցին կաշառել առանձին չքավորների ու միջակների և պրովակացիայի ներարկել ազդեցիկ կուսակցական ակտիվին: Կուսակցական կազմակերպությունների ջանքերով աշխուժացվեցին աշխատանքները կոոպերացիայի, խորհուրդների վերընտրությունների կամպանիաներում: Չքավորական խորհրդակցությունների միջոցով սկսվել էին գյուղացիներին համախմբելու աշխատանքները:

Գյուղացիական տնտեսությունների և կոոպերացիայի զարգացման ուղղությամբ ձեռնարկված միջոցները ցանկալի արդյունք տվեցին: Արդեն 1927 թվականին քրդաբնակ գյուղերում կատարվեց հողաբաշխում: Դա բավարար համարել չէր կարելի: Անհրաժեշտ էր մյուս գյուղերում նույնպես արագացնել այդ գործը: Դրանով շատ քոչվոր ընտանիքներ կկապվեին հողին, կմտնեին կոոպերացիայի մեջ: Այդ բնագավառում որոշակի հաջողություններ էին ձեռք բերվել քրդական ազգաբնակչության շրջանում: Այսպես, Լենինականի 7-րդ գավառամասում սպառողական կոոպերացիան ընդգրկել էր քրդական ազգաբնակչության 55 տոկոսը: Լեռնային շրջաններում բացվել էր 2 վարկային ընկերություն և այլն:

Հատուկ ուշադրություն էր դարձվում քաղաքական-լուսավորական աշխատանքների կազմակերպմանը: Չնայած այն բանին, որ չկար քրդական այբուբեն, ուսուցիչների խիստ պակաս էր զգացվում, այդուհանդերձ, քրդաբնակ գյուղերում, որտեղ ապրում էր մոտ 20 հազար մարդ, ազգային լեզվով գործում էին դպրոցներ, լիկկայաններ, խրճիթ-ընթերցարաններ, լույս էին տեսնում պատի թերթեր: Կուլտուր-լուսավորական աշխատանքը բարելավելու համար Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորելու գործուղվեցին 10 քուրդ երիտասարդներ:

Կոնֆերանսը միաժամանակ նշեց, որ դեռևս ցածր մակարդակի վրա են բժշկական օգնության և անասնաբուժության բարելավման աշխատանքները: Պատգամավորները որոշեցին միջնորդել համապատասխան մարմինների առջև՝ բացելու անհրաժեշտ բժշկական կայաններ, ստեղծելու անասնաբուժական ծառայություն:

Կոնֆերանսի հատկապես կին պատգամավորներն իրենց ելույթներում նշեցին, որ քրդուհին ազատագրված է, որ նա այժմ հավասար իրավունքներ ունի: Այդ ելույթները ցույց էին տալիս, որ քրդուհին թեև դանդաղ, բայց հաղորդակից է դառնում առօրյա հասարակական աշխատանքներին: Քրդուհիները պահանջում էին, որպեսզի հայկական գյուղերի նման քրդաբնակ գյուղերում էլ աղջիկներին մասսայաբար ընդգրկեն պարտադիր ուսուցման մեջ:

Պատգամավորներն առաջադրեցին մի շարք խնդիրներ, որոնց լուծումը կարևոր դեր կխաղար քուրդ ազգաբնակչության շրջանում ինտերնացիոնալիստական դաստիարակության աշխատանքները ճիշտ կազմակերպելու համար: Մասնավորապես առաջ քաշվեց որոշ սովորությունների՝ խմբակայնության, սառը զենք կրելու, արյան վրեժի և այլնի վնասակար ազդեցության նկատմամբ վարչական միջոցներն ու-

1 Բանբեր Հայաստանի արխիվների, 1970, № 1, էջ 77:

2. ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 1, ց. 12, գ. 371.

ռում քուրդ սովորողների թիվը հասավ 200-ի: Ընդ որում տեխնիկում ընդունվում էին Անդրկովկասի տարբեր շրջանների քուրդ բնակչության երեխաները: Քրդական տեխնիկումի հանրակացարանի շենքը կառուցելու համար տրամադրվում է 120 հազար ռուբլի: Լուսժողկոմատը պետական հրատարակչությանը կից կազմակերպում է քրդական հատուկ սեկցիա, որի շուրջը համախմբվում են քուրդ գրողները, մշակույթի գործիչները: 30-ական թվականներին ակտիվորեն գործում էին Արաբ Շամիլովը, Հաջիե Ջընդին, Ամինե Ավդալը, Ջասմե Ջալիլը, Վազիրե Նադրին և ուրիշներ: Քրդական կուլտուրայի ակտիվ պրոպագանդիստներ էին Վ. Պետոյանը, Պ. Ոսկերչյանը, Հ. Մկրտչյանը, Ս. Գասպարյանը, Հր. Քոչարը, Սարմենը և հայ մտավորականության շատ ուրիշ ներկայացուցիչներ:

1934 թվականի հուլիսի 8—14-ը Երևանում տեղի ունեցավ քրդագիտական համամիութենական կոնֆերանս: Այդ համաժողովին մասնակցում էր հանրապետության քուրդ մտավորականությունը, հյուրեր կային նաև Վրաստանից, Ադրբեջանից, Թուրքմենստանից: Կոնֆերանսը որոշեց ստեղծել քրդագիտական համամիութենական կենտրոն: Որոշումներ ընդունվեցին քրդերեն լեզվի, հերականության, տերմինաբանության հարցերի վերաբերյալ: Քրդագիտական կոնֆերանսը փակվեց Կենտգործկոմի նախագահի տեղակալ Ռ. Դաշտոյանի եզրափակման խոսքով: Կոնֆերանսը՝ որպես քուրդ ժողովրդի կյանքում խոշոր իրադարձություն, ամփոփեց ԽՍՀՄ աշխատավոր քրդերի ազգային մշակույթի զարգացման արդյունքները: Հետագա տարիներին Հայաստանի կուլտուրայի պատմության ինստիտուտը քուրդ երիտասարդ մասնագետների հետ հսկայական աշխատանք կատարեցին՝ ուսումնասիրելով հանրապետության քրդերի մշակույթի ու գրականության զարգացման հարցերը: ՀԽՍՀ ԳԱ-ում ստեղծվեց քրդագիտական սեկտոր:

Այսպիսով, 20—30-ական թվականներին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները զգալի գործ կատարեցին հանրապետությունում ապրող տարբեր ազգությունների աշխատավորների, այդ թվում՝ քրդերի ապրելակերպը կազմակերպելու, կենցաղը սոցիալիստական հունով ընթանալու համար:

Այսօր քուրդ ժողովուրդը Հայաստանում ապրում է լիիրավ կյանքով, մեծապես ընդգրկված է հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Զարգանում է նրա մշակույթը, աճում ազգաբնակչությունը:



# ԱՄԵՐԻԿՅԱՆ ԳԼՈԲԱԼԻԶՄԻ ԿՈՆՑԵՊՑԻԱՆ. ԱԿՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄՆԵՐԸ

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՄԵՐԻԿԱՑԻ ԳՐՈՂ Կուրտ Վոնեգութի «Օրորոց կատվի համար» հայտնի վեպում գլխավոր հերոսին, որի անունից է պատմըվում եղելությունը, վիճակվում է զրուցել դիվանագետ Հորլիկ Մինթոնի և նրա կնոջ՝ Քլերի հետ, որոնց մասին «կոմունիզմին համակրողի» վտանգավոր համբավ էր տարածվել Ամերիկայում: Ինչպես պարզվում է, Մինթոնի հալածանքի և հետագա դժբախտությունների պատճառ է դառնում նրա կնոջ «Նյու-Յորք Թայմս»-ին հղած նամակը, որում նա փորձել էր ապացուցել, որ ամերիկացիները արտաքին քաղաքականություն վարելիս պետք է ընդունեն իրենց նկատմամբ իրապես գոյություն ունեցող ատելությունը, այլ ոչ թե անգո սերը: «Ամերիկացիները,— մեջբերում է արել նա իր կնոջ՝ թերթին հղած նամակից,— անվերջ իրենց հանդեպ սեր են որոնում այնտեղ, որտեղ այն չի կարող լինել, և այնպիսի ձևերով, որոնք այն երբեք չի կարող ընդունել: Այդ երևույթի արմատները, հավանաբար, պետք է փնտրել հեռավոր անցյալում»: Եվ քանի որ, ըստ Մինթոնների վկայության, ամերիկացիները չեն կարող պատկերացնել, թե ինչպես կարելի է ամերիկացի չլինել, և դեռ հպարտանալ դրանով, ուստի Միացյալ Նահանգներում դավաճանության բարձրագույն ձևն է համարվում այն պնդումը, որ բնավ էլ պարտադիր չէ ամերիկացիներին հարգել ամենուրեք, որտեղ էլ նրանք հայտնվեն, ինչ էլ որ անեն:

Այս ոչ մեծ, սակայն գաղափարապես հագեցած հատվածում Վոնեգութը գեղարվեստական պատկերավոր ձևով արձանագրել է ամերիկյան բուրժուական գիտակցության երկու կարևոր ստերեոտիպեր, առաջինը՝ հավատը Միացյալ Նահանգների բարոյական, քաղաքական ու տնտեսական անտարակուսելի գերազանցության նկատմամբ և, երկրորդ, այն համոզմունքը, որ այդպիսի գերազանցությունը կասկածի ենթարկելու ամեն մի փորձ հրահրում է կոմունիստական գաղափարախոսությունը: Թեև գրողը Մինթոնների ընտանիքի «անկման» պատմությունը վերագրում է մակարտիզմի վատթարագույն ժամանակաշրջանին, անտարակուսելի է, որ այստեղ խոսքը վերաբերում է ոչ այնքան այդ ժամանակվա ԱՄՆ-ի հոգևոր-գաղափարական առանձնահատկություններին, որքան պատմականորեն առաջացած կայուն նախապաշարմունքներին, որոնք ամերիկացիների ազգային ինքնագիտակցության ամենից քիչ փոփոխության ենթակա խորքային «շերտն» են կազմում:

Իրոք, «Նոր հազարամյակի շեմին մարդկությունը ծանրաբեռնված է բազմաթիվ սոցիալական կոնֆլիկտներով, նախապաշարմունքներով, հակամարտություններով, որոնց արմատները խորանում են պատմության մեջ» (տե՛ս Арабоглы Э. А. Социальные последствия. НТР: год 200, Обозримое будущее. М., 1986, стр. 4): Եվ այդուհանդերձ, որքան էլ դժվարին լինի գիտակցության «կուռքերի» վերացումը, որքան էլ տառապագին լինեն նոր մտածողությանը, միջազգային հարաբերությունների նկատմամբ ռեալիստական և սթափ մոտեցմանը նա-

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՀՄԱՅԱԿ ԿՈՍՏԱՆԴԻՆԻ— Երևանի պետհամալսարանի փիլիսոփայության պատմության ամբիոնի գիտաշխատող, փիլի-
և սոցիոլոգիայի ֆակուլտետի փիլիսոփայության
սոփայական գիտությունների թեկնածու

Մոնրոյի 1823 թ. հռչակած դոկտրինայի հիմքում, վերջնականապես գերիշխող դարձավ երկրի կառավարող շրջանների գիտակցության մեջ: Այդ ժամանակվանից Միացյալ Նահանգներն ստանձնում էր ամերիկյան մայրցամաքում տեղաբաշխված երկրների հոգաբարձուի դեր, իսկ հետևաբար՝ այդ ռեգիոնում հիշյալ դերի կատարման համար պայմաններ ապահովելու կոչված ակտիվ արտաքին քաղաքականություն վարելու պարտավորություն: Մոնրոյի դոկտրինայում դրա ձևակերպումների անորոշ, մշուշապատ բնույթը ԱՄՆ-ի կառավարող շրջաններին հետագայում հնարավորություն տվեց այդ դոկտրինան հարմարեցնելու փոփոխվող պատմական իրադրությանը: Բայց, անկախ նրանից, թե այն ինչպիսի ձևերով, որ կոնկրետ երկրում էր գործադրվում՝ Պուերտո-Ռիկոյում, Գվատեմալայում, Կուբայում, Չիլիում, Սալվադորում, Գրենադայում, Նիկարագուայում, Մոնրոյի դոկտրինան միշտ էլ ամերիկյան մայրցամաքի սուվերեն պետությունները ԱՄՆ-ի իմպերիալիզմի կամքին ենթարկելու գործիք էր ծառայում:

XIX դարի վերջում առաջին անգամ ի հայտ եկան այնպիսի նշաններ, որոնք վկայում էին, որ «Ճակատագրի նախասահմանման»՝ որպես ամերիկյան մայրցամաքի տարածքում Միացյալ Նահանգների արտաքին քաղաքական դերը սահմանափակող զուտ «մայրցամաքային նախասահմանման» մեկնաբանումը վաղ թե ուշ կվերաիմաստավորվի ամերիկյան իմպերիալիզմի հարաճուն հնարավորություններին ու տենչանքներին համապատասխան: 1898—1899 թթ. Իսպանիային պարտության մատնելով՝ Միացյալ Նահանգները տասնութ ամիսների ընթացքում դարձան ընդարձակ գաղութային կայսրության տեր կարիբյան ու խաղաղօվկիանոսյան ավազաններում: Պուերտո-Ռիկոյի ու Ֆիլիպինների զավթումը, Հավայան կղզիների անեքսիան, Գուամի ու Սամոայի մի մասի նվաճումը հանդիսացան ամերիկյան իմպերիալիզմի արտաքին քաղաքական էքսպանսիայի սկիզբը՝ էքսպանսիա, որն անխուսափելիորեն պետք է «կոնտինենտալ նախասահմանման» գաղափարը դարձներ աշխարհում ԱՄՆ-ի դերի առավել լայն ըմբռնման մասը:

Միացյալ Նահանգների առավել մեծ չափով համաշխարհային քաղաքականության մեջ ներքաշելու միտումը նոր ազդակներ ստացավ առաջին համաշխարհային պատերազմից հետո: Պրեզիդենտ Վուդրո Վիլսոնը ձգտում էր երկրին համոզել միանալու ազգերի լիգային: Նրա ճարտասանության մեջ առանձնակիորեն շեշտը դրվում էր «ամերիկյան մեսիականության» գաղափարների վրա: Ամերիկացի զինվորներին անվանելով «խաչակիրներ», որոնք աշխարհին «ազատություն և փրկություն» են բերում, Վիլսոնը դրանով իսկ առաջին քայլն արեց «ճակատագրի նախասահմանման» գաղափարի, ԱՄՆ-ի՝ որպես կապիտալիստական սիստեմի պատվարի, դերի գլոբալ ըմբռնման ոգով մեկնաբանման ուղղությամբ: Բայց այն ժամանակ այդպիսի մեկնաբանումը որոշվում էր ոչ այնքան դեռ իմպերիալիստական գերտերություն դառնալու ուղու վրա կանգնող Միացյալ Նահանգների ռազմաքաղաքական հնարավորություններով, որքան «ամերիկանիզմի» գաղափարախոսության իմպերատիվներով, որը Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո սկսեց ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում սոցիալիստական տեսության տարածման ներգործուն անտիթեզ համարվել:

«Ամերիկանիզմի» դոկտրինայի միջուկը դարձավ ամերիկյան հասարակության նախասկզբնական դեմոկրատական բնույթի մասին առաջին անգամ Թոքվիլի ձևակերպած գաղափարը: Ըստ ժամանակակից պահպանողականների որդեգրած այդ գաղափարի «Ամերիկան ոչ թե պարզապես ևս մեկ կայսրություն է տիրապետության հասնելու մարդկային ձգտման երկար շղթայում, այլ փոփոխվող հասարակություն, որի երևան գալը «պատմության կետում» հնարավոր եղավ ոչ միայն կուսական մայրցամաքի հարստության, այլև մարդկային գործերում նոր սկզբունքի առաջին հաջող կիրառման շնորհիվ» (Bell D. The winding Passage: Essays and Sociological gourneys 1960—1980— Cambridge (Mass), 1980, p. 248):

Եվ քանի որ հասարակության սոցիալիստական վերակառուցման առաջին հաջող փորձը միանշանակ գնահատվեց որպես ուղղակի մարտահրավեր «ամերիկյան էքսպերիմենտին» այդ ժամանակվանից թոքվիլյան գաղափարը միանգամայն որոշակի գաղափարախոսական հավելում ստացավ: Նրա հակասոցիալիստական մեկնաբանման ձևավորման գործում փոքր դեր չխաղաց «Ամերիկայի և Ռուսաստանի՝ որպես ապագայում աշխարհի զարգացման շարժիչ ուժերի նախատիպերի Թոքվիլի կողմից բացահայտ հակադրման...» (Drescher Dilimmér of Demorracy: Tocqueville and Modernization Pitsbourgh, 1968, p. 4):



ֆրանսիացի սոցիոլոգի գաղափարական ժառանգությունը: Պատմական նոր պայմաններում այդպիսի հակադրման տրամաբանությունը հանգեցրեց այն բանին, որ «ամերիկյան բացառիկությունն» սկսեց մեկնաբանվել որպես սոցիալիստական հեռանկարի նկատմամբ Ամերիկայի «իմունիտետի» հիմք, իսկ «ամերիկանիզմի գաղափարախոսությունը» որպես հակակշիռ սոցիալիստական գաղափարախոսությանը: Դրանից հետևում է, որ այս կամ այն հասարակայնության կողմից զարգացման ամերիկյան մոդելի ընդունումը կարող է լիովին վերացնել նրա սոցիալիստական վերափոխման «վտանգը», մի դրույթ, որը մինչև օրս էլ արտահայտում է «ամերիկյան բացառիկության» կոնցեպցիայի հիմնական գաղափարախոսական ուղղվածությունը:

Երկրորդ համաշխարհային պատերազմին հաջորդած ժամանակաշրջանն աչքի ընկավ միջազգային ասպարեզում քաղաքական ուժերի տեղաբաշխման մեջ տեղի ունեցած մի շարք արմատական փոփոխություններով: Իր նշանակությամբ ու հետևանքներով հիրավի դարակազմիկ իրադարձություն եղավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը: Սկսվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումը, որի արդյունքը դարձավ մի շարք ազատագրված երկրների կողմից քաղաքական անկախության ձեռքբերումը: Միաժամանակ բացահայտվեց նաև մի այլ միտում. Միացյալ Նահանգները, գրավելով գլխավոր դիրքը կապիտալիստական երկրների մեջ, լցրեց Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում Եվրոպական գաղութային տիրապետության անկումից հետո առաջացած «վակուումը»: Անգլիացիները, ֆրանսիացիները և հոլանդացիները գրեթե լիովին դուրս մղվեցին Հարավ-արևելյան Ասիայից, անգլիացիները՝ Մերձավոր Արևելքի և Արգենտինայի տարածքներից, ֆրանսիացիները՝ հիմնականում Հյուսիսային Աֆրիկայից: «Եվրոպայի անկումը և ամերիկյան ազդեցության ընդլայնումը,— ինչպես նշել է Բելը,— ընթանում էին միատեղ» (Bell D. The cultural contradictions of capitalism N. Y. 1976, p. 215):

ԱՄՆ-ի նվաճողականությունն իր ձևերով ու մեթոդներով տարբերվում էր ավանդական գաղութային ստրկացումից: Նրա նեոգաղութատիրական էությունը դրսևորվեց արտաքին քաղաքական թելադրանքի՝ առավելագույնս տնտեսական լծակների վրա հենվելու մեջ:

Ամերիկյան էքսպանսիայի համար հիմնական գործիք դարձան տարազգային մոնոպոլիաները, որոնք լիովին իրենց ենթարկեցին միջազգային տնտեսական շուկաները և վիթխարի ծովահենշի պես պարուրեցին աշխարհը, հատկապես՝ դեռ չամրապնդված երիտասարդ պետությունները, կաշկանդեցին նրանց ազգային էկոնոմիկայի զարգացման պահանջներին հակասող իրենց սեփական շահերի ճյուղավորված ցանցով: Տարազգային մոնոպոլիաների տնտեսական գործունեությունն ուներ նաև հեռուն գնացող քաղաքական հետևանքներ, որոնցից կարևորագույնը դարձավ Միացյալ Նահանգների կողմից առաջնային դերի անակնկալ, հախուռն նվաճումը համաշխարհային քաղաքական ասպարեզում: Տարազգային մոնոպոլիստական միավորումների միջազգային տնտեսական շահերը, միավորումներ, որոնցում գլխավոր դիրքը գրավել է ամերիկյան կապիտալը, ընկան ԱՄՆ-ի ռազմաքաղաքական դաշինքների կազմավորման հիմքում: Դրանք կոչված էին այդ շահերի ապահովման արդյունավետ սիստեմ ծառայելուն: Այսպիսով, այդ դաշինքները երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ձևավորված ամերիկյան իմպերիայի հիմնամասը կազմեցին:

Պատմական նոր պայմաններում Միացյալ Նահանգները համաշխարհային իմպերիալիզմի գլխավոր ռազմաքաղաքական ուժը դարձան: «Ճակատագրի կանխորոշման» գաղափարն սկսեց մեկնաբանվել որպես համաշխարհային կարգուկանոնի սահմանադիր և ղեկավար լինելու ԱՄՆ-ի գլոբալ առաքելության հիմնավորում: ԱՄՆ-ի դերի այդպիսի ըմբռնման շրջանակներում առաջացավ «ամերիկյան դարի» կոնցեպցիան, ըստ որի Միացյալ Նահանգների համաշխարհային քաղաքականության առաջաբեմ դուրս գալը մարդկության ընդհանուր «ամերիկանացման» սկիզբն է, «ամերիկանիզմի» գաղափարախոսության՝ ամերիկյան դեմոկրատիայի, ամերիկյան կուլտուրայի, ամերիկյան ինստիտուտների և ապրելակերպի, «իսկական հաղթանակը»: Լկտիացած շովինիզմի, ԱՄՆ-ի ազգային պատմության աստվածացման կնիք կրող այդ կոնցեպցիան առաջին անգամ 1942 թվականին ձևակերպեց Հենրի Լյուսը՝ «Թայմ» հանդեսի տնօրենը:

«Եվ այդուհանդերձ, ոչ միայն համաշխարհային կարգուկանոնի կամ ազգային շահերի առողջ նկատառումներն էին առաջ մղում ամերիկյան ճակատագիրը,— գրել է Բելը:— Այն առաջ էին մղում, գրեթե անխուսափելիորեն, մեսիական լեզուն և

կոչման զգացումը, որոնք ծառանգվել էին ամերիկյան բնավորությունից...» (Bell D. The Winding Passage. p. 253—254): ԱՄՆ-ի ազգային գաղափարաքաղաքական ավանդույթների առանձնահատկությունների մասին այդպիսի վկայակոչումները, որոնք մշտապես կապված էին դրանց բացարձականացման և ֆետիշացման հետ, միանգամայն բնորոշ են նորպահպանողականության տեսաբանների համար: Դրանք ԱՄՆ-ի նվաճողական քաղաքականությունը, համաշխարհային հանրությանը սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման տիրահոչակ ամերիկյան մոդելի պարտադրման կուրսը հիմնավորելու յուրօրինակ միջոց են: Զգտելով ուրիշ երկրների ստիպել ներքաշվելու իրենց քաղաքականության ազդեցության ոլորտը, ԱՄՆ-ի կառավարող շրջաններն ամերիկյան և համաշխարհային հասարակության աչքում այդ միջոցներն արդարացնելու համար նպատակամղված կերպով օգտագործում են մարդկության մյուս հատվածի հանդեպ Ամերիկայի «մեսիական պարտականության» բարոյախոսական նրբերանգներով գունազարդված գաղափարը: Ընդ որում Միացյալ Նահանգները ներկայացվում են որպես մարդու ազատության և իրավունքների ջատագով, իսկ երկրագնդի տարբեր մասերում ամերիկյան ռազմական ներկայությունը՝ դրանց հարգման անհրաժեշտ պայման:

Իրականում, և դրա վկայությունն է միջազգային հարաբերությունների ողջ հետպատերազմյան պատմությունը, ԱՄՆ-ի «գլոբալ առաքելությունը», ինչպես իսկապես պարզվեց, մի կողմից, սեփական եսասիրական շահերի ամբարտավանորեն հաստատումն է ամենուրեք, որտեղ որ դա հնարավոր է, իսկ մյուս կողմից՝ ուրիշ երկրների շահերի անպատկառ ոտնահարումը: Կազմելով իմպերիալիստական դիկտատի քաղաքականության անխզելի օղակները, ԱՄՆ-ի ստրատեգիայի այդ բաղադրամասերը միջազգային ասպարեզում այնքան ակնհայտ են, որ դրանք չեն կարող կասկածի տակ դնել նույնիսկ իրենք՝ ամերիկյան տեսաբանները, այդ թվում նորպահպանողական կողմնորոշման տեսաբանները: Օրինակ, նույն Բելը գրում է ազգային ոճի հիմնարար որակային բնութագրումների մասին, «որոնք կողմնորոշում են ամերիկյան գործողությունները, այսինքն՝ վերամբարձությունն ու «էգոիստական կազմալուծումը», որոնք արտահայտվեցին այն վստահության մեջ, թե Ամերիկան համաշխարհային կարգի խնամակալ է և որ Միացյալ Նահանգները սեփական արժանապատվության զգացումը հիմնավորելիս (իբրև կանոն, գունազարդված բարոյական երանգներով) պետք է իր վրա վերցնի «իրավամբ իրեն պատկանող» ազատ աշխարհի պարագլխի դերը» (Bell D. op. cit, p. 255):

«Ամերիկյան դարի» գաղափարով հրապուրվելը դեռևս 60-ական թվականների վերջում 70-ականների սկզբում, ամենուրեք բախվելով ԱՄՆ-ի արտաքին քաղաքական դիրքերի թուլացման փաստին, որը խորանում էր ամերիկյան հասարակությունում ներքին ճգնաժամային պրոցեսների ուժեղացման պատճառով, իր տեղը զիջեց հոռետեսական տրամադրություններին: Ամերիկյան իմպերիալիզմի խայտառակ պարտությունը Վիետնամում, Ուոթերգեյթյան սկանդալը և 1973 թվականի տնտեսական ճգնաժամը պրոբլեմների ու հակասությունների այն վիթխարի «սառցալեռան գագաթներն» էին, որոնք մինչ այդ ծածկված էին հետպատերազմյան տնտեսական կոնյունկտուրայի վարդագույն մշուշով, սակայն դրա ցրվելու հետ ամբողջ հասակով մեկ վեր հառնեց՝ դրդելով սթափորեն գնահատելու ԱՄՆ-ի վիճակը և նրա արտաքին քաղաքական հնարավորությունները: Ամերիկացի տեսաբանների աշխատություններում և ելույթներում գերակշիռ թեմա դարձան ամերիկյան կապիտալիզմի ճգնաժամի ինչպես ներքաղաքական, այնպես էլ միջազգային ասպեկտների արձանագրումն ու վերլուծությունը:

Նորպահպանողական տեսաբաններին առանձնապես մտահոգում է էգալիտարիզմի միտումը՝ համաշխարհային, արտաքին տնտեսական շուկայի մեխանիզմը շրջանցելով՝ տնտեսական բարիքների քաղաքական վերաբաշխման ձգտումը: Զբիգնև Բժեզինսկու կարծիքով, այդ միտումը ժամանակակից միջազգային հարաբերությունների գլխավոր առանձնահատկությունն է: «Այսօր,— գրել է նա,— ինդիվիդուալիզմի, ազատ ձեռնարկչության, աշխատանքային էթիկայի և արդյունավետության ավանդական ամերիկյան արժեքները ինչպես երկրի ներսում, այնպես էլ դրսում վիճարկվում են այնպիսի երևույթների կողմից, ինչպիսիք են աթեյտիզմը, կոլեկտիվության (ազգային կամ սոցիալական), սոցիալական հավասարության և բարեկեցության վրա հենվելը» (Brzezinski Z. America in a Hostile world II Foreign Policy— № 23— Summer 1976, p. 73): Միջազգային հարաբերությունների լարվածությունը տվյալ դեպքում միանգամայն հիմնավոր կերպով կապակցելով տնտեսական հարստության և քաղաքական ազդեցության անհավասարաչափ բաշխման հետ, Բժեզինսկին այդ լարվածության գլխավոր դրսևորումներից մեկն է համարում հակաամերիկյան տրամադրությունների աճը, որը տանում է դեպի «Ամերիկայի մեկուսացում թշնամական աշխարհում» (նույն տեղը, էջ 65)— Միացյալ Նահանգների քաղաքական-տնտեսական և գաղափարախոսական հեղինակության անշեղ անկում միջազգային ասպարեզում:



Բոլոր հիմքերը կան ասելու, որ, չնայած կայսերապաշտական գեոքաղաքականության գաղափարախոսների չթուլացող ակտիվությանը, ԱՄՆ-ի հասարակական գիտակցության մեջ ուժեղանում է արտաքին աշխարհի հետ երկրի հարաբերությունների սահմանման նկատմամբ ռեալիստական մոտեցման անհրաժեշտության ըմբռնումը: Ավելի ու ավելի հստակ է գիտակցվում համաշխարհային զարգացման ողջ միտումների սթափ, կշռադատված հաշվառման, Միացյալ Նահանգների դրանցից բխող հնարավորությունների և միջազգային հարաբերություններում լարվածության հետագա սրման ճանապարհին կանգնած օբյեկտիվ վերջնագծերի հաշվառման պահանջը: Այդ տրամադրություններն իրենց արտացոլումն են գտնում նաև նորպահպանողականության տեսաբանների շրջանում, որոնք հարկադրված են այս կամ այն կերպ հաշվի առնելու ազգային խորհրդանիշերի և ուռա-հայրենասիրության զգացմունքների ապավինման վրա խարսխվող արտաքին քաղաքական կուրսի հասարակական պաշտպանման սահմանագծերը: «Ռեյգանի վարչակազմը,— օրինակ, նշում է քաղաքագետ Ջեյմս Բիլինգտոնը,— օգնեց Ամերիկային վերադարձնելու ինքնահարգման զգացումը, դրական ընկալումը այն հարցի, թե մեզանից ինչ ենք մենք ներկայացնում, բայց այն բանի ըմբռնման ձեռքբերումը, որտեղ այժմ մենք գտնվում ենք, անհամեմատելի քիչ է» (Billington G. H. Realism and Vision in American Foreign Policy II Foreign Affairs. Vol. 65, № 3, 1987, p. 631): Այնինչ միանգամայն պարզ է, որ մոլորակում արդի իրադրությունը, դեռևս գերհագեցած մահաբեր միջուկային զենքով, թելադրում է ԱՄՆ-ի վարչակազմին անհրաժեշտաբար որոշելու իր տեղը մարդկության գլոբալ զարգացման մեջ, ներդնելու իր ավանդը հանուն անվտանգության հաստատման բոլոր ժողովուրդների ընդհանուր գործում:

Այսօր արդեն չկա ոչ մի օբյեկտիվ արգելք զինաթափման ուղիով համատեղ ընթանալու գործում: Ինչպես արդարացիորեն նշում է Գ. Ա. Արբատովը «Կոմունիստ» հանդեսի 1987 թ. № 2-ում միլիտարիզմի ակունքների ու ճակատագրերի վերաբերյալ, պատերազմը արդի պայմաններում դադարել է բուրժուազիայի համադասակարգային շահերին համընկնելուց: «Պատճառներն ակնհայտ են,— գրում է նա:— Դրանցից մեկն այն է, որ պատերազմի սանձազերծման համար կապիտալիզմը, ինչպես ցույց տվեց պատմությունը, ստիպված վճարեց սոցիալական ցնցումներով: Մյուսը կապված է գիտության ու տեխնիկայի առաջընթացի հետ: Այն հանգեցնում է նրան, որ պատերազմը դարձել է խելացնոր, ինքնասպան՝ նույնիսկ ճընշող փոքրամասնության տեսակետից»:

Աշխարհում ուժերի արդի տեղաբաշխումը կապիտալիզմի ներքին կացության համար վտանգավոր է դարձնում ոչ միայն «մեծ» պատերազմները, առաջատար ռազմաքաղաքական խմբավորումների խոշոր մասշտաբի ընդհարումները: Նույնիսկ «փոքր» կամ, ինչպես դրանք նաև անվանում են ռեգիոնալ պատերազմներ և «փոքր-«փոքր» կամ, ինչպես դրանք նաև անվանում են ռեգիոնալ պատերազմներ և «փոքր- «փոքր» կամ, ինչպես դրանք նաև անվանում են ռեգիոնալ պատերազմներ և «փոքր-ինտենսիվության» կոնֆլիկտները կարող են լրջորեն ապակայունացնել կապիտալի երկրների քաղաքական իրավիճակը: Դրա ակնառու օրինակն է Վիետնամում ԱՄՆ-ի սանձազերծած պատերազմը, որը ծայրաստիճան շիկացրեց երկրի քաղաքական կացությունը և ամերիկացիներին մղեց լրջորեն վերագնահատելու իրենց պատկերացումներն աշխարհում ԱՄՆ-ի դերի մասին:

Ազգի ուշադրությունը բևեռելով Ամերիկայի հնարավորությունների «սպառման» վրա, պատերազմը Վիետնամում ունեցավ նաև մի այլ, ոչ պակաս կարևոր հետևանք: Այն զարկ տվեց հենց Միացյալ Նահանգներում ճգնաժամային պրոցեսների զարգացմանը՝ սաստկացնելով երկրի քաղաքական կուրսի սահմանման նկատմամբ հակադեմոկրատականության և ավտորիտարիզմի միտումները: Այսպիսի պայմաններում լիովին բացահայտվեց ամերիկյան սահմանադրությամբ հռչակված բուրժուադեմոկրատական իդեալների և ԱՄՆ-ի կառավարող շրջանների այդ իդեալներին հակոտնյա ռեալ քաղաքականության հակասությունը:

Նշելով «ամերիկյան իդեալների» և «ամերիկյան ինստիտուտների» միջև եղած խզումը, որը, ի դեպ, մեր օրերում բացահայտվեց «Իրանգեյթում» որպես «դեմոկրատիայի» և «կայսրության» հակասություն, Բելը փաստորեն խոստովանում է «կայսրությունը» մինչև օրս գոյություն ունեցած ձևով պահպանելու փորձերի սնանկությունը: «Կայսերակալական դերը,— գրել է նա,— դժվարին է ամեն մի ազգի համար, որովհետև դա նշանակում է մեծ քանակությամբ մարդկանց և նյութական ռեսուրսների օգտագործում, որը, եթե շահույթ չի բերում, սուր լարվածություն է հարուցում ազգի մեջ: Դեմոկրատիայի և կայսրության փոխհարաբերությունները առանձնապես տառապալից են, ուստի և ավելի ու ավելի հասկանալի է դառնում, որ կայսերակալական դերը Միացյալ Նահանգների քաղաքական կառուցվածքին և ազգային ոգուն համապատասխանող դեր չէ» (Bell D. op. cit., p. 201):

Ընդհանուր առմամբ գնահատելով Ամերիկայի առաջիկա տասնամյակների հեռանկարները, Բելը հանգում է այն եզրակացության, որ տեսանելի ապագայում Միացյալ Նահանգները դեռևս կարող են մնալ որպես առաջնակարգ տերություն, սակայն այն չի կարող հեգեմոնիայի հավակնություն ունենալ ո՛չ «համաշխարհային ոստիկանի» ալտրուիստական վիլսոնյան հայացքի, ո՛չ էլ «կապիտալիստական տնտեսական գերակշռության» սառը, հաշվենկատության տեսակետից: Միացյալ Նահանգները բավականին դժվարություններ կկրեն... իրենց իսկ քաղաքական կայունությունը պահպանելու նպատակով:

Բելի՝ չափավոր պահպանողական շրջանների հայացքներն արտահայտողի, այս առողջ դատողությունները նկատելիորեն տարբերվում են աջ պահպանողական ուժերի դիրքից: Դրանք ԱՄՆ-ի արտաքին քաղաքական դերի նորպահպանողական մեկնաբանումների ներքին ոչ միատարրության մասին են վկայում: Արտաքին աշխարհի հետ ԱՄՆ-ի հարաբերությունների պրոբլեմների մասին տեսակետների բացահայտումը և նշված շերտավորումների վերլուծությունը, դրանց ուսումնասիրումն ընդհանուր և առանձնապես նորպահպանողական գաղափարաքաղաքական կողմնորոշման հայեցակետից միանգամայն հրատապ խնդիր է:

---



# ԳԱՌՆԻՆ ԵՐԵԿ, ԱՅՍՕՐ, ՎԱՂԸ

**Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

ՔԱՂԱՔԱՄԱՅՐ ԵՐԵՎԱՆԻՑ 25 կիլոմետր հարավ-արևելք Գեղամա լեռնաշղթայի ստորոտին, Ազատ գետի աջ ափին տարածվել է չորսհազարամյա պատմություն ունեցող Գառնի գյուղը: Վկայակոչելով ավանդությունները՝ քերթողահայր Մովսես Խորենացին նրա հիմնադրումը վերագրում է Հայկ Նահապետի ծոռ Գեղամին, որի թոռան՝ Գառնիկի անունով էլ կոչվում է գյուղը:

Հայաստան աշխարհին ու նրա հինավուրց ճակատագրին հար և նման է եղել գյուղի ճակատագիրը: Հրաշագեղ բնության գրկում ծվարած անմատչելի ամրոցի, բազավորական ամառանոցի ու զորանոցի մոտ հաճախակի են բախվել հռոմեացիների ու պարսիկների, արաբների ու մոնղոլների, թաթարների ու թուրքերի արյունոտ սրերը: Օտարախուժ հորդաները ավերել ու հողին են հավասարեցրել գյուղը, կործանել ամրոցն ու հեթանոսական եզակի տաճարը, կոտորել ու գերեվարել ժողովրդին: Օգտագործելով կռիվներին ու ասպատակություններին հաջորդած կարճատև միջոցները՝ գյուղի մարդիկ ավերվածը վերաշինել են, կարգի բերել, մշակել դաշտերն ու այգիները, շարունակել ապրել ու գոյատևել:

Պատմության մշտահոլով ընթացքը շարունակվեց մինչև XVII դարի սկիզբը: Վերստին արհավիրքը կախվեց գյուղի գլխին: Իրանի արյունարբու Շահ Աբասի անողորմ կամքով բնակիչների մեծ մասը սրի քաշվեց, սակավաթիվ ողջերը բռնությամբ տեղահանվեցին իրենց բնօրրանից ու քշվեցին Պարսկաստանի խորքերը: Այնուհետև վրա հասավ 1679 թվականի ահեղ երկրաշարժը, որը հիմնովին ավերեց, ամայացրեց գյուղը: Շուրջ 200 տարի անմարդաբնակ մնաց Գառնին: Ավերակների վրա կռնչում էին բուերը, վայում էր չարագուշակ քամին:

Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց հետո, 1828—1830 թվականներին, Մակու քաղաքից ու նրա շրջակայքից ներգաղթած հայերը վերաբնակեցվեցին այստեղ, վերստին շենացրին, կյանք ու կենդանություն տվին գյուղին: Այնուամենայնիվ, դարասկզբին Գառնին խոշոր, անկանոն ու ծուռումուռ փողոցներով, հողաշեն ու խարխուլ, իրար վրա հենված տներով, աղքատ ու խեղճուկրակ մի բնակավայր էր:

Հինավուրց գյուղը իսկական վերածնունդ ապրեց խորհրդային իշխանության տարիներին: Մեծ Հայրենականից անմիջապես հետո կազմվեց Գառնիի հատակագիծը, որի հիման վրա բացվեցին ուղիղ ու լայնահուն փողոցներ, ձևավորվեցին գողտրիկ հրապարակներ, ծավալվեցին բարեկարգման, շինարարական ու կառուցապատման աշխատանքներ: Ծնունդ առան մշակույթի օջախներ, դպրոցական ու նախադպրոցական հիմնարկներ, առևտրական ու կենցաղային սպասարկման ձեռնարկություններ, արտադրական շենքեր:

Հատկապես արագ թափ հաղորդվեց անհատական բնակարանային շինարարությանը: Գյուղի աշխատավորները՝ բանվոր-ծառայողները, պետության օգնությամբ կառուցեցին երկհարկ, եռահարկ, բազմասենյականոց լուսավոր ու հարմարավետ առանձնատներ, որոնք օղակվեցին գողտրիկ բարեբեր այգիներով: Մոտակա խորախոր կիրճի և Գողթի աղբյուրների սառնորակ ջուրը հոսեց գյուղ, խոխոջաց յուրաքանչյուր հարկի տակ: Խողովակաշարերով գյուղ հասցվեց Ազատ գետի՝ Աղմաղանի բարձրադիր լանջերից սկիզբ առնող վտակը, որով և լուծվեց ոռոգելի ջրի պրոբլեմը: Ջուրը հոսեց դարերով պապակ դաշտերը, վերափոխեց շրջապատը:

Գյուղի զարդն են հնագիտական հուշարձանները ու ճարտարապետական կոթողները: Պետությունը անհրաժեշտ միջոցներ տրամադրեց՝ դը-

---

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱՐԱՄԱՅԻՍ ՄԵՍՐՈՊԻ— Աբովյանի շրջանային «Արշալույս» թերթի խմբագրի տեղակալ*

րանք վերականգնելու համար: Անվանի ճարտարապետ, հանրապետության պետական մրցանակի դափնեկիր Ալեքսանդր Սահինյանի ղեկավարությամբ վերստին հնամենի տեսքն առավ շուրջ 20 դար առաջ կառուցված Գառնիի հեթանոսական տաճարը՝ մեր ժողովրդի շինարարական հանճարի եզակի դրսևորումներից մեկը, որն այսօր էլ դեպի իրեն է գրավում աշխարհի տարբեր ծագերից այցելող տասնյակ հազարավոր զբոսաշրջիկների: Վերականգնվեցին նաև Բազիլիկ, Մաշտոց Հայրապետ եկեղեցիները, հնագիտական և պատմաճարտարապետական այլ հուշարձաններ:

Գյուղի բարեկարգման ու կառուցապատման երկրորդ, առավել էական փուլը սկսվեց վերջին տարիներին, երբ կուսակցության Կենտկոմը մի շարք կարևոր որոշումներ ընդունեց տեղական խորհուրդների դերի ու հեղինակության բարձրացման, նրանց իրավունքների ընդլայնման վերաբերյալ: Նրանք ևս ակտիվորեն ներգրավվեցին ողջ երկրում ծավալված մեր կյանքի բոլոր ոլորտների արմատական վերակառուցման հեղափոխական ծրագրի իրականացմանը: Եվ ահա Գառնիի գյուղխորհրդի գործադիր կոմիտեն, դեպուտատները, մշտական հանձնաժողովները անհամեմատ աշխուժացրին իրենց գործունեությունը, սկսեցին ավելի գործնականորեն զբաղվել գյուղի սոցիալական զարգացման հարցերով, գլխավորել բարեկարգման ու կառուցապատման աշխատանքները: Այդ գործում իրենց ներդրումն արեցին խորհրդի ակտիվիստները, հասարակական կազմակերպությունները, կենսաթոշակառուները, պատերազմի ու աշխատանքի վետերանները:

Անդրադառնալով իշխանության տեղական մարմինների ինքնուրույնության և ակտիվության ուժեղացմանը՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը կուսակցության XXVII համագումարում ասաց, որ յուրաքանչյուր խորհուրդ պետք է «դառնա լիիրավ և պատասխանատու տեր այն ամենում, ինչը վերաբերում է մարդկանց ամենօրյա պահանջմունքների ու կարիքների բավարարմանը, հատկացվող միջոցների, տեղական հնարավորությունների ու ռեզերվների օգտագործմանը, բնակչության սպասարկման բնագավառում բոլոր կազմակերպությունների աշխատանքի կոորդինացմանը և վերահսկողությանը» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 79): Այս պահանջը գործողության ուղեցույց է նաև Գառնիի գյուղական խորհրդի, նրա գործկոմի համար: Բնականաբար, սոցիալական խնդիրների լուծման համար նախ և առաջ պետք էր ունենալ համապատասխան նյութական բազա, ձեռք բերել դրամական բավարար միջոցներ: Շրջանային խորհրդի՝ այդ նպատակին հատկացված միջոցները չնչին էին, աննշան: Ուրեմն անհրաժեշտ էր որոնել ֆինանսական այլ աղբյուրներ, գտնել ու կյանքի կոչել այլ հնարավորություններ:

Բազմակողմանի նախապատրաստությունից հետո գումարվեց գյուղական խորհրդի հերթական նստաշրջանը: Օրակարգում գյուղի բարեկարգման աշխատանքներին խորհրդի տարածքում գտնվող ձեռնարկությունների և կազմակերպությունների մասնակցության հարցն էր: Իր զեկուցման մեջ գործադիր կոմիտեի նախագահ Նորիկ Սմբատյանը, նստաշրջանի մասնակիցներին ներկայացրեց գյուղի սոցիալական զարգացման ընթացիկ ու հեռանկարային պլանները, հանգամանորեն ցույց տվեց դրանց իրականացման գործում յուրաքանչյուր ձեռնարկության, կազմակերպության ու կոլեկտիվի կոնկրետ անելիքները: Այնուհետև հանդես եկան Գառնիի սովխոզի դիրեկտոր Մերուժան Պապոյանը, վերգետնյա տիեզերական և սեյսմականխատեսումների համակարգի հատուկ կոնստրուկտորական բյուրոյի պետ, ՀԽՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Անդրանիկ Իոսիֆյանը, մեխանիկական գործարանի մասնաճյուղի դիրեկտոր Զորիկ Վասիլյանը: Նրանք խոստացան իրենց օգուտների հաշվին դրամական միջոցներ հատկացնել գյուղի սոցիալական զարգացման ծրագիրը իրականացնելու համար:

Գյուղական վարչական տարածքում գտնվող տեղամասային հիվանդանոցի, կապի բաժանմունքի, Խոսրովի արգելոցի, շրջսպառկոոպմիության, կենցաղսպասարկման արտադրական վարչության, ջրային տնտեսության, ջրմուղ-կոյուղու վարչության ներկայացուցիչները նույնպես պատրաստակամություն հայտնեցին համապատասխան օգնություն ցույց տալ, հոգալ անհրաժեշտ գումարներ հայթայթելու մասին: Պարզվեց, որ սկզբնական շրջանում գյուղխորհրդի տրամադրության տակ կարող է դրվել շուրջ 300 հազար ռուբլի գումար:

Այժմ արդեն կարելի էր ձեռնամուխ լինել կոնկրետ գործի: Խորհրդի բարեկարգման մշտական հանձնաժողովի նախագահ Վարուժան Սարգսյանը եղավ շրջանի ճարտարապետական բաժնում, հողաշինարարական ծառայությունում, համապատասխան կոնսուլտացիաներ ստացավ, պարզեց իր անելիքները: Ապա հանձնաժողովն իր նիստում քննարկեց գյուղամիջյան գլխավոր փողոցների բարեկարգման ու ասֆալտապատման, կամուրջների անցկացման հարցը, մշակեց համապատասխան հանձնարարականներ և ներկայացրեց խորհրդի գործկոմ: Ըստ այդ հանձնարարականների պատվիրվեցին համապատասխան նախագծեր, կազմվեցին նախահաշիվներ: Շրջանային խորհրդի գործադիր կոմիտեն շինարարական աշխատանքների իրականացումը հանձնարարեց «Հայտրանսշին» տրեստի № 916 շինվարչության կոլեկտիվին, որը բարեխղճորեն կատարեց տրված առաջադրանքը: Կարճ ժամանակամիջոցում բարեկարգվեցին ու ասֆալտապատվեցին գյուղի երեք կենտրոնական գլխավոր փողոցներ, ապա նրանց հատվող ևս չորս փողոց՝ շուրջ 12 կիլոմետր երկարությամբ: Դեպի հեթանոսական տաճար տանող փողոցը, որը տուրիստական բանուկ մայրուղի է, երկու կողմերից խնամքով ցանկապատվեց: Այնուհետև Գեղարդ տանող ճանապարհի վրա կառուցվեց ստորգետնյա անցուղի, որը գյուղի երկու խոշոր թաղամասերը կապեց միմյանց հետ: Կառուցվեցին նաև մի շարք փոքր կամուրջներ ու անցուղիներ, անցկացվեցին հաղորդակցության այլ գծեր:

Ամփոփելով կատարված աշխատանքի առաջին արդյունքները՝ գյուղխորհրդի գործկոմը գտավ, որ փողոցների ասֆալտապատման ու բարեկարգման գործում կարելի է ներգրավել նաև ողջ բնակչությանը: Իրոք, գյուղի մարդիկ այսօր բավականին ունևոր կյանքով են ապրում: Նրանցից յուրաքանչյուրը խոշոր գումար ծախսելով կառուցում է բազմահարկ, բարեշեն առանձնատուն և ինչո՞ւ պիտի միջոցներ խնայի իր տան մերձակա փողոցը բարեկարգելու և ասֆալտապատելու համար: Չէ՞ որ դա հենց իր առողջության ու բարեկեցության նպատակին է ծառայում:

Շուտով տպագրվեց ու տարածվեց համապատասխան կոչ: Տնետուն շրջեցին դեպուտատները, խորհրդի ակտիվիստները, վետերանները, որոնք բացատրեցին, համոզեցին: Առաջինը կոչին արձագանքեցին առանձին էնտուզիաստներ. նրանք իրենց բնակարանամերձ փողոց տեղափոխեցին և փռեցին խճաքար, ավազ: Ապա նրանց հետևեցին նաև ուրիշները: Ներկայումս շուրջ յոթ կիլոմետր երկարությամբ գյուղամիջյան վեց փողոց բնակիչների ուժերով ու միջոցներով հարթեցվել ու խճապատվել է: Մնում է այն ասֆալտապատել: Առաջիկայում այդ գործին ձեռնամուխ կլինի գյուղխորհուրդը: Ասֆալտապատումն, իհարկե, նույնպես կիրականացվի բնակիչների հաշվին:

Մշտական հանձնաժողովի նախաձեռնությամբ հիմնական նորոգման ենթարկվեց մշակույթի տունը, ձեռք բերվեցին նոր գույք ու երաժշտական գործիքներ: Միաժամանակ գյուղի կյանքում նոր իրադարձություն էր երաժշտական դպրոցի բացումը: Այնտեղ արդեն սովորում են բանվոր-ծառայողների 70 երեխաներ: Այնուհետև շահագործման հանձնվեց դպրոցական նոր շենքը: Գյուղն ունեցավ իր երկրորդ հանրակրթական, ապա նաև՝ բանվոր երիտասարդության դպրոցները:

Մարդն ուզում է մեկընդմիշտ կապվել հայրենի հողին ու ջրին, շենացնել իր բնօրրանը և նրա համար այստեղ լայն հնարավորություններ են ստեղծվում: Այդ նպատակով գյուղխորհրդի գործկոմը և պետական տնտեսության դիրեկցիան մտահոգվում են երիտասարդ ու նորակազմ ընտանիքներին տնամերձ հողամասերով ապահովելու մասին: Դա նույնպես սոցիալական զարգացման ծրագրի կետերից է: Ընդհանուր առմամբ վերջին տարիներին տնամերձ հողամաս է հատկացվել 500 ընտանիքի: Եվս 100 ընտանիք հողամասեր կստանա այս տարի: Նրանց մի մասը պետական վարկով և տնտեսության օգնությամբ արդեն ավարտել է նոր բնակարանների կառուցումը, մյուսները շարունակում են շինարարական աշխատանքները: Գյուղի հյուսիսային և արևելյան ծայրամասերում արդեն ձևավորվել են երկու խոշոր բնակելի զանգվածներ: Երբեմնի խոպան, ամայի, խոփի ու սերմնահատիկի երես չտեսած հողատարածությունները շունչ ու կենդանություն են ստացել, զարդարվել ծառ ու կանաչով, դարձել բերք ու բարիքի աղբյուր:

Նոր թաղամասերը, բնականաբար, նոր հոգսեր են բերել: Անհրաժեշտ է լուծել մարդկանց կուլտուր-կենցաղային, առևտրական, բժշկական սպասարկման, ջրամատակարարման և այլ հարցեր, բարեկարգել ու ասֆալտապատել փողոցները: Էներգամատակարարման աշխատանքներն արդեն ավարտվել են: Թաղամասերը հիմնականում ապահովվել են նաև խմելու և ոռոգման ջրով: Կառուցվել և կառուցվում են առևտրական, կենցաղային օբյեկտներ: Գործում են շինանյութերի, պարենային ու արդյունաբերական ապրանքների խանութներ, կենցաղսպասարկման կետեր:

Լուրջ դժվարություններ էին ստեղծվել հեռախոսային կապի ասպարեզում: Եվ ահա գյուղխորհրդի նստաշրջանում քննարկվեցին հեռախոսային կապի ընդլայնման, փոստային առաքումների բարելավման հարցերը: Կապի բաժանմունքի շենքը տեղավորված էր հին, խարխուլ ու հարմարեցված շենքում, զուրկ էր անգամ նվազագույն հնարավորություններից ու պայմաններից: Մինչդեռ գյուղական բնակչության կենցաղում լայնորեն մուտք էր գործում հատկապես հեռախոսային կապը, դառնում հրամայական անհրաժեշտություն: Վիճակն արմատապես բարելավելու համար կապի շրջանային հանգույցը, գյուղխորհրդի գործկոմը դիմեցին կոնկրետ քայլերի: Կառուցվեց և շահագործման հանձնվեց կապի բաժանմունքի նոր երկհարկանի շենք, պայմաններ ստեղծվեցին ոչ միայն փոստային առաքումների նորմալ կազմակերպման, այլև հեռախոսային կապի ընդլայնման համար: Տեղադրվեց 1.000 համարով ավտոմատ հեռախոսակայան: Սեփական հեռախոսով ապահովվեց գյուղի գրեթե յուրաքանչյուր ընտանիք: Հեռախոսային կապ հաստատվեց ինչպես շրջկենտրոնի ու հարևան գյուղերի, այնպես էլ մայրաքաղաքի հետ: Նախատեսվում է առաջիկա մի քանի տարիներին ավելի ընդլայնել հեռախոսային կապը, տեղադրել 500 համարով ևս մեկ կայան, լրիվ բավարարել բնակչության, ինչպես նաև հարևան Գողթ և Գեղարդ գյուղերի աշխատավորության պահանջները:

Բնակչության առողջապահության հարցերը մշտապես գտնվում են գյուղխորհրդի տեսադաշտում: Այդ ասպարեզում ձեռք բերված հաջողությունները մեծապես պայմանավորված են երկարամյա դեպուտատ, գյուղական բուժտեղամասի վարիչ ու հիվանդանոցի գլխավոր բժիշկ Կիմա Խաչատրյանի՝ համընդհանուր ճանաչման արժանացած, հիրավի անձնվեր աշխատանքով: Ավելի քան երեք տասնամյակ առաջ ավարտելով Երևանի պետական բժշկական ինստիտուտը՝ նա աշխատանքի անցավ հայրենի գյուղում: Նրա օրոք բնակչության բուժսպասարկման գործն արմատապես բարեփոխվեց: Բժշկուհին գյուղի աշխատավորների մտերիմ բարեկամն է ու խորհրդատուն, ապրում է իր հարազատ բնակավայրի տնտեսական ու կուլտուրական հոգսերով, ակտիվորեն մասնակցում հասարակական կյանքին: Շուրջ երեսուն տարի գյուղական խորհրդի դեպուտատ է, գլխավորում է բնակչության բուժսպասարկման և բնության պահպանության մշտական հանձնաժողովի աշխատանքը: Իր հիմնական պարտականություններից զատ, պարբերաբար ընդունում է ընտրողներին, լսում նրանց բողոքները, գանգատներն ու առաջարկությունները, ապա լինում շրջանային, հանրապետական վերադաս մարմիններում, պահանջում լուծել բնակչությանը հուզող ամենատարբեր հարցեր:

Երկարամյա դեպուտատը գյուղխորհրդի գործկոմի հետ միասին կարողացավ բնակչության բուժսպասարկման համար ստեղծել լավագույն պայմաններ: Հիմնովին վերակառուցվել է բժշկական տեղամասի մասնաշենքը, շարք է մտել 60 մահճակալով տեղամասային երկհարկանի հիվանդանոցը, որը սպասարկում է նաև մոտակա Գողթ, Գեղարդ, Հացավան, Ողջաբերդ գյուղերի բնակչությանը: Տեղամասային հիվանդանոցն ապահովված է հմուտ ու փորձված մասնագետներով, հագեցած հայրենական ու արտասահմանյան արդիական սարքավորումներով ու գործիքներով: Օգտագործելով ունեցած հնարավորությունները՝ տեղամասի և հիվանդանոցի կոլեկտիվները անհամեմատ բարելավել են բնակչության բուժսպասարկումը, հաջողությամբ վնասազերծել են մի շարք հիվանդություններ: Ուշագրավ է հատկապես հիվանդանոցին առընթեր գործող շտապ բուժօգնության ծառայության աշխատանքը:

Դեպուտատը անգնահատելի ներդրում ունի մասնավորապես առողջ միջավայրի ստեղծման ասպարեզում: Նրա նախաձեռնությամբ ծառատնկման ու սանիտարական մաքրության աշխատանքներ են իրականացվում գրեթե ամեն տարի, գարնանային ու աշնանային ամիսներին: Այդ հարցերով նա հաճախ է անհանգստացնում գյուղխորհրդի գործկոմին, ինչպես և շրջանային վերադաս մարմիններին: Բժշկուհուն մասնավորապես մտահոգում էր աղբահանության գործի կազմակերպումը: Նրա բարձրացրած հարցը ըմբռնումով ընդունեցին շրջանային խորհրդի գործկոմում. հատկացրին հատուկ ավտոմեքենա, որը կանոնավոր կերպով բնակավայրից դուրս է տանում կենցաղային աղբը, նպաստում սանիտարական վիճակի բարելավմանը: Այս գործում արմատական տեղաշարժ կատարելու նպատակով դեպուտատը նախաձեռնել է նաև կոյուղու անցկացման գործը: Հարցը հանգամանորեն քննարկվել է գյուղխորհրդի մշտական հանձնաժողովի նիստում, գործադիր կոմիտեում: Վերադաս մարմինները համոզվել են, որ տուրիստական մայրուղու վրա գտնվող գյուղի համար կոյուղին կենսական անհրաժեշտություն է: Ներկայումս կոյուղին նախագծվում է և եկող հնգամյակում նրա կառուցման աշխատանքները կսկսվեն:

Ժողովրդի ընտրյալի եռանդուն ջանքերը, նըվիրված ու հետևողական աշխատանքը բարձր են գնահատվել: Նա պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, հանրապետությունում առաջինը և առայժմ միակը արժանացել ԽՍՀՄ ժողովրդական բժշկի կոչման: Նա ԽՍՀՄ արհմիությունների կենտրոնական խորհրդի անդամ է, ճանաչում, հարգանք ու հեղինակություն է վայելում ոչ միայն հայրենի գյուղում ու շրջանում, այլև նրա սահմաններից դուրս:

Գյուղի համար կարևոր նշանակություն ունի ջրամատակարարումը: Օր-օրի աճող, ընդարձակվող բնակավայրը պահանջում է հատուկ ուշադրություն նվիրել այդ գործին: Ղեկավարվելով այդ առիթով նստաշրջանի ընդունած որոշմամբ՝ գյուղխորհրդի գործկոմը ներկայումս զբաղվում է ջրամատակարարման ցանցը արմատապես վերակառուցելու հարցով: Հնացած, փչացած խողովակները փոխարինվում են նորերով, տեղադրվում են ջրաչափական կետեր, լրացուցիչ ջուր է բերվում Գողթի աղբյուրներից և այլ վայրերից, պայմաններ են ստեղծվում եղած պաշարները արդյունավետ օգտագործելու համար:

Հաշվի առնելով ընտրողների պատվիրանները՝ երկու տարի առաջ գյուղխորհրդի նստաշրջանը քննարկեց գյուղի գազիֆիկացման հարցը: Ընդունած որոշման հիման վրա շրջանային խորհրդի գործադիր կոմիտեն միջոցներ հատկացրեց, նախագծանախահաշվային փաստաթղթեր պատվիրվեցին, ֆոնդային պարանքներ հատկացվեցին: Ներկայումս գազիֆիկացման աշխատանքներն արագ թափով շարունակվում են: Արդեն բնական գազ են ստացել հարյուրավոր ընտանիքներ:

Գյուղխորհրդի ու նրա դեպուտատների հետևողական աշխատանքով կարգավորվել է բնակչության էներգամատակարարումը: Տեղադրըվել են նոր ենթակայաններ, փոխվել են հին էլեկտրագծերը: Գյուղամիջյան գլխավոր փողոցներում անցկացվել է ցերեկային էլեկտրալուսավորություն:



Պատշաճ աշխատանք է տարվել առևտրի կազմակերպման ասպարեզում: Կառուցվել ու բնակչության տրամադրության տակ են դրվել պարենային ու արդյունաբերական ապրանքների խանութներ, հանրախանութներ, հասարակական սննդի օբյեկտներ: Վերջին տարիներին դըրանց թիվը համալրել են շինանյութերի, ավտոպահեստամասերի խանութները, տասնյակ նաշարանները, սրճարաններն ու բեյարանները: Շաբաթ և կիրակի օրերին հեթանոսական տաճարի մերձակա հրապարակում կազմակերպվում է արվեստի հազվագյուտ նմուշների, հնագիտական իրերի, գրքերի, հուշանվերների աշխույժ վաճառք: Այսօրինակ տոնավաճառները նպատակ ունեն բարելավելու տուրիստների սպասարկումը, բավարարելու նրանց պահանջները:

Գյուղում էապես փոխվել է կենցաղային սպասարկման պատկերը: Նախկին մեկ-երկու կոշկակարի արհեստանոցի և խղճուկ վարսավիրանոցի փոխարեն բնակչության տրամադրության տակ է դրվել կենցաղային սպասարկման ժամանակակից տաղավար՝ իր բազմաթիվ ու բազմապիսի ծառայություններով: Առանձին կետեր ու արհեստանոցներ են բացվել խոշոր թաղամասերում: Ընդհանուր առմամբ բնակչությանը մատուցվում է տասից ավելի կենցաղային ծառայություն: Ըստ որում, ելնելով ներկայացվող պահանջից, ծառայությունների թիվը շարունակ ավելանում է: Ներկայումս գյուղում գործում են մեկուկես տասնյակ կոոպերատիվներ: Դրանցից շատերը հիմնականում զբաղվում են կենցաղային սպասարկման կազմակերպմամբ:

Սոցիալական և կուլտուրական նշանակության կառույցների շինարարության, բարեկարգման ու կանաչապատման ասպարեզում գյուղխորհրդի արդյունավետ աշխատանքը աննկատ չի մնացել: Նա բազմիցս ճանաչվել է մրցության հաղթող և արժանացել շրջանային ու հանրապետական փոխանցիկ դրոշների, հուշադրոշների, 1985—1987 թվականներին պարգևատրվել է ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի երկրորդ և երրորդ կարգի վկայականներով: ԺՏՆՑ-ի արծաթե և բրոնզե մեդալների են արժանացել ակտիվ դեպուտատներ Մերուժան Պապոյանը, Նորիկ Սմբատյանը, Մհեր Հակոբյանը, Վարուժան Սարգսյանը: Ավելի վաղ խորհուրդը նվաճել էր «Սելսկայա ժիզն» թերթի «Գյուղական առաջավոր խորհրդին» մրցանակը:

Այնուամենայնիվ, որքան էլ գոհացուցիչ են հաջողությունները, անելիքները ևս շատ են: Առանձին օղակներում առկա են զգալի թերություններ ու վրիպումներ: Դեռևս ձգձգվում են բարեկարգման ու կառուցապատման աշխատանքները, առանձին թաղամասեր խարխափում են խավարում, անկանոն է ջրամատակարարումը, դպրոցի նոր շենքի կարիք է զգացվում, պակասում են առևտրական ձեռնարկությունները: Վերջին մի քանի տասնամյակներին անխնամ մնալով և անուշադրության մատնվելով՝ ամայացավ երբեմնի հռչագեղ ձորը, զրկվեց ծառ ու կանաչից: Ոչ միայն բերք ու բարիքը պակասեց, այլև շրջակա միջավայրը էկոլոգիական կորուստներ ունեցավ: Գյուղը ըստ էության զրկվեց իր առողջ թոքերից: Այդ թերությունները վերացնելու համար գյուղխորհրդի գործադիր կոմիտեն մշակել և իրականացնում է կոմպլեքսային միջոցառումներ: Ծրագրված է ընթացիկ և եկող հնգամյակներում կառուցել հանրակրթական և երաժշտական դպրոցներ, մսուր-մանկապարտեզ, մարզահրապարակ, առևտրական ու կենցաղսպասարկման ձեռնարկություններ, հիմնովին վերակառուցել խմելու ջրի ցանցը, շահագործման հանձնել կոյուղին, բարելավել շրջակա միջավայրի պահպանությունը: Արդեն ըսկըսվել է ռադիոսարքերի գործարանի նոր մասնաշենքի կառուցումը: Ձեռնարկությունն ընդլայնելու է արտադրական կարողությունները, բանվորական տեղերի թիվն ավելանալու և հասցվելու է 400-ի, ծավալվելու են բարեկարգման ու կառուցապատման աշխատանքներ:

Անցնելով լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման՝ գյուղխորհրդի տարածքում գտնըվող ձեռնարկությունները բարձր շահույթներ են ապահովում, ավելի շատ միջոցներ հատկացնում բնակավայրի սոցիալ-կուլտուրական հարցերի լուծմանը: Լրացուցիչ միջոցներ են ստացվում կոոպերատիվ կազմակերպություններից: Խորհուրդը և նրա գործադիր կոմիտեն, վերակառուցման ոգով տոգորված, ի վիճակի են լուծելու սոցիալական յուրաքանչյուր խնդիր, ավելի բարեկարգ, մաքուր ու գեղեցիկ դարձնելու գյուղը:

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՈՒՄ

**Մ. ՍԱՐԳՍՅԱՆ**

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ զարգացման բոլոր փուլերում երիտա-
սարդությունը կատարել է առաջադիմական դեր: Հենց նրանից է կախված սոցիա-
լիզմի թե՛ ներկան, թե՛ ապագան: «Յուրաքանչյուր սերունդ պետք է իր խոսքն ասի
մեր ընդհանուր պատմության մեջ: Մենք բոլորս այդ պատմության մասնակիցներն ու
կերտողներն ենք: Բայց հենց երիտասարդությունը պետք է լրիվ չափով բացահայտի
այն վիթխարի տնտեսական, գիտատեխնիկական ու մտավոր պոտենցիալը, որ կու-
տակվել է խորհրդային իշխանության տարիներին, բազմապատկի այն, կենսագործի
վերակառուցման մեծ նպատակները: Ու մենք տեսնում ենք, որ երիտասարդությունն
ավելի ու ավելի մեծ չափով է դառնում համաժողովրդական պայքարի ոչ թե սոսկ
մասնակիցը, այլ դրա հարվածային, նախաձեռնիչ ուժը»,— ԽՄԿԿ XIX համամիութե-
նական կոնֆերանսում ունեցած զեկուցման մեջ նշեց Մ. Ս. Գորբաչովը:

ԽՄԿԿ XXVII համագումարը տվեց վերակառուցման փուլում խորհրդային հասա-
րակության սոցիալական կառուցվածքի գիտականորեն հիմնավորված բնութագիրը,
նշեց սոցիալիստական հասարակական հարաբերությունների հետագա կատարելա-
գործման ուղիները:

Մեր հասարակության սոցիալական կառուցվածքում հատուկ տեղ է զբաղեց-
նում երիտասարդությունը, որը միշտ էլ իր ծանրակշիռ ավանդն է ներդրել հեղա-
փոխական նվաճումների ամրապնդման գործում: Այս կապակցությամբ Վ. Ի. Լենինը
1920 թվականի հոկտեմբերի 2-ին տեղի ունեցած Ռուսաստանի կոմունիստական երի-
տասարդության միության համառուսաստանյան III համագումարում ասել է. «...հենց
երիտասարդությանն է վիճակված կոմունիստական հասարկություն ստեղծելու բուն
խնդիրը» (ԵԼԺ, հ. 41, էջ 357):

Այդ ժամանակ երիտասարդության առջև կանգնած էին զանազան խնդիրներ,
բայց դրանցից գլխավորը տնտեսական հարցն էր, որի հաջող լուծման համար ամե-
նից առաջ անհրաժեշտ էր սովորել, տիրապետել գիտելիքների, աշխատանքային
հմտությունների և այլն: Այս առիթով Վ. Լենինը նշել է, որ «կոմունիստ լինել՝ նշա-
նակում է կազմակերպել և միավորել ամբողջ աճող սերունդը, դաստիարակության
և կարգապահության օրինակ տալ այդ պայքարում: Այն ժամանակ դուք կարող եք
սկսել և մինչև վերջ հասցնել կոմունիստական հասարակության շենքի կառուցումը»
(նույն տեղը, էջ 374): Հենց այս պրոցեսն է նշված ժամանակաշրջանում վճռական
դեր կատարել խորհրդային հասարակության սոցիալական կառուցվածքի ստեղծման
գործում:

1918 թվականին աշխարհում առաջին սոցիալիստական պետության սահմանա-
դրությունը 64-րդ հոդվածում հռչակեց. «Խորհուրդներում ընտրելու և ընտրվելու իրա-
վունքից օգտվում են, անկախ դավանանքից, ազգությունից, նստակեցությունից և
այլն, Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության երկսեռ քա-
ղաքացիները, որոնց տասնութ տարին լրացել է ընտրությունների օրը» (Конституция РСФСР, 1918 г., стр. 64):

*ՍԱՐԳՍՅԱՆ ՄՆԱՑԱԿԱՆ ՊԱԳԻԿԻ— Երևանի պետական համալսարանի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար*



Հետագայում, խորհրդային պետության զարգացմամբ, ԽՍՀՄ-ի կազմավորմամբ և համապատասխան սահմանադրությունների ընդունմամբ, երիտասարդության մասնակցությունն ընտրությունների կազմակերպմանն ու անցկացմանը, հասարակության գործերի կառավարմանն էլ ավելի է ընդլայնվում: Աշխատավորների պետության պատմության մեջ առաջին անգամ է հիմնական օրենքում գրված. «Արհեստակցական միությունները, համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը, կոոպերատիվ և հասարակական մյուս կազմակերպությունները, իրենց կանոնադրական խնդիրներին համապատասխան, մասնակցում են պետական և հասարակական գործերի կառավարմանը, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի լուծմանը» (ԽՍՀՄ սահմանադրություն, Երևան, 1989, էջ 7):

Բայց լավ կլիներ, եթե ամեն ինչ ընթանար այնպես, ինչպես ներկայացվում էր: Սակայն անհատի պաշտամունքի և լճացման ժամանակաշրջաններում փաստորեն իրական վիճակն այն էր, որ երիտասարդության աճող պահանջմունքները հաշվի չէին առնվում, ընդունելությունները ՀամԼԿԵՄ շարքերը անցկացվում էին ըստ «վերևից» իջեցված պլանների: ՀամԼԿԵՄ XX համագումարի հաշվետու զեկուցման մեջ նշվեց. «Այդպիսի երիտասարդական կազմակերպության ղեկավարումն էլ ավելի դժվարացավ: Կոմերիտական կյանքի ողջ բազմազանությունը կենտրոնից ընդգրկելու անհնարինությունն ակնհայտ է դարձել: Եվ, այդուհանդերձ, շեշտադրումն առաջվա պես ղեկավարման հետագա կենտրոնացումն է»:

Հրապարակայնության և դեմոկրատացման շրջանում մեր գործունեության համար նոր պայմաններ են ստեղծվում: Պատանիներն ու աղջիկները հնարավորություն են ստացել ստեղծելու նոր կազմակերպություններ ու միավորումներ, երիտասարդական նախաձեռնությունների ֆոնդեր և այլն: Համամիութենական XIX կուսկոնֆերանսում խոսվեց այն մասին, որ պետական մարմինները կարող են մի շարք հարցեր լուծել միայն համապատասխան արհմիութենական, կոմերիտական, կանանց կազմակերպությունների մասնակցությամբ կամ նախնական համաձայնությամբ: Այդ կազմակերպություններին իրավունք է տրվել որոշ դեպքերում դադարեցնել կառավարական որոշումների իրականացումը:

Ներկայումս երիտասարդության վերաբերյալ նոր, առավել արդյունավետ քաղաքականության անհրաժեշտություն է առաջացել, որը նախորդից պետք է տարբերվի ոչ միայն իր գիտական հիմնավորվածությամբ, կոմպլեքսայնությամբ ու հետևողականությամբ, այլև ապահովված լինի թե՛ նյութական, թե՛ կազմակերպական, թե՛ իրավաբանական երաշխիքներով: Այսօր, երբ ամբողջ երկրում ծավալվել է վերակառուցումը, խիստ կարևորվում է երիտասարդության մասին օրենքի ընդունումը, որը, ինչպես նշեց ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը ՀամԼԿԵՄ XX համագումարում, «պետք է երկրի հասարակական կյանքի բոլոր բնագավառներում էլ ավելի ամրապնդի պատանիների ու աղջիկների իրավունքների երաշխիքները: Չէ՞ որ, եթե այդ օրենքում ամփոփենք այն ամենը, ինչ այսօր գործում է, երիտասարդության արդեն ունեցած իրավունքներն ու պարտականությունները, ապա դա արդեն ինքնըստինքյան հսկայական նշանակություն կունենա»:

Երիտասարդության վերաբերյալ պետական քաղաքականության մասին ԽՍՀՄ օրենքի ընդունումը կնշանակեր մի կարևոր առաջընթաց քայլ իրավական խոշոր ռեֆորմի իրականացման գործում, հասարակության պահանջմունքներին, աշխատավորների, նրանց կազմակերպությունների ու կոլեկտիվների շահերին համապատասխանող նոր օրենքների կոմպլեքսի ստեղծման աշխատանքում: Միաժամանակ միանգամայն թույլատրելի է, որ երիտասարդության մասին օրենքը չի կարող դառնալ գոյություն ունեցող բոլոր երիտասարդական պրոբլեմների լուծման միջոց: Այն արդյունավետ երիտասարդական քաղաքականությունն ապահովող միջոցների կոմպլեքսի օղակներից մեկն է: Ընդ որում այդ օրենքի հաջող գործադրումն իր հերթին պայմանավորված է ինչպես քաղաքական, այնպես էլ տնտեսական բնույթի ձեռնարկվող քայլերի արդյունավետությամբ:

ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը և կուսակցության XXVII համագումարն ընդունեցին խորհրդային հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ստրատեգիական կուրս, որում առկա է կյանքի բոլոր ոլորտներում սոցիալիզմի առավելությունները ցույց տալու հնարավորությունը: Դրան հասնելու

երաշխիքները պայմանավորված են ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ծավալումով: ԽՄԿԿ ծրագրում նշվում է, որ այն իրականացվում է «պետական և հասարակական գործերի կառավարման մեջ քաղաքացիների ավելի ու ավելի լրիվ ներգրավման, ընտրական սիստեմի կատարելագործման, ժողովրդական իշխանության ընտրովի մարմինների գործունեության բարելավման, արհմիությունների, կոմերիտմիության, աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունների դերի բարձրացման, ներկայացուցչական և ուղղակի դեմոկրատիայի բոլոր ձևերի արդյունավետ օգտագործման միջոցով...» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 197):

Ժողովրդի ինքնակառավարման ծավալումը կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացման կարևոր ուղղություններից մեկն է: Վ. Ի. Լենինը նշել է, որ «անհնար է հաղթական սոցիալիզմ, որը չի իրականացնում լիակատար դեմոկրատիա...» (ԵԼԺ, հ. 27, էջ 307):

Սոցիալիստական պետության սոցիալական բազան տարեցտարի ընդլայնվում է: Դա արտահայտվում է հասարակական կազմակերպությունների հետ նրա կապերի ամրապնդման մեջ, որոնք սկսել են ընդգրկել աշխատավորների լայն խավերին: Խորհրդային քաղաքական սիստեմում հասարակական կազմակերպությունների դերը զգալիորեն աճել է: Արհմիությունները միավորել են բանվորներին, կոլտնտեսականներին, ժողովրդական մտավորականությանը: Կոմերիտմիությունը բազմամիլիոնանոց կազմակերպություն է դարձել: Վերջին տարիներին ստեղծվում են երիտասարդական բազմաթիվ այլ հասարակական կազմակերպություններ ևս: Խորհրդային Միության կոմունիստական կուսակցությունը մեծ կարևորություն է տալիս ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ծավալման հարցերին: Մ. Ս. Գորբաչովը հատուկ նշել է, որ «սոցիալիզմի կատարելագործումը ոչ պակաս բարդ ու պատասխանատու աշխատանք է, քան այն, որ կատարում էին կուսակցությունն ու ժողովուրդը նրա կառուցման նախորդ փուլերում» (**Ժողովրդի կենդանի ստեղծագործությունը**, «Հայաստան» հրատ., 1985, էջ 9):

Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումն արտահայտվում է աշխատավորների պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների միջոցով: Արդեն ԽՄԿԿ XXVII համագումարի նախօրյակին իրավաբանական գրականության մեջ հայտնվեցին նոր հրապարակումներ, որտեղ խորապես լուսաբանվեցին ԽՍՀՄ-ում ինքնակառավարման պրոբլեմները, նրա հետագա զարգացման ուղիները, այդ գործում հասարակական ու երիտասարդական կազմակերպությունների մասնակցությունը: Բազմաթիվ հրապարակումներում տրվում է ինքնակառավարման՝ որպես կառավարման մեթոդի, ընդհանուր սահմանումը, որը հիմնված է ինքնակազմակերպման, ինքնակարգավորման և ինքնագործունեության վրա: Միաժամանակ առանձնացվում են սոցիալիստական ինքնակառավարման հետևյալ սկզբունքները. իշխանությունն ամբողջ կոլեկտիվին պատկանելը, նրա իրականացումն անմիջականորեն կոլեկտիվի կամ ընտրովի մարմինների կողմից, կառավարման սուբյեկտի և օբյեկտի միասնությունն ու համընկնումը, ինքնակառավարումը համատեղ ընդունած սոցիալական նորմերի միջոցով, ընդհանուր գործերի համատեղ վարումը, ինքնագործունեության հիման վրա բոլորի շահերի պաշտպանությունը:

ԽՍՀՄ սահմանադրությունը երկրի քաղաքացիներին իրավունք է տալիս կոմունիստական շինարարության նպատակներին համապատասխան միավորվելու քաղաքական ակտիվության և ինքնագործունեության զարգացմանը, իրենց բազմազան հետաքրքրությունների բավարարմանը նպաստող հասարակական կազմակերպությունների մեջ: Հարկ է նշել, որ հասարակական կազմակերպությունները ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման կարևոր օղակներն են: Հենց դրա համար էլ նրանց տրված է օրենսդրական նախաձեռնության իրավունք: Եվ ամենագլխավորը՝ հասարակական կազմակերպություններին ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներ ընտրելու իրավունք է տրված:

Հասարակական կազմակերպությունների կանոնադրություններին ծանոթանալիս տեսնում ենք, որ դրանց մեջ որպես կարևորագույն խնդիրներ առաջ են քաշվել աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվության խթանումը, պետական ու հասարակական գործերի կառավարմանը նրանց մասնակից դարձնելը:

Խորհրդային Միության կոմունիստական կուսակցությունը հասարակական կազմակերպությունների գործունեության մեջ ղեկավար դեր է կատարում: ԽՄԿԿ ծրագրում ասվում է. «Կուսակցությունն առաջնահերթ նշանակություն է տալիս հասարակական կազմակերպությունների՝ ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման



սիստեմի կարևոր օղակների դերի բարձրացմանը»: (**ԽՄԿԿ XXVII համագումարի
նյութերը**, էջ 226):

Հասարակական և երիտասարդական կազմակերպությունների՝ որպես սոցիալիս-
տական ինքնակառավարման համակարգի բաղկացուցիչ մասի, բնութագրման ա-
ռանձնահատկությունը որոշվում է այն բանով, որ այդ կազմակերպություններն իրեն-
ցից ներկայացնում են ինքնորոշվող մարմիններ, որոնք ստեղծվում են նրանցում
անդամության կամավորության, կազմակերպության ընդհանուր գործերի վարման
հարցում բոլոր անդամների հավասար իրավունքների, նրա կանոնադրական խըն-
դիրները լուծելիս նախաձեռնության ու ինքնագործունեության զարգացման հիման
վրա:

Երիտասարդության ամենամասսայական հասարակական կազմակերպությունը
ՀամԼԿԵՄ-ն է, գործում են նաև Երիտասարդական կազմակերպությունների կոմի-
տեն, Համամիութենական ուսանողական խորհուրդը, ուսանողական ջոկատները, ե-
րիտասարդության գիտատեխնիկական ստեղծագործության կոլեկտիվները և այլն:
Ամեն մի երիտասարդական կազմակերպություն կոչված է մշակելու և կիրառելու իր
անդամների հասարակական ակտիվության խթանման յուրահատուկ ձևեր ու մեթոդ-
ներ: ՀամԼԿԵՄ և մյուս կազմակերպությունների սկզբնական օղակների գերակշռող
մասը գործում է հասարակական հիմունքներով:

Պետք է նշել, որ երիտասարդական կազմակերպություններից պետական ու հա-
սարակական գործերին մասնակցելու իրավունք առայժմ տրված է միայն ՀամԼԿԵՄ-
ին: Բնական է, որ մեր երկրում դեմոկրատիայի ու հրապարակայնության զարգաց-
մամբ և ամրապնդմամբ միանգամայն թույլատրելի է, իսկ ըստ երիտասարդության
մասին օրենքի նախագծի նախատեսված է երիտասարդական մյուս կազմակերպու-
թյուններին ևս նման իրավունք տալ: Համամիութենական XIX կուսակցական կոն-
ֆերանսում Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Մենք գտնում ենք, որ ԽՄԿԿ-ն, պետությունը
ներկա պայմաններում պետք է ունենան երիտասարդության նկատմամբ կշռադատ-
ված, ամբողջական քաղաքականություն: Եվ միաժամանակ պետք է մշակվեն դրա
իրագործման իրավաբանական, տնտեսագիտական ու քաղաքական մեխանիզմները:
Այդ քաղաքականության՝ որպես կուսակցության, պետական մարմինների, բոլոր
հասարակական կազմակերպությունների գործունեության առանձնահատուկ ուղղու-
թյան իմաստն է երիտասարդության համար ստեղծել այնպիսի մարմիններ ու ազ-
դակներ, որ նա կարողանա առավել լրիվ բացահայտել իր միտքն ու եռանդը, զար-
գացնել ու իրացնել իր ստեղծագործական պոտենցիալը՝ հանուն սոցիալիզմի»:

Ինչպես հայտնի է, արդեն պատրաստ է պետական երիտասարդական քաղա-
քականության մասին օրենքի նախագիծը, որը քննարկվեց 1989 թ. մայիսին ՀամԼԿԵՄ
Կենտկոմի VII պլենումում: Այդ փաստաթղթում երիտասարդական կազմակերպու-
թյուններին տրված է պետական շինարարությանը մասնակցելու իրավունք: Նախա-
տեսված է, որ այդ կազմակերպությունները, ինչպես նաև ՀամԼԿԵՄ Կենտկոմը,
հնարավորություն ունենան մասնակցելու խորհուրդների ընտրությունների ընտրա-
կան հանձնաժողովների աշխատանքին, առաջադրեն և ընտրեն տարբեր խորհուրդ-
ների ժողովրդական դեպուտատներ:

Հայտնի է, որ ՀամԼԿԵՄ-ը օգտվում է օրենսդրական նախաձեռնության իրա-
վունքից: Օրենքի նախագծում նախատեսված է, որ երիտասարդական հասարակա-
կան կազմակերպություններն իրավունք ունենան առաջարկություններ ներկայացնե-
լու ԽՄԿԿ Կենտկոմ, ԽՍՀՄ Գերագույն խորհուրդ և ԽՍՀՄ Մինիստրների խորհուրդ՝
համապատասխան կենսական կարևոր որոշումներ ընդունելու մասին: Հատուկ նշա-
նակություն է տրվում նաև պետության կողմից իրավունքներն իրականացնելու ե-
րաշխիքներին: Այս նպատակով ժողովրդական դեպուտատների առաջին համագու-
մարը ստեղծեց ԽՍՀՄ Գերագույն խորհրդի երիտասարդության գործերի մշտական
կոմիտե, որի մեջ հիմնականում մտան ՀամԼԿԵՄ-ից ժողովրդական դեպուտատներ,
ինչպես նաև ԽՍՀՄ այլ երիտասարդ ժողովրդական դեպուտատներ:

Հարկ է նշել, որ հրապարակայնության և դեմոկրատիայի զարգացմամբ պե-
տության կառավարման գործում բարձրանում է երիտասարդության ավանգարդա-
յին կազմակերպության՝ կոմերիտմիության նշանակությունը: ԽՄԿԿ XXVII համա-
գումարին ներկայացրած ԽՄԿԿ Կենտկոմի քաղաքական զեկուցման մեջ նշվում է.
«Արագացման ստրատեգիան ենթադրում է հասարակական հարաբերությունների
կատարելագործում, քաղաքական և գաղափարախոսական ինստիտուտների աշխա-
տանքների ձևերի ու մեթոդների նորացում, սոցիալիստական դեմոկրատիայի խո-

րացում, իներցիայի, լճացման ու պահպանողականության, այն ամենի վճռական հաղթահարում, ինչը կասեցնում է հասարակական առաջընթացը:

Գլխավորը, որ պետք է ապահովի մեր հաջողությունը, մասսաների կենդանի ստեղծագործությունն է, սոցիալիստական կարգերի հսկայական հնարավորություն-ների և առավելությունների առավելագույն չափով օգտագործումը» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 30):

Ենթադրվում է, որ երիտասարդության մասին կընդունվեն հանրապետական օ-րենքներ: Դա իրական երաշխիք կլինի ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումի որոշումների կենսագործման համար, որտեղ Կենտրոնական կոմիտեի ա-ռաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը մասնավորապես նշեց. «Մենք երբեմն մոռանում ենք կուսակցական մոտեցման էությունը՝ վստահել երիտասարդությանը, ստուգել նրանց կոնկրետ գործերով, անհրաժեշտ պայմաններ ստեղծել վերակա-ռուցմանը պատանիների ու աղջիկների գործնական մասնակցության համար: Կոմե-րիտական շատ կոմիտեներ խորամուխ չեն լինում երիտասարդության շրջանում ըն-թացող բարդ պրոցեսներին, տարվում են թղթաբանությամբ, նիստերով ու խորհըր-դակցություններով՝ ի վնաս կենդանի աշխատանքի»:

Հանրապետության սկզբնական կոմերիտական կազմակերպություններում տեղի է ունեցել երիտասարդության մասին օրենքի նախագծի լայն քննարկում, բոլոր ա-ռաջարկությունները ներկայացվել են Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմ և ՀամԼԿԵՄ Կենտկոմ:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի VIII պլենումը և ՀԼԿԵՄ Կենտկոմի VII պլենումը քննար-կեցին ընթացիկ պահի մասին հարցը, վերլուծեցին կոմերիտական կազմակերպու-թյունների գործունեությունը: Մասնավորապես նշվեց, որ ամբողջությամբ վերցրած ՀամԼԿԵՄ XX համագումարը կոմերիտմիության վերակառուցման հետ կապված պատշաճ հանձնարարականներ չտվեց: Ընդունվել է որոշում ՀամԼԿԵՄ արտահերթ XXI և ՀԼԿԵՄ XXXI համագումարների հրավիրման մասին, որոնք պետք է մշակեն կոնկրետ, իրական երաշխիքներ երկրում և հանրապետությունում պետական երի-տասարդական քաղաքականության իրականացման համար:

---



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԹԱՆԳԱՐԱՆԱՅԻՆ ՑՈՒՑԱՆՄՈՒՇՆԵՐՈՒՄ

Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Մեր երկրում թանգարանային գործի զար-գացման նոր փուլն անխզելիորեն կապված է Վ. Ի. Լենինի անվան ու գործունեության հետ: Նրա անմիջական ղեկավարությամբ խորհրդային իշխանության հաստատման առաջին իսկ օրերից անցկացվեցին մի շարք միջոցառումներ՝ թան-գարանային արժեք ունեցող իրերի հավաքման ու պահպանման, դրանց հիման վրա թանգա-րաններ, հատկապես հեղափոխության թանգա-րաններ բացելու ուղղությամբ:

Վ. Ի. Լենինը թանգարանները համարում էր պատմության ուսուցման և ինքնակրթության կարևոր օջախ: Պատահական չէ, որ նա ոչ մի-այն պրոպագանդում էր թանգարաններ այցե-լելը, այլև ինքն էր հաճախ լինում թանգարան-ներում՝ թե Ռուսաստանում, թե վտարանդիու-թյան մեջ եղած ժամանակ: «Լենինը,— պատ-մում էր Ն. Կ. Կրուպսկայան,— շատ էր հոգ-նում բուրժուական թանգարանների խայտաբղե-տությունից: Իսկ, ինչը իմանալով, որ Փարիզի բանվորական շրջաններից մեկում ֆրանսիա-կան հեղափոխականները ստեղծել են թանգա-րան՝ նվիրված 1848 թվականի հեղափոխությա-նը, նույն օրը շտապեց տեսնելու այն: Նա մեծ ուշադրությամբ էր դիտում բոլոր ցուցանմուշ-ները, բառացիորեն կլանում ամեն մի մանրուք: Թանգարանը նրա համար հեղափոխական պայ-քարի մասնիկ էր» («Крупская о Ленине», сборник статей, М. 1960 г., стр. 338):

Երիտասարդ տարիքում Վ. Ի. Լենինը երազում էր ստեղծել հեղափոխության թանգարան, ուր կկենտրոնացվեր այն ամենը, ինչը կապված էր հեղափոխության հերոսական էջերի հետ: Նա ակտիվորեն պայքարում էր, որպեսզի ամեն գնով պահպանվեն համաշխարհային և ռուսա-կան պրոլետարիատի հեղափոխական պայքարի հուշանմուշները, հեղափոխական մարտիկների ախրագործությունները արտացոլող փաստաթղ-թերը:

Խորհրդային կարգերի հաստատումից հետո Հայաստանում անհրաժեշտ էր ոչ միայն վերա-կանգնել ու զարգացնել կազմալուծված տնտե-սությունը, այլև լուծել մշակութային բազմա-թիվ պրոբլեմներ: Որպես կուլտուրական հեղա-փոխության բաղկացուցիչ մաս, կարևոր քայ-լեր էին կատարվում թանգարանաշինության բնագավառում, մշակութային արժեքների հա-վաքման ու պահպանման վերաբերյալ ընդուն-վում էին դեկրետներ ու որոշումներ:

Խորհրդային Հայաստանի կառավարության ա-ռաջին դեկրետներից մեկը լուսժողկոմատին ա-ռընթեր Հայաստանի հեղափոխական հնադա-րան (թանգարան) հիմնելու մասին դեկրետն էր՝ ընդունված 1921 թ. հունիսի 8-ին (ՀԽՍՀ դեկրետների և հրամանների ժողովածու, պր. 2, էջմիածին, 1921 թ., էջ 56—57): Նման թան-գարանի հիմնումը թելադրված էր հանրապե-տությունում խորհրդային կարգերի հաստատ-ման համար պայքարած մարտիկների հիշատա-կը հավերժացնելու, Նոյեմբերյան հեղափոխու-թյան հերոսական էջերի մասին պատմող նյու-թերը պահպանելու և պրոպագանդելու, Հայաս-տանի հեղափոխական շարժումների գիտական ուսումնասիրման անհրաժեշտությամբ: Դեկրե-տով Հայաստանի հեղափոխության թանգարանի վրա պարտականություն էր դրվում հավաքել և կենտրոնացնել՝ հանրապետության տարածքում և նրա սահմաններից դուրս գտնվող, Հայաստա-նում հեղափոխական շարժումների հետ կապ ունեցող բոլոր պատմական փաստաթղթերը (հեղափոխությանը նվիրված գրքեր, գրքույկ-ներ, ամսագրեր, կոչեր, թռուցիկներ, լրագրա-յին և այլ տպագրական կտրածոներ, անտիպ գրվածքներ, նամակներ, ժողովների ու համա-գումարների որոշումներ, արձանագրություններ և այլն): Հավաքվելու էին նաև ականավոր հե-ղափոխականների զենքը, հագուստը, անձնական իրերը, լուսանկարները և այլն: Բոլոր հիմնարկ-

ՍԻՄՈՆՅԱՆ ԱՐԱՔՍՅԱ ՇԱՀԵՆԻ— Հայաստանի պատմության պետական թանգարանի խոր-հրդային շրջանի պատմության բաժնի վարիչ:

ձեռնարկություններին, կազմակերպություններին և մասնավոր անձանց դեկրետը պարտավորեցնում էր իրենց մոտ եղած համապատասխան թանգարանային նյութը հանձնել նորաստեղծ հեղափոխության թանգարանին, որի հիմնադրման աշխատանքը կազմակերպելու էր հանձնաժողովը հետևյալ կազմով՝ Ա. Կարինյան, Մ. Թավաքալյան, Տ. Մուշեղյան:

Հավաքչական աշխատանքից բացի թանգարանը կատարելու էր մեկ այլ, ոչ պակաս պատասխանատու գործ՝ ուսումնասիրել և հրատարակել հեղափոխական շարժումների տարբեր հարցերին նվիրված աշխատություններ: Կատարվող ուսումնասիրությունները վերաբերվելու էին կուսակցության պատմության տարբեր հարցերի, առանձին հեղափոխականների կյանքին ու գործունեությանը (նույն տեղը, էջ 57):

Այն հանգամանքը, որ տնտեսական դժվարությունների և բազմաթիվ չլուծված խնդիրների պայմաններում Խորհրդային Հայաստանի կառավարության առաջին մտահոգություններից մեկը հեղափոխության թանգարանի հիմնումն էր, պատմական արժեքների նկատմամբ պետական հոգածության, հեղափոխության և նրա հաղթանակի համար պայքարած մարտիկների հանդեպ ուշադրության ու հարգանքի վկայությունն է:

Հանրապետության կառավարության որոշմամբ 1921 թ. օգոստոսի 20-ին հիմնադրվեց Հայաստանի պետական թանգարանը, որն ունենալու էր հնագիտության, պատմագրության, ազգագրության, գեղարվեստական և հեղափոխության բաժիններ: Յուրաքանչյուր բաժնի վրա դրվում էին որոշակի պարտականություններ, աշխատանքային առաջադրանքներ: Թանգարանի հեղափոխության բաժնին ներկայացվող պահանջները ճիշտ այնպիսին էին, ինչ առաջադրվում էին հեղափոխության հնադարանին: Ստացվեց այնպես, որ հեղափոխության հնադարանը սկսեց գործել որպես Հայաստանի պետական թանգարանի հեղափոխության բաժին և որպես այդպիսին գոյատևեց մինչև 1928 թ. մարտի 22-ը (ՀԽՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 113, ց. 3, գ. 113, թ. 32):

Հայաստանի պետական թանգարանի հեղափոխության բաժինն ուներ երեք ենթաբաժին՝ հեղափոխական շարժման պատմության, սոցիալիզմի տեսության և բանվորագյուղացիական պրոբլեմների (նույն տեղը, ֆ. 122, ց. 1, գ. 936): Չնայած իր առջև դրված բարդ ու պատասխանատու խնդիրներին, հեղափոխության բաժինը աշխատանքային պայմանների սղության (տեղավորված էր երկու սենյակներում) և աշխատակիցների սակավաթվության (ուներ 2—3 աշխատակից) պատճառով, իր գոյության սկզբնական շրջանում մշտական գործող ցուցադրություն կազմակերպելու հնարավորություն չուներ և բավարարվում էր սոսկ հավաքչական աշխատանքով, հավաքված նյութի մշակմամբ (Ս. Սուրենյան, ՀԽՍՀ հեղափոխության թանգարանը, տե՛ս «Գիտությունը և գիտահետազոտական աշխատանքը Խորհրդային Հայաստանում 1920—1930» ժողովածու, Երևան, 1931 թ., էջ 110—111):

Հիմնադրման առաջին իսկ օրերից հնադարանի կոլեկտիվը, բաժնի վարիչ Դավիթ Անանունի ղեկավարությամբ, եռանդուն գործունեություն ծավալեց հայ հեղափոխականների վերաբերյալ թանգարանային նյութ (փաստաթղթեր, լուսանկարներ, թռուցիկներ, անձնական իրեր և այլն) հավաքելու ուղղությամբ: Բաժնի աշխատակիցները ձգտում էին ձեռք բերել նաև տարբեր ժամանակներում Ռուսաստանի դատարաններում լսված հայ հեղափոխականների գործերը: Ջանադիր աշխատանքը տվեց իր արդյունքը: Մի քանի ամիս հետո հաջողվեց ստանալ Հակոբ Կարապետյանի, Մամիկոն Տեր-Մկրտչյանի, Զաքար Տեր-Ստեփանյանցի, Արամ Պետրոսյանցի, Վահան Օսիպովի և ուրիշների 14 դատական գործեր (ՀԽՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 122, ց. 1, գ. 926, վ. 3): Հեղափոխության բաժնի աշխատակիցների ուժերով ամբողջությամբ Երևան տեղափոխվեց Ախալքալաքի «Հայրենակցական միության» ողջ դիվանը: Վրաստանի պետական արխիվից ձեռք բերվեցին հայկական հարցի և Հայաստանում հեղափոխական շարժումների վերաբերյալ բազմաթիվ փաստաթղթերի պատճեններ: Առաջին ձեռքբերումներից էին 1920 թ. մայիսի 1-ին Ալեքսանդրապոլում տեղի ունեցած ցույցի ժամանակ բարձրացված կարմիր դրոշը, 1915 թ. Վանի ինքնապաշտպանության օրերին պատրաստված հրանոթի արկը:

1923 թ. ապրիլի 18-ին պետական թանգարանի հեղափոխության բաժինը դիմում է ՀԽՍՀ լուսժողկոմատին, խնդրելով օգնել Վրաստանի արխիվներից ստանալու հայ հեղափոխական շարժման տարբեր հարցերի վրա լույս սփռող հետևյալ դատական գործերը. ա) այն 40 հայերի գործը, որոնք զինված դիմադրություն են ցույց տվել իշխանություններին՝ եկեղեցական կալվածքների գրավման ժամանակ և 1904 թ. նոյեմբերի 14—18-ը դատվել օրենսդրական պալատում. բ) շուշեցի այն չորս հայերի գործը, որոնք նույն հարցով դատվել են 1904 թ. հունիսի 18-ին. գ) Բաքվի փետրվարյան ջարդերի դատական գործը. դ) հակակառավարական ագիտացիայի մեջ մեղադրվող վեց հայ զինվորների գործը. ե) ղարաքիլիսեցի յոթ հայերի գործը, որոնք դատվել էին 1909 թ. փետրվարի 16-ին. զ) Համբարձում Սարգսյանի դատական գործը. է) Արամ Ասլանյանի, Իսահակ Լազարյանի (հնչակյաններ) գործերը, որոնք դատվել են 1909 թ. մայիսի 23-ին. ը) սոցիալ-դեմոկրատներ Մ. Խաչատրյանի, Ա. Տեր-Սարգսյանի և մյուսների գործերը, որոնք դատվել են 1910 թ. մայիսի 10-ին, թ) Ա-դո-ի (Հովհաննես Տեր-Մարտիրոսյան) գործը, դատված 1910 թ. մարտի 17-ին, ինչպես նաև անհատ մարդկանց և խմբակային դատվածների մի շարք այլ գործեր (նույն տեղը, ֆ. 122, ց. 1, գ. 247, վ. 22 ա-բ):

1924 թ. Դ. Անանունը մի նոր նամակով դիմում է հանրապետության կառավարությանը՝ խնդրելով օգնել ձեռք բերելու 44 դատական գործեր ևս (նույն տեղը, ֆ. 122, ց. 1, գ. 248, վ. 41):

Հեղափոխության բաժնի ֆոնդը հարստանում էր ոչ միայն տեղական ձեռքբերումների, այլև արտասահմանից ուղարկվող թանգարանային արժեքների շնորհիվ: Այսպես, 1925 թ. լոնդոնաբնակ պրոֆեսոր Կարապետյանից բաժինը նվեր ստացավ հայկական հարցի վերաբերյալ եվրոպական գրեթե բոլոր լեզուներով յոթ արկղ լրագրական կտրածո (նույն տեղը):

Երկրի այլ թանգարանների օրինակով, Հայաստանի հեղափոխության թանգարանը ևս իր գործունեության ընթացքում սերտ կապերի մեջ էր հանրապետության կուսպատի հետ: Նրանց համատեղ ուժերով են հավաքվել Անդրկովկասի հեղափոխական շարժումների վերաբերյալ գրեթե բոլոր նյութերը, վավերագրերի մեծ մասը, բազմաթիվ թռուցիկներ, հեղափոխականների լուսանկարներ և այլ նյութեր: Միասին կազմակերպում էին միջոցառումներ, որոնք հետաքրքրություն էին արթնացնում թանգարանի հեղափոխության բաժնի նկատմամբ. զրույցներ, դասախոսություններ՝ նվիրված հեղափոխության մարտիկներին, տարբեր հոբելյանների հանդիսություններ և այլն:

Հայաստանի պետական թանգարանի, հատկապես նրա հեղափոխության բաժնի գործունեությունը մշտապես գտնվում էր հանրապետության ղեկավարության ուշադրության կենտրոնում: Թանգարանի աշխատանքը նպատակամղելու համար Հայաստանի կոմկուսի Կենտկոմն ու կառավարությունը կոնկրետ պլաններ, հանձնարարականներ էին տալիս կոլեկտիվին: Նման հանձնարարություններից մեկը Վ. Ի. Լենինի մահից հետո թանգարանի հեղափոխության բաժնում լենինյան անկյուն կազմակերպելն էր:

1924 թ. ապրիլի սկզբին ՀԽՍՀ լուսժողկոմի տեղակալ Հ. Յաղուբյանը Կենտգործկոմի հանձնարարությամբ հատուկ գրությամբ դիմում է Հայաստանի պետական թանգարանի հեղափոխության բաժնի վարիչին և առաջարկում կազմել ու լուսժողկոմատի հաստատմանը ներկայացնել թանգարանում լենինյան անկյուն ստեղծելու նախագիծը: Միաժամանակ նշվում էին այն թեմաները, որոնց պետք է նվիրված լիներ ցուցադրությունը:

Քննարկելով հանրապետության լուսժողկոմատի առաջարկությունը, թանգարանի վարչությունը պատասխան նամակ է ուղարկում, որտեղ ասված է, որ լենինյան անկյուն բացելու համար խիստ անհրաժեշտ է ունենալ Վ. Ի. Լենինի դիմանկարն ու կիսանդրին, երկուսն էլ պատրաստված ճանաչված արվեստագետի կողմից, որպեսզի այդ գործերը ներդաշնակեն թանգարանի մյուս արժեքների հետ: Այս նամակում ավելացված է, որ «գալով Լենին-գիտնականի և հեղափոխականի գործունեությունը ներկայացնելու հարցին, այստեղ մեզ անհրաժեշտ է ունենալ ա) հանգուցյալ առաջնորդի կենցաղին և հասարակական գործունեությանը վերաբերող գեղարվեստական նկարներ (բնակարանը վտարանդիության տարիներին և Ռուսաստանում, առանձնասենյակը, զանազան համագումարների, ընդունելությունների, ժողովների մասնակցության պահեր, հիվանդության պահը, դամբարանը և այլն), բ) այն ողջ գրականությունը, որը սնել է նրա մտավորը և որը ինքն է աշխատասիրել: Գրականության պահանջը մեծ ու ընդարձակ է: Այդ գրականությունը թանգարանը պետք է հավաքի, որովհետև Հայաստանի հեղափոխական շարժումները չի կարելի զատել համառուսական շարժումներից» (նույն տեղը, ֆ. 113, ց. 1, գ. 113, թթ. 8—11):

Հեղափոխության առաջնորդի կյանքի ու գործունեության վերաբերյալ ցուցադրություն ստեղծելու համար մեկ տարվա ընթացքում կատարված աշխատանքի մասին, դժբախտաբար, ոչինչ հայտնի չէ: Հայտնի է միայն որ 1926 թ. ապրիլին, Վ. Ի. Լենինի տարելիցի օրը, թանգարանում լենինյան անկյունը պատրաստ էր: Թեև այն ընդարձակ չէր, ցուցանմուշները առատ չէին, այնուամենայնիվ, մեծ հետաքրքրություն առաջացրեց հանրապետության աշխատավորության շրջանում. հազարավոր մարդիկ սիրով ու ակնածանքով էին այցելում թանգարան:

1928 թ. մարտի 22-ին լուսժողկոմատի կոլեգիայի որոշմամբ հեղափոխության բաժինը առանձնացավ պետական թանգարանից և դարձավ ինքնուրույն հիմնարկ՝ Հայաստանի հեղափոխության թանգարան:

1929 թ. հունվարի 31-ին ՀԽՍՀ Կենտգործկոմի հաստատած ՀԽՍՀ հեղափոխության թանգարանի նոր կանոնադրության մեջ ասված էր. «ՀԽՍՀ հեղափոխության թանգարանը հանդիսանում է քաղլուսավորչական բնույթ ունեցող մի գիտական հիմնարկություն, որի հիմնական նպատակն է ակնառու կերպով ցուցահանել հեղափոխական շարժման պատմությունն ընդհանրապես նախկին Ռուսաստանում և մասնավորապես Հայաստանում ու Անդրկովկասում» (Ս. Սուրենյան, նշված աշխատությունը, էջ 109): Կանոնադրության համաձայն, Հայաստանի հեղափոխության թանգարանը աշխատանք էր կատարելու հետևյալ հինգ ուղղություններով. 1. հեղափոխության պատմության վերաբերյալ զանազան նյութերի, հիշատակարանների հավաքում և լրացում. 2. ներքին կարգավորման աշխատանքներ՝ նյութերի դասակարգում, գույքահաշվառում, կատալոգների կազմում և այլն. 3. մասսայական քաղլուսավորչական աշխատանք՝

մշտական ցուցադրության, ժամանակավոր ցուցահանդեսների, էքսկուրսիաների և դասախոսությունների միջոցով. 4. Ձեռք բերված նյութի մշակում և գիտահետազոտական աշխատանքներ. 5. գրքույկների, պլակատների, բացիկների և այլնի հրատարակում (Ս. Սուրենյան, նշված աշխատությունը, էջ 110):

Հեղափոխության թանգարանի փոքրաթիվ կոլեկտիվը, չնայած նյութական միջոցների սղությանը, հաջողությամբ էր իրականացնում հավաքչական աշխատանքը: 1930 թվականին թանգարանի ֆոնդերում պահվում էին բոլոր կուսակցություններին ու հոսանքներին պատկանող մոտ 1400 անուն հայերեն ու ռուսերեն հին թերթեր ու ամսագրեր՝ լրիվ կամ կիսատ կոմպլեկտներով, պատմահեղափոխական թեմատիկայով, մոտ 4000 անուն գրականություն՝ հայոց ու ռուսաց լեզուներով, 600 թղթապանակ արխիվային վավերագրեր, տարբեր կուսակցությունների, կազմակերպությունների, պետական մարմինների կողմից հայերեն և ռուսերեն հրատարակված 1000-ից ավելի տպագիր թռուցիկներ, կոչեր, թերթիկներ, խմբակային ու անհատական մոտ 2000 լուսանկար: Ձեռք են բերվել նաև հեղափոխական անցյալի հետ կապված զգալի թվով զանազան իրեր՝ կնիքներ, դրոշներ, զենք և այլն: Թանգարանի աշխատակիցները կարգի էին բերում հավաքված մամուլը, այն զետեղում ըստ անունների, համարների, վերադասավորում էին գրադարանը, արխիվը, ֆոնդերը բաժանում և դասավորում:

Հեղափոխության թանգարանի գործունեությունը, իհարկե, չի սահմանափակվել միայն նյութի հավաքումով ու կարգավորմամբ: Նպատակներից ամենակարևորը, թերևս, մասսայական քաղլուսաշխատանքն էր՝ մշտական ցուցադրությունների ու շրջիկ ցուցահանդեսների միջոցով: Այսպես, միայն 1927—1930 թթ. կազմակերպվեցին հոբելյանական բազմաթիվ ցուցահանդեսներ՝ նվիրված մամուլի օրվան, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 10-րդ տարեդարձին, Բաքվի կոմունարների գնդակահարման 10-ամյակին, Հայաստանում խորհրդային կարգերի հաստատման 8-ամյակին, Վ. Ի. Լենինի մահվան 6-րդ տարեդարձին, Մայիսյան ապստամբության 10-ամյակին և այլն (ՀԽՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 122, ց. 1, գ. 926, թ. 71): Հեղափոխության թանգարանի ջանքերով Երևանից բացի, ցուցադրություններ բացվեցին նաև Լենինականում և Ալավերդիում: Այդ տարիներին թանգարանում համեմատաբար թույլ էր գիտահետազոտական աշխատանքը:

1930 թվականին հեղափոխության թանգարանը մշակել էր հնգամյա աշխատանքային պլան, (1930—1935), ըստ որի պետք է շարունակվեր հեղափոխական անցյալի վերաբերյալ բոլոր արխիվների և այլ նյութերի հավաքման ու եղածների լրացման գործը: Դրանց հաշվառման, պահպանման և նպատակահարմար օգտագործման համար պետք է շարունակվեր ու ավարտվեր բոլոր տեսակի նյութերի քարտային կատալոգի կազմումը և գույքահաշվառումը: Քաղլուսավորչական մասսայական աշխատանք կատարելու համար կազմակերպվելու էին մշտական ցուցադրության բաժին, ժամանակավոր շրջիկ ցուցահանդեսներ, ծավալվելու էին գիտահետազոտական աշխատանքները, հրատարակվելու ձեռք բերված նյութերը, ուսումնասիրությունների արդյունքները և այլն: Դժբախտաբար, Հայաստանի հեղափոխության թանգարանի այս լայնամասշտաբ պլաններին վիճակված չէր իրականանալ: 1930-ական թվականների սկզբից սկսեց գլուխ բարձրացնել, իսկ կեսերից՝ մոլեգնել Ստալինի անհատի պաշտամունքը, և այն ամենը, ինչը այս կամ այն կերպ կարող էր ստվեր նետել նրա գործունեության վրա, դրվեց փակի տակ: 1932 թվականին, առանց որևէ բացատրության, Հայաստանի հեղափոխության թանգարանը փակվեց, հավաքված թանգարանային նյութը իջեցվեց նկուղները: Այն վերաբացվեց միայն 28 տարի անց՝ 1960 թվականին:

Թեև Հայաստանի հեղափոխության թանգարանի գործունեության առաջին փուլն ընդգրկեց տասնամյա մի ժամանակաշրջան, սակայն այն կարևոր դեր խաղաց ինչպես հանրապետության, այնպես էլ Անդրկովկասի ու Ռուսաստանի հեղափոխական շարժումների, հայ հեղափոխականների գործունեության լուսաբանման ասպարեզում: Եվ դա տվեց իր շոշափելի արդյունքը: Հեղափոխության թանգարանի կազմակերպած ցուցադրությունների և այլ ձեռնարկումների շնորհիվ զգալիորեն աճեց աշխատավորների քաղաքական, գաղափարական մակարդակը:

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 11, 1989 թ.: Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն:

Հանձնվել է շարելու 18. 10. 89 թ.: Ստորագրվել է տպագրելու 28. 11. 89 թ.: ՎՖ 10963: Ֆորմատ՝ 70×108 1/16: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 12082: Պատվեր՝ № 1240: Գինը՝ 25 կոպ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.